Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՈԿՏԵՄԲԵՐ

10

1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11






# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

*1989 թվականի սեպտեմբերի 18—20-ը տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։ Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը.*

*1. ԽՄԿԿ հերթական XXVIII համագումարի հրավիրման մասին։*

*2. Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին։*

*Առաջին հարցի առթիվ պլենումը լսեց ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի ելույթը և ընդունեց համապատասխան որոշում։*

*Երկրորդ հարցի առթիվ՝ «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին», պլենումը լսեց ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը։*

*Պլենումի մասնակիցներին բաժանված են նյութեր, որոնք ամփոփում են ԽՄԿԿ-ի պլատֆորմի նախագծի քննարկման ընթացքում կուսակցական կոմիտեներից, կոմունիստներից, պետական և հասարակական կազմակերպություններից, գիտնականներից ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմների առթիվ ստացված առաջարկություններն ու դիտողությունները, ինչպես նաև այդ հարցերի վերաբերյալ աշխատավորության նամակների տեսություն և մի շարք տեղեկատու նյութեր։*

*Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ԽՄԿԿ Բաշկիրիայի մարզկոմի առաջին քարտուղար Ռ. Խ. Խաբիբուլինը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ե. Ե. Սոկոլովը, Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Մ. Մասալիևը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Յու. Ն. Ելչենկոն, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ա. Նազարբաևը, ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի քարտուղար Յու. Ս. Կարաբասովը, ԽՄԿԿ Յակուտիայի մարզկոմի առաջին քարտուղար Յու. Ն. Պրոկոպևը, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Ազգությունների խորհրդի նախագահ Ռ. Ն. Նիշանովը, «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր Վ. Գ. Աֆանասևը, ՌԽՖՍՀ Գերագույն խորհրդի Նախագահության նախագահ Վ. Ի. Վորոտնիկովը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Գ. Գումբարիձեն, ԽՄԿԿ Իրկուտսկի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Պոտապովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.—Մ. Կ. Բրազաուսկասը, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, ԽՍՀՄ պետպլանի նախագահ Յու. Դ. Մասլյուկովը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը, Ուկրաինայի կոմկուսի Ղրիմի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ն. Գիրենկոն, գրող, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Ազգությունների խորհրդի նախագահի տեղակալ Բ. Ի. Օլեյնիկը, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Կ. Գրո-*

սուն, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Վյալյասը, Թուրքմենստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Ա. Նիյազովը, ԽՄԿԿ Չեչենա-Ինգուշական մարզկոմի առաջին քարտուղար Դ. Գ. Զավգաևը։

Պլենումում կազմվեց «Կուսակցության ազգային քաղաքականությունը արդի պայմաններում» ԽՄԿԿ-ի պլատֆորմի նախագծի վերջնամշակման, և քննարկված հարցի առթիվ պլենումի որոշման նախապատրաստման խմբագրական հանձնաժողով։

Սեպտեմբերի 20-ին Կենտկոմի պլենումում շարունակվեց ԽՄԿԿ պլատֆորմի նախագծի և արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցման քննարկումը։

Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ի. Ա. Քարիմովը, ԽՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ի. Ուսմանովը, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Յա. Վագրիսը, Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի հատուկ կառավարման կոմիտեի նախագահ Ա. Ի. Վոլսկին, ԽՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ Մ. Ֆ. Նենաշևը, Ղազախական ԽՍՀ Ամանգելդու անվան խորհտնտեսության մեխանիզատոր Ն. Վ. Գելերտը, ԽՄԿԿ Սմոլենսկի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ա. Վլասենկոն, ԽՄԿԿ Դաղստանի մարզկոմի առաջին քարտուղար Մ. Յու. Յուսուպովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.—Ռ. Խ. Վեզիրովը, Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ք. Մ. Մահկամովը, ԽՍՀՄ պաշտպանության մինիստր Դ. Տ. Յազովը, ԽՄԿԿ Կաբարդինաբալկարիայի մարզկոմի առաջին քարտուղար Ե. Ա. Ելիսեևը, ԽՄԿԿ Խաբարովսկի երկրամասի Հրեական Ինքնավար Մարզի մարզկոմի առաջին քարտուղար Բ. Լ. Կորսունսկին, ԽՍՀՄ ներքին գործերի մինիստր Վ. Վ. Բակատինը, ԽՄԿԿ Տուլայի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ջ. Շիրշինը, ՀԱՄԿԽ-ի քարտուղար Վ. Մ. Միշինը։

Պլենումի կազմած խմբագրական հանձնաժողովի անունից հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար Վ. Ա. Մեդվեդևը։

Պլենումը հավանություն տվեց «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականությունը» ԽՄԿԿ պլատֆորմի՝ ստացված առաջարկությունների, դիտողությունների և կայացած քննարկման հիման վրա վերջնամշակված նախագծին (հրապարակվելու է) և այդ հարցի առթիվ ընդունվեց որոշում։

Պլենումը լսեց ԽՍՀՄ գլխավոր դատախազ Ա. Յա. Սուխարևի հաղորդումը ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովի այն դիմումի քննարկման արդյունքների մասին, որով նա ԽՄԿԿ Կենտկոմին ու ԽՍՀՄ դատախազությանն էր դիմել քննիչներ Թ. Խ. Գդլյանի ու Ն. Վ. Իվանովի կողմից իրեն կաշառակերության մեջ մեղադրելու առթիվ։ ԽՍՀՄ դատախազության կատարած քննությունը ցույց է տվել այդ պնդումների լիակատար հիմնազրկությունը։

Պլենումում ելույթ ունեցան Ե. Կ. Լիգաչովը և ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու Վ. Ի. Սմիռնովը։ Այս հարցի առթիվ պլենումն ընդունեց որոշում։

Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարց։

Պլենումը Վ. Պ. Նիկոնովին և Վ. Մ. Չեբրիկովին ազատեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների ու Կենտկոմի քարտուղարների պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու մասին նրանց դիմումների կապակցությամբ։

Պլենումը Վ. Վ. Շչերբիցկուն ազատեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու մասին նրա դիմումի կապակցությամբ։

Պլենումը Յու. Ֆ. Սոլովյովին և Ն. Վ. Տալիզինին ազատեց ԽՄԿԿ Կենտ-



կոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուների պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ։

Ընկ. Մ. Ս. Գորբաչովը ընկ. ընկ. Վ. Պ. Նիկոնովին, Վ. Մ. Չեբրիկովին, Վ. Վ. Շչերբիցկուն, Յու. Ֆ. Սոլովյովին, Ն. Վ. Տալիզինին ջերմորեն շնորհակալություն հայտնեց կուսակցական մարմիններում նրանց բազմամյա ակտիվ և արգասաբեր գործունեության համար։

Պլենումը ԽՍՀՄ պետանվտանգության կոմիտեի նախագահ Վ. Ա. Կրյուչկովին ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։

Պլենումը Յու. Դ. Մասլյուկովին ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ։

Պլենումը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Միության խորհրդի նախագահ Ե. Մ. Պրիմակովին և ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ Բ. Կ. Պուգոյին ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուներ։

Պլենումը ԽՄԿԿ Օրյոլի մարզկոմի առաջին քարտուղար Ե. Ս. Ստրոևին, ԽՄԿԿ Լիպեցկի մարզկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Մանայենկովին և ԽՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ի. Ուսմանովին ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ։

Պլենումը ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուից անդամ փոխադրեց Ուկրաինայի կոմկուսի Ղրիմի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ն. Գիրենկոյին և նրան ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար։

Պլենումի վերջում ելույթ ունեցավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը։

Դրանով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը։

# ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## *ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում 1989 թ. սեպտեմբերի 19-ին*

Ընկերներ:

Վերակառուցման տրամաբանությունը, բուն կյանքը մեզ հանգեցրին այն հետևությանը, որ ազգային հարաբերությունների ասպարեզում ևս հասունացել է համընդգրկուն խոր վերափոխումների պահանջմունքը:

Անկեղծ ասենք, 1985 թվականի ապրիլից հետո մենք միանգամից չէ, որ հանգեցինք այդպիսի վերափոխումների անհրաժեշտության գիտակցմանը: Այստեղ անկեղծաբար իր ազդեցությունն ունեցավ այն տարածված համոզմունքը, թե հասարակության զարգացման այս ուղղությունում մեր գործերը քիչ թե շատ բարեհաջող են: Իհարկե, մենք գիտեինք ոչ հասարակ ազգային պրոբլեմների գոյության մասին: Դրանց մասին խոսվեց ԽՄԿԿ XXVII համագումարում: Բայց, այնուամենայնիվ, այստեղ հասունացած փոփոխությունների ողջ մասշտաբը ի հայտ եկավ ավելի ուշ, ուստի և XIX կուսակցական կոնֆերանսում այդ հարցերը դարձան ուշադրության գլխավոր առարկա:

Միջազգային հարաբերությունների այսօրվա վիճակը չի կարելի գնահատել այլ կերպ, քան որպես միանգամայն բարդ: Մեկը մյուսի հետևից երևան եկան այդ ասպարեզի չլուծված հարցերը, զգալ տվեցին բազում տասնամյակների ընթացքում թույլ տրված սխալներն ու ձևախեղումները, բռնկեցին տարիներով սքողված ազգամիջյան կոնֆլիկտները: Պիրկ հանգույց էին կազմել սոցիալ-տնտեսական ու պետական-իրավական, էկոլոգիական ու ժողովրդագրական, լեզվի ու մշակույթի զարգացման, ազգային ավանդույթների պահպանման պրոբլեմները:

Դրանցից յուրաքանչյուրը հսկայական ուշադրության կարիք ունի, վերաբերում է կենդանի մարդկանց, առնչված է ամբողջ ազգերի ճակատագրի հետ:

Մեր առջև խնդիր է ծառացած համակողմանիորեն, սկզբունքային դիրքերից քննարկել երկրում ազգային հարաբերությունների վիճակը և մշակել ազգային հարցի վերաբերյալ կուսակցության ժամանակակից ստրատեգիա, հենվելով լենինյան սկզբունքների, գոյություն ունեցող իրողությունների վրա, համաշխարհային հասարակական զարգացման գերիշխող միտումների վրա: Կուսակցության ու հասարակության մեջ այս հարցի շուրջը բանավեճերը վաղուց են տեղի ունենում: Վերլուծական մեծ աշխատանք է կատարված: Այդ ամենի արգասիքը եղավ ԽՄԿԿ-ի պլատֆորմի նախագիծը, որը հրապարակվեց համաժողովրդական քննարկման համար և այսօր ներկայացված է Կենտկոմի պլենումի քննարկմանը: Պլատֆորմի նախագծի տեքստը և ստացված դիտողությունները ձեզ լավ հայտնի են: Ուստի ես կանգ կառնեմ որոշ հանգուցային հարցերի վրա:

### I.

Ազգային հարցը և ամենից առաջ **ինտերնացիոնալայինի ու ազգայինի հարաբերակցության** հարցը մեր կուսակցությունը հարկ է ունեցել լուծելու թե հեղափոխության նախապատրաստման փուլում և թե հատկապես սոցիալիստական հասարակության կառուցման պայմաններում:



Մարքսիստական ուսմունքին լիովին համապատասխան, կուսակցությունը հենց սկզբից ինտերնացիոնալիստական դիրք է գրավել:

Լենինի ըմբռնմամբ ինտերնացիոնալիզմը ներառում էր ազգային շահերի պարտադիր հաշվառում, յուրաքանչյուր ազգի ինքնատիպության հարգում, բոլոր ժողովուրդների իրավահավասարության ճանաչում, ազգային ճնշման ամեն տեսակ ձևերի նկատմամբ անհաշտ վերաբերմունք: Այս նպատակները կարող են ու պետք է իրագործվեն բոլոր ազգերի աշխատավորների համատեղ ջանքերով: Այսպիսին է ինտերնացիոնալայինի և ազգայինի լենինյան դիալեկտիկան:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո կուսակցության առջև գործնականորեն ծառացավ ազգային քաղաքականության իրացման կոնկրետ ուղիներ ու ձևեր մշակելու խնդիրը: Ցարիզմից խորհրդային իշխանությանը ծանր ժառանգություն էր մնացել. երկիրը բզկտվում էր ազգամիջյան հակասություններից, երկրում ապրող ժողովուրդները ոչ միայն իրավազուրկ վիճակում էին, այլև տնտեսական ու հոգևոր զարգացման տարբեր աստիճանների վրա: Այդ պայմաններում պետական կառուցվածքի պրոբլեմը կենսականորեն կարևոր նշանակություն էր ստանում: Այն ժամանակ շատերը հանդես էին գալիս ինքնավարացման կամ նույնիսկ ունիտար պետության օգտին: Առավել ևս մեծ է Լենինի ծառայությունը, որը կարողացավ ճիշտ որսալ մասսաների տրամադրությունները և հասարակության զարգացման կենսական պահանջմունքները, դրանից բխեցնել կուսակցության օպտիմալ ստրատեգիան ազգային հարցում:

Այսպես ծագեց նոր պատմական տիպի պետական ֆեդերացիայի գաղափարը, որը դարձավ ամբողջ երկրի և երկրում բնակվող յուրաքանչյուր ժողովրդի դինամիկ զարգացման կարևորագույն աղբյուրներից մեկը: Այն ազդակը, որ տրվեց Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումով, որոշեց մեր բազմազգ հասարակության զարգացման մայրուղին, թեև հետագայում Ստալինն ու նրա շրջապատը, ուղղակի ոտնձգություն չանելով պետականության ֆեդերատիվ ձևի նկատմամբ, ջանացին այնուամենայնիվ գործնականորեն իրացնել ինքնավարացման իրենց գաղափարը:

Վերջին ժամանակներս մեզ մոտ շատ և սուր կերպով են քննադատվում ազգային հարաբերությունների ոլորտում տեղ գտած ձևախեղումները, գերցենտրալիզմի, բյուրոկրատական կառավարման, մի շարք ժողովուրդների նկատմամբ թույլ տրված անարդարությունների կործանարար հետևանքները: Նման քննադատությունը արդարացված է, ավելին՝ այն անհրաժեշտ է: Խորհրդային պետության պատմության մեջ չպիտի մնա ոչ մի սպիտակ բիծ: Հասարակությունը պետք է լիակատար ու սպառիչ ինֆորմացիա ունենա պատմության բոլոր դրվագների մասին, որքան էլ դառը դրանք լինեն: Բայց, շարունակելով և նույնիսկ խորացնելով լենինյան ազգային քաղաքականության աղավաղումների վերլուծությունը, քննադատությունը, մենք չպիտի թույլ տանք, որ մի ճշմարտության կամ կիսաճշմարտության տեղը գրավի մեկ ուրիշը:

Մենք պետք է խիստ օբյեկտիվ դիրքերից մոտենանք Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ մարդկության պատմության մեջ այդ եզակի երևույթի ստեղծման ու զարգացման պատմությանը:

Անպտուղ և անընդունելի են անցյալը իդեալականացնելու, այն բացառապես վարդագույն պատկերելու փորձերը: Դա, ինչպես մենք ձեզ հետ արդեն տեսանք, չի ծառայում աշխատավորների շահերին, սոցիալիզմի գործին: Բայց ճիշտ այդպես էլ սխալ կլիներ բռնել անցյալը ժխտելու ուղին: Եվ ոչ միայն այն պատճառով, որ անցյալում կուտակված է նոր հասարակության կառուցման, ժողովուրդների նոր փոխհարաբերությունների ձևավորման համար շատ սերունդների մղած պայքարի փորձը, այլև այն պատճառով, որ այդ դեպքում մենք իրավունք ունենք հավաստելու հսկայական պատմական նվաճումները:

Չնայած թույլ տրված ձևախեղումներին ու սխալներին, խորհրդային պետության զարգացման մեջ պետք է տեսնել գլխավորը: Մենք իրավունք չունենք մոռանալ, որ խոսքը վերաբերում է բոլոր նրանց կյանքի ու ճակատագրի, մտքերի ու գործերի գնահատմանը, ովքեր կառուցել են այս պետությունը, իրենց ուսերին կրել երկրի տնտեսական հետամնացության հաղթահարման ծանր բեռը, միասնական շարքում պաշտպանել հայրենիքը Հայրենական մեծ պատերազմում, այն վերականգնել փլատակներից հետպատերազմյան տարիներին:

Մենք բոլորս էլ մանկուց մեծացել ենք բառացիորեն ինտերնացիոնալիզմով տոգորված հասարակական մթնոլորտում: Ժողովուրդների բարեկամությունը մեզ

համար եղել է ոչ թե ինչ-որ վերացական լոզունգ, այլ ռեալ առօրյա: Մի՞թե մենք կարող ենք մոռանալ դա, հրաժարվել մեր հեղափոխության ինտերնացիոնալիստական ժառանգությունից:

Չի կարելի թույլ տալ, որ այսօր հեղեղի պես թափված դժվարություններն ու պրոբլեմները մոռանալ տան այն հիմնարար արժեքները, որոնք ձևավորվել են խորհրդային իշխանության տարիներին և որոնց վրա հենվում է մեր բազմազգ երկիրը: Կասեմ այսպես. ազգային հարաբերությունների բնագավառում ռեալ նվաճումները աղավաղելու և նսեմացնելու ամեն տեսակ փորձերը սրբապղծություն են խորհրդային մարդկանց մի քանի սերունդների հիշատակի հանդեպ, դրանք քննադատության չեն դիմանում մեր կյանքի փաստերի հետ համադրելու դեպքում:

Եթե այսօր ոմանք պնդում են, թե ազգային զարգացման և ազգամիջյան հարաբերությունների հարցերում խորհրդային իշխանությունը իբր քիչ թե շատ էական փոփոխություններ չի մտցրել այն բանի համեմատությամբ, ինչ կար նախահեղափոխական Ռուսաստանում, ապա դա ոչ այլ ինչ է, եթե ոչ իրականության անբարեխիղճ աղավաղում, որը օգտագործվում է նացիոնալիստական կրքերի բորբոքման և հնարավոր ամեն տեսակ ծայրահեղական պահանջների հիմնավորման համար:

Ոմանք նացիոնալիզմի մոլուցքով բռնված այնտեղ են հասնում, որ ինտերնացիոնալիզմը, ժողովուրդների բարեկամությունը հայտարարում են ոչ մի բան չնշանակող պրոպագանդիստական լոզունգներ, ռեալ իրավիճակը չարտացոլող առասպելներ: Բայց այստեղ նույնիսկ վեճերի համար առարկա չկա: Մեր հասարակության կյանքում մշտապես դրսևորվում են եղբայրական օգնությունը, համագործակցությունը, համամասնակցությունը միմյանց գործերին ու հոգսերին: Թեև, ինչպես արդեն ասացի, այսօր ազգամիջյան հարաբերություններում մենք բախվում ենք լուրջ կոնֆլիկտների և կուտակված պրոբլեմների:

Այն հարցը, թե ԽՄԿԿ-ի ազգային քաղաքականությունը, խորհրդային ֆեդերացիայի զարգացումը ինչ են տվել մեր ժողովուրդներին, սկզբունքային նշանակություն ունի: Եկեք գործին նայենք երեք հիմնական չափումներով՝ քաղաքական, տընտեսական և հոգևոր:

**Քաղաքական իմաստով** Հոկտեմբերի և նրան հաջորդած սոցիալիստական վերափոխումների ամենակարևոր արդյունքներից մեկը այն եղավ, որ Ռուսաստանի ժողովուրդները ձեռք բերեցին ազգային պետականության զանազան ձևեր:

Արժե, ընկերներ, վերհիշել, որ ցարական Ռուսաստանում չկային Ուկրաինա, Բելոռուսիա, Վրաստան, այլ կային Ռուսաստանի կայսրության նահանգներ: Դրանց ժողովուրդները չէին դիտվում որպես ամբողջական ազգեր, հանձինս նրանց տեսնում էին միայն «նորին կայսերական մեծության» հպատակների: Նույնը վերաբերում է Անդրկովկասի մյուս ժողովուրդներին, Մերձբալթիկայի, Մոլդավիայի ժողովուրդներին: Միջին Ասիայում դրությունը էլ ավելի վատ էր. վարչական կառուցվածքի հիմքում դրված էին ֆեոդալաաստվածպետական բռնատիրությունների մնացուկները:

Հեղափոխությունից հետո սերտորեն միահյուսված էին ընթացող ազգերի համախմբման, նրանց սոցիալիստական պետականության ձևավորման ու միաժամանակ փոխգործակցության զարգացման, ֆեդերացիայի մեջ միավորման բարդ պրոցեսները: Այս տեսակետից վճռական ուղենիշեր դարձան 1922 թվականը, երբ կնքվեց ԽՍՀՄ-ի կազմավորման մասին պայմանագիրը, 1924 թվականը՝ առաջին միութենական սահմանադրության ընդունման տարին:

1940 թվականին ԽՍՀՄ-ի կազմում կազմավորվեց Մոլդավական ԽՍՀ-ն: Այդ նույն թվականին Միության մեջ մտան Լիտվան, Լատվիան, Էստոնիան: Դա տեղի էր ունենում պատմական բարդ ժամանակաշրջանում, երբ արդեն բորբոքվում էր երկրորդ համաշխարհային պատերազմի հրդեհը, երբ ֆաշիզմը զավթում էր երկիր երկրի հետևից: Ստրկացման ռեալ սպառնալիք էր կախվել նաև Մերձբալթիկայի ժողովուրդների վրա:

Այն պատմական ժամանակահատվածում տեղի ունեցած իրադարձությունների շուրջը հիմա մեծ բանավեճեր են գնում: Այստեղ շատ բան դեռ պետք է վերլուծվի և գնահատական ստանա: Բայց հիմքեր կան կասկածի տակ դնելու ԽՍՀՄ-ի կազմի մեջ Մերձբալթիկայի հանրապետությունների մտնելու մասին այն ժամանակ ընդունված որոշումը, նրանց ժողովուրդների կատարած ընտրությունը:

Պարզ է նաև այն, որ խորհրդային ղեկավարությունը, զանազան միջոցներ ձեռնարկելով ֆաշիստական սպառնալիքի դեմ-հանդիման երկրի անվտանգությունն



ամրապնդելու համար, թույլ տվեց արտաքին քաղաքականության լենինյան սկըզբունքների շատ կոպիտ խախտումներ, քաղաքականություն, որը մերժում է ազդեցության ոլորտների բաժանումը: Մենք դա վճռաբար դատապարտում ենք:

Ընդհանրապես, ընկերներ. մենք պատմական ճշմարտության ուժղ վերականգնման կողմնակից ենք: Չի կարելի նորից գրել պատմությունը ի հաճույս սուբյեկտիվ պատկերացումների և քաղաքական հաշիվների, ենթարկվելով այսօրվա կըրքերին ու ամբիցիաներին: Իրադարձությունների ընթացքը անհնար է հետ շրջել: Առաջ ընթանալ կարելի է միայն հենվելով պատմական ճշմարտության և արդի աշխարհի իրողության վրա:

Պատմական զարգացման շնորհիվ, դրա ամբողջ հակասականությամբ հանդերձ, ստեղծվեց միասնական միութենական սոցիալիստական պետություն, որի տարածքում բնակվում են հարյուրից ավելի ժողովուրդներ: Պետությունն ունի բարդ կառուցվածք, ներկայացված է միութենական և ինքնավար հանրապետություններով, ինքնավար մարզերով և օկրուգներով: Համապատասխանաբար ձևավորվեցին ներկայացուցչական իշխանության և կառավարման մարմինները, մյուս քաղաքական և հասարակական հաստատությունները, որոնց միջոցով ժողովուրդների առջև ուղիներ բացվեցին պատմական ստեղծագործության պրոցեսի մեջ ներգրավվելու համար:

Բայց այդ համակարգի գործառությանը և դրանով իսկ մեր երկրում բնակվող ժողովուրդների բազմապիսի շահերի իրականացմանը հսկայական վնաս հասցրին ունիտարիզմը, ղեկավարման վարչահրամայական մեթոդները, որոնք սահմանափակում էին հանրապետությունների և մյուս ազգային կազմավորումների իրավունքները, հանգեցնում ֆեդերացիայի ռեալ բովանդակության ամլացման, կասեցնում էին մեր ամբողջ հասարակության առաջընթացը:

Այստեղ չի կարելի չխոսել նաև անցյալում, մանավանդ պատերազմի տարիներին և առաջին հետպատերազմյան ժամանակներում որոշ ժողովուրդների նկատմամբ թույլ տրված անարդարության և անօրինականության ակտերի մասին: Թեև այս առթիվ արդեն կան համապատասխան քաղաքական որոշումներ ու տրված են սկզբունքային գնահատումներ, բայց այսօր, երբ մենք քննարկում ենք ազգային քաղաքականության հարցերը, հարկավոր է մեկ անգամ ևս հայտարարել. վճռական դատապարտման են արժանի Հայրենական մեծ պատերազմի տարիներին թույլ տրված կամայականության և ժողովուրդների աքսորաբնակեցման փաստերը:

Մենք պետք է ամեն բան անենք խորհրդային գերմանացիների, Ղրիմի թաթարների, մեսխեթցի թուրքերի, կալմիկների, բալկարների, կարաչայների, չեչենների, ինգուշների, հույների, կորեացիների, քրդերի ոտնահարված իրավունքները վերականգնելու համար: Սա հեշտ հարց չէ, որոշ իմաստով՝ հիվանդագին: Բայց որքան էլ դժվարին լինի, կա միայն մեկ ուղի՝ հաստատակամորեն գտնել բոլորի համար ընդունելի լուծումներ, որոնք հաշվի առնեն ներկայումս ստեղծված իրողությունները:

**Հիմա գործի տնտեսական կողմի մասին:**

Նախկին ազգային ծայրամասերի արագացված զարգացման նպատակամետ քաղաքականության շնորհիվ բոլոր միութենական հանրապետություններում խորհըրդային իշխանության տարիներին ստեղծվեցին սեփական բազմաճյուղ ինդուստրիա, մերձեցման սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակները: Եթե 1926 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրության գծով հին արդյունաբերական շրջանների և ազգային ծայրամասերի միջև առավելագույն խզումը հասնում էր 38 անգամի, ապա 1941 թվականին այն կրճատվեց՝ հասնելով 4,1 անգամի, իսկ ներկայումս կազմում է մոտավորապես 2,3 անգամ: Եթե դեռ 50-ական թվականների վերջին բանվորները ըստ թվակազմի գերակշռում էին միայն ՌԽՖՍՀ-ում, Էստոնիայում և Լատվիայում, ապա 70-ական թվականների վերջին վիճակն այդպես էր փաստորեն բոլոր հանրապետություններում:

Եթե դեռ պատերազմից առաջ շատ ժողովուրդներ պատրաստված կադրեր չունեին, ապա այժմ դրությունը արմատապես փոխվել է, նրանք բոլորն ունեն այդպիսի կադրեր, ներառյալ բարձրագույն որակավորմամբ մասնագետներ:

Խորհրդային իշխանության առաջին տասնամյակներին հանրապետությունների միջև տնտեսական փոխանակման ոչ մի համարժեքության մասին խոսք անգամ լինել չէր կարող: «Հավասարեցման» քաղաքականության հիմնական ծանրությունը այն ժամանակ ընկած էր տնտեսական առումով առավել զարգացած ռեգիոնների, նախ և առաջ՝ ՌԽՖՍՀ-ի և Ուկրաինայի ուսերին: Բայց նյութական ու տեխնիկա-

կան օգնության հոսքերը միշտ չէ, որ ընթանում էին միայն Միության եվրոպական մասից դեպի ասիականը: Բավական է հիշել հետպատերազմյան վերականգնման տարիները: Ամբողջ ֆեդերացիան էր միջոցներ ներդնում, որպեսզի վերացվի ավերածությունը Ռուսաստանի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մոլդավիայի՝ պատերազմից ամայացած մարզերում, որպեսզի մերձբալթյան հանրապետությունների արդյունաբերությանն ու գյուղատնտեսությանը օգնություն ցույց տրվի ոտքի կանգնելու:

Կարճ ասած, մեր բոլոր ժողովուրդների համատեղ ջանքերով խորհրդային իշխանության տարիներին հսկայական հարստություն ստեղծվեց: Յուրաքանչյուր ժողովուրդ իրավունք ունի դրա մեջ տեսնելու իր աշխատանքի մասնիկը, այն համարելու նաև իր սեփականությունը, ընդհանուր կապիտալ: Պլանային հիման վրա ԽՍՀՄ-ի տնտեսության բազմամյա զարգացման շնորհիվ նվաճվել է նրա ամբողջականության բարձր մակարդակ, գոյացել ամբողջական ժողովրդատնտեսական համալիր:

Ընդ որում, խոսքը ոչ թե պարզապես արտադրական կարողությունների գումարի մասին է, այլ հենց միասնական տնտեսական օրգանիզմի մասին, որի առանձին մասերը չեն կարող գոյություն ունենալ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության գոյացած ու խորացող կապերից դուրս:

Նշելով այս նվաճումները, ես հեռու եմ այն բանը պնդելու մտքից, թե առավելագույնն է ձեռք բերվել մեր ժողովրդական տնտեսության բոլոր տարրերի ներդաշնակ փոխկապակցվածության ապահովման համար: Ցավոք, այստեղ մենք շատ բանով ենք հետ մնում, և աշխատանքի կոոպերացման հետագա խորացումը մեր զարգացման կարևորագույն ռեզերվն է: Բայց նույնիսկ այս դեպքում ժողովրդական տնտեսության մեջ փոխադարձ կապերի ձեռք բերված հոծությունը բառացիորեն ընդվզում է դրանք խախտելու ամեն տեսակ փորձերի դեմ: Բոլորս պետք է սա գիտակցենք լիովին, որպեսզի չսխալվենք այն որոշումներում, որ կայացնում ենք և կայացնելու ենք վերակառուցման ընթացքում:

Ինձ թույլ կտամ բերել որոշ թվեր, որոնք բնութագրում են միջհանրապետական կապերը միջճյուղային հաշվեկշռի հիման վրա: Ներբերվող արդյունաբերական արտադրանքի բաժինը նրա ընդհանուր հանրապետական սպառման մեջ 1987 թվականին կազմել էր ՌԽՖՍՀ-ում՝ 18 տոկոս, Ուկրաինական ԽՍՀ-ում՝ 26, Բելոռուսական ԽՍՀ-ում՝ 39, Ղազախստանում՝ 33, Անդրկովկասի հանրապետություններում՝ 33—40, Մերձբալթիկայի հանրապետություններում՝ 39—42, Միջին Ասիայում՝ 37—47 և Մոլդավական ԽՍՀ-ում՝ 44 տոկոս:

Ռուսաստանի նավթի-գազի հզոր համալիրը էներգետիկ ռեսուրսներով ապահովում է բոլոր հանրապետությունների պահանջարկի մեծ մասը: ՌԽՖՍՀ-ն, Ուկրաինան և Ղազախստանը մետաղ են մատակարարում ամբողջ երկրին, արտադրում հացահատիկի 90 տոկոսը: Միջին Ասիան շատ այլ ապրանքների հետ մեկտեղ մատակարարում է մի այնպիսի եզակի արտադրանք, ինչպիսին բամբակն է: Բելոռուսիան, Լիտվան, Լատվիան, Էստոնիան արտադրում են ճշգրիտ մեքենաշինության և թեթև արդյունաբերության արտադրանք, նրանք մսի, կաթի և կարտոֆիլի խոշոր մատակարարներ են: Էկոնոմիկայում իրենց դեմքը ունեն Անդրկովկասի հանրապետություններն ու Մոլդավիան: Վերլուծությունը ցույց է տալիս, որ փաստորեն ոչ մի հանրապետություն չէր կարող ինքնուրույն ստեղծել այնպիսի պոտենցիալ, որպիսին նա այսօր ունի: Եվ ճիշտ այդպես էլ ոչ մեկը չէր կարող ապահովել այդ պոտենցիալի նորմալ գործունեությունը և արդյունավետ օգտագործումը: Այսպիսին է ժողովուրդների ջանքերի միավորման արդյունքը:

Իրողություններն այսպիսիք են: Օրինակ, Լատվիական ԽՍՀ-ում ներբերման հաշվին է բավարարվում վառելիքի պահանջարկի 96, էլեկտրաէներգիայի՝ 50, սև մետաղների՝ 90, գունավոր մետաղների՝ 100, հումքի քիմիական նյութերի՝ 80, մեքենաշինության արտադրանքի պահանջարկի 63 տոկոսը:

Անասնապահության կարիքների համար տարեկան այստեղ ներբերվում է մեկուկես միլիոն տոննա հացահատիկ, այնտեղ օգտագործվող խտացրած կերի կեսից ավելին:

Համանման պատկեր է մյուս հանրապետություններում: Ասենք, Հայաստանը ներբերման հաշվին է բավարարում վառելանյութի պահանջարկի 100, սև մետալուրգիայի՝ 93, քիմիական ու նավթաքիմիական արդյունաբերության արտադրանքի 56, մեքենաշինության ու մետաղամշակման՝ 32, մսամթերքների՝ 37 և կաթնամթերքների պահանջարկի 64 տոկոսից ավելին: Ուզբեկական ԽՍՀ-ում ներբերման հաշվին են բավարարվում նավթի ու գազի արդյունաբերության արտադրանքի պահանջարկի



50, ածխի՝ 56, սև մետալուրգիայի արտադրանքի՝ 80, գունավոր մետալուրգիայի արտադրանքի պահանջարկի 48 տոկոսը:

Ցանկացած տնտեսության նորմալ գործունեության կարևոր նախադրյալներից մեկը զարգացած շուկայի առկայությունն է: Հայտնի է, թե աշխարհում ինչ կատաղի պայքար է մղվում վաճառահանման շուկայի համար: Եվ, անշուշտ, մեր բոլոր հանրապետությունների ու ռեգիոնների մեծ առավելությունն է փաստորեն անսահմանափակ ընդհանուր միութենական շուկայի առկայությունը:

Ահա մի օրինակ: Լիտվան մյուս հանրապետություններին մատակարարում է հաշվողական, հեռուստատեսային և ձայնագրման տեխնիկա, հաստոցաշինության, էլեկտրատեխնիկական, թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանք, փոխարենը Ռուսաստանից ստանալով տեխնոլոգիական սարքավորումներ, ավտոմեքենաներ, տրակտորներ, կոմբայններ, նավթամթերքներ, Ուկրաինայից՝ մետաղ և ածուխ, Բելոռուսիայից՝ կալիումական պարարտանյութեր, Միջին Ասիայից՝ բամբակ, Ղազախստանից՝ գունավոր մետաղներ ու բուրդ, Մոլդավիայից և Անդրկովկասից՝ միրգ:

Գոյացած տնտեսական իրողությունների իմաստավորումն ու դրանց վերլուծության հետևությունները սկզբունքային նշանակություն ունեն արդիական ազգային քաղաքականություն մշակելու համար: Եվ ընդսմին, իհարկե, չի կարելի առանց ուշադրության թողնել այն բացասամետ պրոցեսները, որոնք արտադրողական ուժերի ոչ ռացիոնալ տեղաբաշխման հետևանք են, որոնք հանգեցրին էկոլոգիական ու ժողովրդագրական սուր իրավիճակների ծագմանը: Մեզանում ներկայումս որոշ տեղերում չեն հերիքում աշխատանքային ռեսուրսները, լրիվ չափով չեն օգտագործվում ստեղծված կարողությունները, որի պատճառով հասարակությունը տնտեսական մեծ կորուստներ է կրում: Այլ ռեգիոններում, նախ և առաջ Միջին Ասիայի և որոշ չափով Անդրկովկասի հանրապետություններում, Մոլդավիայում, ընդհակառակն, գոյացել են ավելցուկային աշխատանքային ռեսուրսներ: Դա դառնում է սոցիալական լարվածության, կոնֆլիկտային իրավիճակների առաջացման աղբյուրներից մեկը, այդ թվում՝ ազգամիջյան հարաբերությունների ոլորտում: Դրա վկայությունները վերջին ժամանակներս ավելի քան շատ են:

Ստեղծված իրավիճակի պատճառները պետք է պարզել հիմնավորապես, այդ բոլոր հարցերը պետք է խորապես կշռադատվեն մեր էկոնոմիկայի վերակառուցման կոնցեպցիայի վրա կատարվելիք հետագա աշխատանքի շրջանակներում: Այս առումով կան Ուզբեկստանից ստացված առաջարկություններ, դրանք պատրաստվում են նաև մյուս հանրապետություններում: Հարկավոր է շարունակել այս աշխատանքը, որպեսզի իրավիճակի շտկման առաջին լուրջ քայլերն արվեն արդեն տասներեքերորդ հնգամյակում:

Բայց ահա թե ինչ կուզենայի ասել այս կապակցությամբ, ընկերներ: Մենք հիմա խոսում ենք, և ճիշտ ենք խոսում, գերկենտրոնացման, էկոնոմիկայի այս կամ այն ճյուղի զարգացման մեջ գերատեսչությունների թելադրանքի ու կամայականության կործանարար հետևանքների մասին: Այնինչ ես կարող էի ձեզ այսօր ցույց տալ մի հատոր, որտեղ ամփոփված են վերջին տասը տարում նոր ձեռնարկություններ կառուցելու, արդյունաբերության ամբողջ ճյուղեր ստեղծելու միութենական հանրապետությունների խնդրանքները: Այսօր կենտրոնի մեղքը համարվող շատ բաներ ի հայտ են եկել հանրապետական և տեղական մարմինների բազմակի համառ խնդրանքների հետևանքով: Վերցնենք ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նստաշրջանների սղագրությունները և դուք կտեսնեք, որ դրանք լի են այդ կարգի անվերջանալի խնդրանքներով: Իսկ մինչև հիմա որքան գրություն է ստացվել ԽՄԿԿ Կենտկոմում:

Ըստ որում, ջանալով ստանալ այս կամ այն պատկառելի օբյեկտը, տեղական իշխանությունները հաճախ համաձայնում էին կենտրոնական գերատեսչությունների ամենախիստ պայմաններին, սոցիալական զարգացմանը հատկացվում էին նվազագույն միջոցներ, մարդկանց կարիքները փաստորեն անտեսվում էին:

Այս պրոբլեմները ընդհանուր բնույթ ունեն, բայց մեր երկրի պայմաններում դրանք ազգային երանգ են ստացել:

Եթե խոսենք ընդհանուր առմամբ, ապա մեր էկոնոմիկայում հենվելու բան կա, բայց աշխատանքի համար էլ անսպառ ասպարեզ կա:

Գնահատելով իրադրությունը մեր բազմազգ երկրի կյանքի հոգևոր ոլորտում, հարկավոր է նախ և առաջ ըստ արժանվույն գնահատել այն վիթխարի, պատմական ծավալի ու նշանակության աշխատանքը, որը թույլ տվեց իսպառ անհետացումից փրկել կամ վերածնել, երկրորդ շնչառությունը տալ բազմաթիվ եզակի ազգային ավանդույթների, ապահովել բոլոր ժողովուրդների մշակույթի հզոր վերելքը:

Մենք հաճախ կիրառում ենք այն սովորական արտահայտությունը, որ խոր-
հըրդային իշխանության օրոք որոշ ժողովուրդներ առաջին անգամ իրենց գիրն
ունեցան: Իսկ իրականում դա ի՞նչ է նշանակում: Մարդուց խլեք մայրենի լեզվով
խոսելու և գրելու, իր ժողովրդի պատմական ուղին, դյուցազնավեպը իմանալու
հնարավորությունը, և նա, որքան էլ հաջողության հասնի նյութական առումով, ար-
դեն անտոհմ է, հետևաբար նաև՝ ոգեզուրկ:

Մեր երկրում կուլտուրական հեղափոխության լենինյան քաղաքականությունը,
չնայած եղած բոլոր ձևախեղումներին, տպավորիչ արդյունքներ է տվել:

Հիմա մեր ժողովուրդներից յուրաքանչյուրն ունի իր գիտական և արվեստագետ
մտավորականությունը՝ ազգային մշակույթի կրողը, որից կախված է նաև նրա
հաղորդակցումը խորհրդային մյուս ազգերի արժեքներին, գիտելիքների համաշ-
խարհային գանձարանին և համաշխարհային կլասիկային: Հանրապետություններից
յուրաքանչյուրում կան գիտական կենտրոններ, համալսարաններ և ինստիտուտներ,
ժողովրդական կրթության լայն ցանց, սեփական թատրոններ, զարգանում են ազ-
գային կինեմատոգրաֆիան, գեղանկարչությունն ու ճարտարապետությունը: Իսկ
չէ՞ որ հայտնի է, որ գիտական և գեղարվեստական ստեղծագործության շատ ուղ-
ղություններ չեն կարող զարգանալ առանց համակողմանի պետական աջակցու-
թյան, հասարակության հոգածության և ուշադրության: Այս ամենը իր վրա է վերց-
րել խորհրդային իշխանությունը, և սա նրա մեծագույն մարդասիրական առաքելու-
թյունն է:

Խոսելով մեր հոգևոր զարգացման արդյունքների մասին, անհնար է անուշադրու-
թյան մատնել նաև ազգային մշակույթների հարանուն փոխադարձ կապը: Սոցիա-
լիստական ուղիով մեր ժողովուրդների շարժման և համատեղ կյանքի արդյունքը
դարձավ խորհրդային մշակույթի ձևավորումը, որը հարուստ է իր բազմազանու-
թյամբ, ազգային առանձնահատկությունների և ավանդույթների բազմերանգու-
թյամբ: Սրանք նույնպես եղբայրական ժողովուրդների համագործակցության արժա-
նի պտուղներ են, և մենք դրանցով հպարտանում ենք:

Բայց մանավանդ անհանդուրժելի է, որ սոցիալիստական ապրելակերպի վառ
դրսևորումներից բացի այդ ոլորտում ևս կուտակվել են անչափ սուր պրոբլեմներ:
Անհիմն կերպով վերացվել են իրենց պարտականությունները հաջող կատարած
հազարավոր ազգային շրջաններ, ավանային և գյուղական խորհուրդներ, որոնք
ստեղծվել էին 20-ական թվականներին: Ազգային պահանջմունքների բավարարման
դժվարություններ ծագեցին տարբեր ազգությունների մարդկանց շրջանում, որոնք
բնական պրոցեսների բերումով ցրվել էին երկրի բոլոր ռեգիոններում:

Հատկապես սուր բնույթ ստացան լեզուների զարգացման և դրանց հետ կապ-
ված ամեն ինչի՝ կրթության, հրատարակչական գործունեության, պետական և հա-
սարակական կյանքի տարբեր ոլորտներում օգտագործման հնարավորությունների
պրոբլեմները: Տնտեսական, սոցիալական և ժողովրդագրական գործոնների ազ-
դեցությամբ տեղի էր ունենում ազգային լեզուների գործողության ոլորտի որոշակի
կրճատում, որը մեկնաբանվում էր ազգերի փութացված ձուլման վերաբերյալ անց-
յալում տարածված տեսական կանխադրույթների օգտին, որոնք բարձրացվել էին
ծրագրային հիմնադրույթների մակարդակի:

Ու թեև այդ պրոցեսները օրինական տագնապ և մտահոգություն էին հարուցում
հասարակության մեջ, բայց դրանց խորամուխ լինելու և նպատակահարմար լուծում
գտնելու ողջամիտ փորձերը հաճախ որակվում էին որպես ազգայնականություն՝
դրանից բխող բոլոր հետևանքներով: Այդ պրակտիկայի հետևանքը դարձավ որոշ
ժողովուրդների ազգային լեզուների դերի նվազումը: Եվ հասկանալի է մայրենի լե-
զուն պահպանելու ու զարգացնելու, իրենց մշակույթի արժեքները բազմապատկելու
նրանց ձգտումը:

Մեզ համար չափազանց կարևոր է հստակ դիրքորոշում մշակել կենսականորեն
կարևոր այդ պրոբլեմի առթիվ, որն ստացել է քաղաքական բնույթ և շոշափում է
երկրի ամբողջ բնակչության շահերը: Ըստ որում, այնպիսի դիրքորոշում, որը հիմ-
նըված լինի բոլոր արդարացի իղձերը հաշվի առնելու, համընդհանուր համաձայ-
նության վրա:

Սրանք են մեր բազմազգ երկրի զարգացման հիմնական արդյունքները, սրանք
են (իհարկե ամենաընդհանուր գծերով) խորհրդային հասարակության այն իրողու-
թյունները, որոնցից էլ մենք պետք է ելնենք, արդի պայմաններում մշակելով ազգա-
յին քաղաքականությունը:



II

Ընկերներ: Պլենումի քննարկմանը ներկայացված ԽՄԿԿ պլատֆորմի նախա-
գծում, բնականաբար, խոսվում է հասունացած պրոբլեմների նկատմամբ ընդհա-
նուր մոտեցման մասին, քանի որ կոնկրետ որոշումների ընդունումը ԽՍՀ Միության,
միութենական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մար-
մինների առանձնաշնորհն է:

Պլատֆորմը աշխույժ հետաքրքրություն է առաջացրել կուսակցության մեջ, հա-
սարակության բոլոր խավերում, մեր երկրում ապրող բոլոր ազգությունների ներկա-
յացուցիչների շրջանում: Դրա սկզբունքային դրույթները արժանացել են լայն պաշտ-
պանության: Արվել են բազմաթիվ դատողություններ և հետաքրքրական առաջար-
կություններ: Որոշ թեզիսներ քննադատվել են. դա նույնպես տեղի է ունենում:

ԽՄԿԿ պլատֆորմը մեծ ուշադրության է արժանացել նաև արտասահմանում:
Դա կապված է ինչպես մեր երկրում տեղի ունեցող վերակառուցողական պրոցես-
ների նկատմամբ առկա աշխույժ հետաքրքրության, այնպես էլ այն բանի հետ, որ
ազգային պրոբլեմները այսօր հրատապ են շատ երկրներում, ևս կասեի՝ համընդ-
հանուր բնույթ ունեն:

Գնահատելով և ծանրութեթև անելով պլատֆորմի նախագիծը, դուք, իհարկե,
ուշադրություն եք դարձրել, որ դրա ամբողջ բովանդակությունը ամենաանմիջական
կերպով կապված է այն խնդիրների համալիրին, որոնք մենք լուծում ենք վերակա-
կերպով կապված է այն խնդիրների համալիրին, որոնք մենք լուծում ենք վերակա-
ռուցման, քաղաքական ու տնտեսական ռեֆորմի շրջանակներում: Սա բնական է:
Այստեղ, ինչպես ասում են, կա անչափ կենդանի դիալեկտիկական կապ, որը մենք
պետք է հաշվի առնենք թե քաղաքականության և թե պրակտիկ գործունեության
մեջ: Իրոք, մենք խնդիր ենք դրել վերակառուցել, նորացնել հասարակությունը լե-
նինյան գաղափարների ու սկզբունքների հիման վրա: Բայց թե անցյալի և թե ներ-
կայի մեր ամբողջ փորձը վկայում է, որ չի կարելի վերակառուցման հաջողության
հույս ունենալ, առանց լուծելու ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմները:

Ճիշտ այդպես էլ անհնար է լուծել այդ պրոբլեմները, նոր խթան տալ վերա-
կառուցողական պրոցեսներին, առանց սոցիալիստական հասարակության դեմո-
կրատացման ու մարդեղացման:

Կուզենայի նաև ձեր ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ մենք պա-
տահաբար չենք ընդգծում ազգային քաղաքականության նորացման անհրաժեշտու-
թյունը: Խոսքն այն մասին չէ, որ դեն նետենք մինչև հիմա արվածը: Բայց ներկա
փուլում, երբ մեր հասարակությունը արմատապես փոխվել է, կենսական պահանջ
է ծագել մշակելու այնպիսի ազգային քաղաքականություն, որն ապահովեր երկրի
զարգացման հասունացած պրոբլեմների լուծումը, համապատասխաներ արդիակա-
նության իրողություններին: Նման մոտեցումների վրա է հենց կառուցված պլատ-
ֆորմը: Դրա, եթե կուզեք, խորքային փիլիսոփայական իմաստն այն է, որ սահ-
մանվեն ինտերնացիոնալայինի և ազգայինի հարաբերակցության, ներկա պայման-
ներում մարքս-լենինյան այդ գաղափարների կիրառության նպատակահարմար ձե-
վերը: Իսկ գործնական ու քաղաքական առումով՝ պայմաններ ապահովվեն յուրա-
քանչյուր ազգի ազատ ու համակողմանի զարգացման և Միության ամրապնդման
համար, որը մեր բոլոր ժողովուրդների բարօրության աղբյուրն է:

Այստեղ վճռական [illegible]ւյցը, որին պետք է առանձնակի անդրադառնալ, արդի
պայմաններում ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքի իրականացման ուղին է:
Անցած տասնամյակներում այստեղ թույլ են տրվել զգալի խեղաթյուրումներ:
Ցավոք, դրանք որոշակի չափով ամրացվել են նաև հասարակական գիտակցության
մեջ: Ուստի և անհրաժեշտ է հստակորեն կողմնորոշվել մեր տեսության և քաղա-
քականության համար արմատական այդ հարցում:

Նախ և առաջ հարկավոր է ընդգծել, որ կուսակցությունը հետևողականորեն
կկենսագործի լենինյան ազգային քաղաքականությունը, ներառյալ դրա այնպիսի
մի հիմնարար սկզբունք, ինչպիսին է ազգերի ինքնորոշման իրավունքը: Անպտուղ
են և դատապարտման են արժանի այն փորձերը, որոնցով պնդում են, թե ԽՍՀՄ
ժողովուրդների ինքնորոշում իբր տեղի չի ունեցել, թե ինքնորոշումը միայն անջա-
տումն է: Դրանք աղքատացնում են ազգային հարցի լուծման այդ համապարփակ
սկզբունքը: Մեր, և ոչ միայն մեր, ամբողջ փորձը վկայում է, որ ինքնորոշումը չպետք
է դիտել որպես միայն անջատման իրավունքի իրականացման հետ կապված միա-
նվագ գործողություն: Դա ազգային արժանապատվության հաստատման, լեզվի և
մշակույթի զարգացման, քաղաքական ինքնուրույնության ամրապնդման, տնտեսա-
կան ու սոցիալական առաջադիմության բարդ, բազմաբնույթ պրոցես է:

Այս տեսակետից վերակառուցման շրջանակներում իրականացվող միջոցառումների համալիրը նշանակում է նոր խոշոր փուլ ազգերի ինքնորոշման իրավունքի իրականացման գործում:

Արդի պայմաններում այդ սկզբունքն իր լավագույն արտահայտությունն է գտնում ինքնակառավարման մեջ, որն ապահովում է ազգային ինքնօրինակության պահպանումը, սուվերենության բոլոր բարիքներից օգտվելու, իր զարգացման տնտեսական, քաղաքական, մշակութային հարցերը ինքնուրույնաբար լուծելու յուրաքանչյուր ժողովրդի իրավունքը: Միևնույն ժամանակ ինքնակառավարումը ենթադրում է հանրապետությունների և ազգային կազմավորումների կամավոր միավորում հանուն ամենքի համար ընդհանուր խնդիրների լուծման, ամբողջ երկրի զարգացման մեջ դրանց օրգանական ներառման:

Ազգերի ինքնորոշման ներկա փուլը օրակարգում դնում է հանրապետությունների իրավունքների զգալի ընդլայնումը, այն խեղաթյուրումների ու ձևախեղումների վրճռական վերացումը, որոնք տեղի են ունեցել անցյալում և որոնց կործանարար հետևանքները մինչև օրս իրենց զգացնել են տալիս մեր հասարակության կյանքի տարբեր ոլորտներում: Նախ և առաջ առաջարկվում է միջոցառումների համալիր, որոնց նպատակն է ամրապնդել միութենական հանրապետությունների քաղաքական ինքնուրույնությունը, իրական բովանդակությամբ հագեցնել նրանց սուվերենությունը:

Իշխանության միութենական և հանրապետական մարմինների լիազորությունների հստակ սահմանազատումը վերջիններիս թույլ կտա իրենց հայեցողությամբ լուծելու իրենց կյանքի բոլոր հարցերը, բացառությամբ այն հարցերի, որոնք կամովին նրանք հանձնում են Միությանը և, ի դեպ, որոնց լուծմանը նրանք նույնպես կմասնակցեն համապատասխան քաղաքական մեխանիզմների միջոցով:

Ֆեդերացիայի ընդհանուր խնդիրների իրականացման լիազորությունները Միությանը թողնելով հանդերձ՝ ենթադրվում է սկզբունքային փոփոխություն կատարել ավելի վաղ գոյություն ունեցած այն կարգի մեջ, ըստ որի Միությունը իրավունք ուներ քննարկել և լուծել փաստորեն ամեն մի հարց, ինչը մեծապես ձևական էր դարձնում հանրապետական իշխանությունների իրական իրավասությունը և սուվերենությունը: Այսպիսով լուծվում է միութենական կամ հանրապետական օրենքի առաջնայնության պրոբլեմը:

Ֆեդերացիայում հարաբերությունների նոր բնույթը պետք է իր իրավական երաշխիքները գտնի ԽՍՀՄ սահմանադրության մեջ: Այնուհետև: Ես արդեն հիշատակել եմ և ուզում եմ զարգացնել այն միտքը, որ հանրապետությունների իրավունքների ընդլայնումը և դրանց սուվերենության ամրապնդումը պետք է արտահայտվեն ընդհանուր միութենական գործերի վրա նրանց ազդեցության զգալի ընդլայնմամբ: Քաղաքական ռեֆորմի ընթացքում ստեղծվող պետական իշխանության նոր կառուցվածքներում արդեն շատ բան է արված այդ ուղղությամբ: Դրանք են՝ թե՛ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի, նրա նախագահության կազմը և թե՛ սահմանադրական հսկողության կոմիտեի աշխատանքի նախատեսվող կարգը: Ներկայումս առաջարկվում է ավելի հեռուն գնալ, ոչ միայն իրավաբանական, այլև քաղաքական պայմաններ ստեղծելով ընդհանուր միութենական պրոբլեմների լուծմանը հանրապետությունների ավելի լայն և ակտիվ մասնակցության համար:

Նման մոտեցումը իր արտահայտությունը պետք է գտնի նաև կադրային քաղաքականության մեջ: Հարկ է ապահովել մեր բոլոր ժողովուրդների ներկայացուցիչների լայն մասնակցությունը ընդհանուր միութենական, պետական ու հասարակական մարմիններին, կառավարման ապարատին: Հասկանալի է՝ հաշվի առնելով մարդկանց մասնագիտական հատկանիշները:

Մեր Ֆեդերացիայի վերափոխման, միութենական հանրապետությունների իրավունքների հետագա ընդլայնման և սուվերենության ամրապնդման հետ կապված պրոբլեմների համալիրում անհրաժեշտ է քննարկել ՌԽՖՍՀ-ի զարգացման հասունացած հարցերը: Վերջին ժամանակներս դրանք հայտնվել են ոչ միայն բուն Ռուսաստանի Ֆեդերացիայում, այլև ամբողջ երկրում անցկացվող բանավեճերի կենտրոնում:

Թե Միության մեջ իր ունեցած դիրքով, թե իր ներքին կառուցվածքով ՌԽՖՍՀ-ն ազգային-քաղաքական և մշակութային էթնիկական շատ բարդ համակարգ է: 1917 թվականի հոկտեմբերի սկզբնավորած հեղափոխական հզոր տեղաշարժերը արմատապես փոխեցին Ռուսաստանի նկարագիրը: Հայտնի է, թե Ռուսաստանը, ռուս ժողովուրդը ինչ դեր խաղացին ամբողջ երկրի՝ հեղափոխական վերափոխումների,



շատ ժողովուրդների տնտեսական ու մշակութային հետամնացության հաղթահարման ուղի թևակոխելու, Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու գործում:

Սակայն թույլ տրված դեֆորմացիաները բացասաբար անդրադարձան բուն Ռուսաստանի, ինչպես որ մյուս բոլոր միութենական հանրապետությունների վրա: Այդ են վկայում ժողովրդագրական աննպաստ միտումները, բնական ռեսուրսների ոչ նպատակահարմար օգտագործման և դրանց վատնման բազմաթիվ փաստերը, այնպիսի բնիկ ռուսական մարզերի ակնհայտ բարձիթողի վիճակը, ինչպիսիք են ոչ սևահողային գոտին, մի շարք այլ ռեգիոններ:

Արտադրողական ուժերի տեղաբաշխման ու զարգացման բնագավառում թույլ տրված լուրջ վրիպումների հետևանքով էկոլոգիական սուր իրադրություն է ստեղծվել Կուզբասում, Ուրալ և Վոլգա գետերում, Բայկալ լճում, հյուսիսային ռեգիոններում: Ակներև է շատ երկրամասերի, մարզերի, ինքնավար կազմավորումների հետ մնալը սոցիալական զարգացման ասպարեզում: Օրինական տագնապ է արտահայտվում հնության անգին հուշարձանների պահպանման ու վերականգնման համար, որոնց հետ անխզելիորեն կապված են ռուս և հանրապետության մյուս ժողովուրդների պատմությունն ու մշակույթը: Ռուսաստանի և ամբողջ երկրի հասարակայնությանը լրջորեն անհանգստացնում է Հյուսիսի, Սիբիրի և Հեռավոր Արևելքի փոքրաթիվ ժողովուրդների վիճակը:

Այս բոլոր խնդիրների լուծումը պահանջում է խոր և հեռահար միջոցառումների իրագործում, այդ թվում՝ կազմակերպական ու քաղաքական բնույթի: Հաշվի առնելով բազմաթիվ առաջարկությունները, պլատֆորմում նշված են Ռուսաստանի Ֆեդերացիայի պետական կառուցվածքի, Միության մեջ նրա դիրքի կատարելագործման ուղիները: Դրանք, լայնորեն քննարկվելով, հավանության են արժանացել ինչպես բուն ՌԽՖՍՀ-ում, այնպես էլ ամբողջությամբ վերցրած Միության մեջ: Սա մենք գոհունակությամբ են նշում: Կարծում եմ, Կենտրոնական կոմիտեի պլենումը կարտահայտվի ի պաշտպանություն այդ առաջարկությունների: Ինչ վերաբերում է հանրապետական կուսակցական կառուցվածքների կազմավորմանը, ապա մենք կարող էինք արդեն այժմ սկսել այդ հարցերի մշակումը:

Պլատֆորմի, նրա այն մասի արձագանքներում, որտեղ խոսքը վերաբերում է հետագայում ըստ ռեգիոնների կառավարման անցնելուն, անհանգստություն է հայտնվում, թե դա կարող է հանգեցնել դրանց միջև եղած կապերի թուլացման: Պետք է ասեմ, որ նման անհանգստությունը զուրկ է հիմքից: Ընդհակառակը, տերիտորիալ կտրվածքով տնտեսության կառավարման կատարելագործումը թույլ կտա ոչ միայն տեղերում ավելի լավ լուծել սոցիալական, էկոլոգիական և մյուս խնդիրները, այլև կնպաստի Ռուսաստանի բոլոր մասերի միջև աշխատանքի կոոպերացման զարգացմանը, ՌԽՍՖՀ-ի՝ որպես մի ամբողջական տնտեսական ու քաղաքական օրգանիզմի, դինամիկ զարգացմանը ի շահ այնտեղ ապրող բոլոր ժողովուրդների:

Խորհրդային ֆեդերացիայի վերակազմման շրջանակներում մեծ նշանակություն ունի խորհրդային ինքնավարությանը նոր կարգավիճակ տալը: Այսպիսին է պլատֆորմի առաջարկությունների իմաստը, որոնք վերաբերում են ինքնավար հանրապետությունների իրավունքների ընդլայնմանը պետական, տնտեսական ու մշակութային շինարարության դրանց տնտեսական ինքնուրույնության ամրապնդման բոլոր բնագավառներում: Նույն նպատակն է հետապնդում ինքնավար մարզերի և օկրուգների իրավունքների ընդլայնումը, ազգությունների համահավաք բնակության վայրերում ազգային շրջանների, ինչպես նաև սեփական տերիտորիալ ինքնավարություն չունեցող խոշորաքանակ ազգերի քաղաքացիների ընդհանուր միութենական խորհուրդների ստեղծման հնարավորությունը:

Դուք ակներևաբար ուշադրություն դարձրիք, որ առաջարկություններ էին արվում ինքնավարության մի ձևը փոխակերպելու մեկ ուրիշի, ցանկություններ էին հայտնվում որոշ ինքնավար հանրապետություններ վերափոխելու միութենականների:

Ընկերներ, հարկավոր է ամենայն որոշակիությամբ ասել. եթե իրատես լինենք և հաշվի առնենք այն իրավիճակը, որի մեջ գտնվում ենք, ամենագլխավորը նման ձևի մեջ ինքնորոշված ժողովուրդների իրավունքները պետք է զգալիորեն ընդլայնվեն և իրոք հուսալիորեն ապահովվեն:

Կանդրադառնամ ևս մի սկզբունքային հարցի: Պլատֆորմի արձագանքները առաջարկություններ են բովանդակում ազգային պետական ու վարչական կազմավորումների սահմանների վերաձևման, տերիտորիալ փոփոխությունների մասին: Դրա օգտին զանազան փաստարկներ են բերվում: Դրա վերաբերյալ պլենումում պետք

է հաստատուն ու հստակ դիրքորոշում ձևակերպել: Մենք ելնում ենք այն բանից, որ ներկայիս ազգային-տերիտորիալ բաժանումը խոչընդոտ չէ, որ բոլոր ազգությունների մարդիկ կարողանան նորմալ ապրել երկրի ցանկացած անկյունում: Ջանքերը նախ և առաջ պետք է ուղղել հենց համապատասխան պայմանների ստեղծմանը: Իսկ անմիջապես երկրի վարչատերիտորիալ քարտեզի վերաձևման ուղի թևավկոխելը կնշանակեր միայն բարդացնել առանց այդ էլ ոչ հասարակ իրավիճակը, փաստորեն անորոշ ժամանակով հետաձգել վերակառուցման իրական նպատակների իրագործումը, որոնք նպատակամղված են խորհրդային բոլոր մարդկանց, բոլոր ժողովուրդների կյանքի բարելավմանը:

Մեր նոր ազգային քաղաքականությունը կոչված է լայն հնարավորություններ ապահովել յուրաքանչյուր ժողովրդի յուրահատուկ շահերի բավարարման և դրա հետ մեկտեղ իրենց ազգային պատկանելությունից անկախ քաղաքացիների իրավունքների երաշխիքների ամրապնդման համար: Պլատֆորմում մի շարք միջոցառումներ են նշված այդ նպատակի իրականացման համար: Ավելացնեմ, որ դրանք ամբողջովին համապատասխանում են միջազգային ասպարեզում մեր ստանձնած պարտավորություններին: Իրականացնելով դրանք, մենք միաժամանակ լուծում ենք ԽՍՀՄ-ում իրավական սոցիալիստական պետության կազմավորման կարևոր խնդիրները:

Պետք է նկատի ունենալ, որ տնտեսական, սոցիալական, ժողովրդագրական պրոցեսների, ազգամիջյան տեղաշարժերի հետևանքով մեզ մոտ 60 միլիոնից ավելի մարդիկ ապրում են իրենց ազգային հանրապետությունների սահմաններից դուրս: Եվ, իհարկե, անհնար է որևէ հարց լուծել առանց հաշվի առնելու մեր այդ համաքաղաքացիների օրինական շահերն ու իրավունքները: Այստեղ անթույլատրելի է որևէ խտրականություն:

Մարդու, քաղաքացու, անհատի իրավունքների և ազատությունների պաշտպանությունը արդի քաղաքակրթության զարգացման կարևորագույն պայմաններից է: Վերջերս Հելսինկիի համաձայնագրի մասնակից պետությունների ներկայացուցիչների Վիեննայի հանդիպմանը ԽՍՀՄ-ն իր ստորագրությունը դրեց նրա ամփոփիչ փաստաթղթի տակ: Ես դրա մասին հիշեցրի մասնավորապես այն պատճառով, որ իրապես գործող ֆեդերատիվ պետության պայմաններում քաղաքացիների իրավունքների մասին օրենսդրությունը նորացնելու խնդիրը դառնում է բազմապլանային:

Խոսքը միայն միութենական օրենքների մասին չէ: Հանրապետությունները նույնպես պարտավոր են կատարել այն բոլոր միջազգային իրավական պակտերը, որ ստորագրված են Խորհրդային Միության անունից, ուրեմն նաև՝ նրա մեջ մտնող բոլոր հանրապետությունների անունից:

Անհրաժեշտ է ամենուրեք ուժեղացնել ԽՍՀՄ քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը: Այս մասին կարևոր է ասել, մանավանդ որ բազմապատկվում են ըստ ազգային հատկանիշի մարդկանց խտրականության դեպքերը: Մենք ավելի ու ավելի հաճախ ենք բախվում «նացիոնալիստական խաղաքարտը» խաղարկելու, մարդկանց տասնամյակներ շարունակ կուտակված դժգոհությունը ազգամիջյան հարաբերությունների ոլորտը փոխադրելու, վերակառուցման հակառակորդների, հակահասարակական տարրերի ու խմբերի փորձերին: Մեզ համար անընդունելի են նացիոնալիզմի և շովինիզմի ամեն տեսակ դրսևորումները, ցանկացած ժողովրդի նկատմամբ թշնամության բորբոքումը:

Մենք վերցրել ենք հասարակության դեմոկրատական զարգացման կուրս և հաստատորեն կհետևենք դրան: Բայց չի կարելի իրարից չտարբերել սահմանադրության շրջանակներում տեղի ունեցող խաղաղ ցույցերն ու միտինգները և այն ծայրահեղական խառնաժողովները, որոնք ազգամիջյան ընդհարումներ են հրահրում, [illegible]ի են [illegible]արկում և ահաբեկում ուրիշ ազգությունների մարդկանց: Այդ կարգի անձանց [illegible] խմբերի նկատմամբ անհաստատակամ վերաբերմունքը, ամենաթողությունը պարզապես կործանարար են, իսկ երբեմն էլ՝ հանցավոր: Անդրկովկասում, Ֆերգանայի մարզում, Նովի Ուզենում տեղի ունեցած իրադարձությունները թվում է, թե շատ քչերի մեջ են կասկածներ թողնում այդ առթիվ:

Խորհրդային օրենքները պատիժ են նախատեսում ազգային երկպառակության բորբոքման համար, և իրավապահ մարմինները պետք է ապահովեն դրանց անվերապահ կատարումը: Այլև չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ ազգային հողի վրա կատարվող շատ հանցանքներ փաստորեն անպատիժ են մնում արդարադատության մեխանիզմում եղած բացերի պատճառով: Ժամանակն է նաև օրենքի պարզ,



ծանրակշիռ լեզվով ասել այն պայմանների մասին, որոնց դեպքում կարող են ու պետք է դատական կարգով արգելվեն ու արձակվեն նացիոնալիստական, շովինիստական, մյուս ծայրահեղական կազմակերպությունները **(Ծափահարություններ)**: Կասեմ որոշակիորեն. մենք չենք շեղվի բոլոր պրոբլեմները քաղաքական մեթոդներով լուծելու ճանապարհից, բայց այնտեղ, որտեղ դա թելադրվում է իրավիճակի սրությամբ, որտեղ սպառնալիք է առաջացել մարդկանց կյանքի ու անվտանգության համար, կգործենք վճռականորեն՝ օգտագործելով խորհրդային օրենքների ամբողջ ուժը **(Ծափահարություններ)**:

Այս առնչությամբ ուզում եմ հատկապես անդրադառնալ ԼՂԻՄ-ի կապակցությամբ ներկայումս Հայաստանում և Ադրբեջանում ստեղծված իրավիճակին: Այստեղ բռնկած կոնֆլիկտը տևական և վերին աստիճանի սուր բնույթ է ստացել: Ընկերները գիտեն, որ մենք հենց սկզբից ձգտում էինք այն կարգավորել քաղաքական միջոցներով, որպեսզի ամենից առաջ թույլ չտանք ինքնավար մարզի, երկու հանրապետությունների բնակչության նորմալ կյանքի ու աշխատանքի համար բարդացումներ: ԽՄԿԿ Կենտկոմում բազմաթիվ հանդիպումներ են տեղի ունեցել Հայաստանի և Ադրբեջանի ղեկավարության, հանրապետությունների գերագույն խորհուրդների դեպուտատների, աշխատավորության ներկայացուցիչների հետ: Ընդունվել է ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի մասշտաբային որոշում՝ նպատակամղված մարզի սոցիալական պրոբլեմների լուծմանը: Ավելի ուշ ստեղծվեց ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտե: Քանիցս այնտեղ են ուղարկվել հեղինակավոր հանձնաժողովներ, այդ թվում ժողովրդական դեպուտատների համագումարի հանձնաժողովը:

Ցավոք, այդ բոլոր միջոցառումները ցանկալի արդյունքներ չեն տվել: Ազգային երկպառակությունն այն աստիճան է բորբոքվել, որ իրադրության զարգացումը կարող է անկանխագուշակելի հետևանքներ ունենալ: Իրենց հարազատ վայրերը լքած տասնյակ հազարավոր մարդիկ, տրանսպորտի աշխատանքի խափանումներ, անվերջանալի գործադուլներ և ուղղակի ընդհարումներ՝ այսպիսին է այսօրվա իրավիճակը: Կասեմ ուղղակի. մենք կանգնած ենք վճռական միջոցներ ձեռնարկելու անհրաժեշտության առջև, չենք կարող թույլ տալ անարխիա, առավել ևս՝ արյունահեղություն: Մենք պարտավոր ենք ամեն ինչ անել նորմալ պայմաններ ստեղծելու մարդկանց կյանքի համար, վստահություն ձեռք բերելու ապագայի հանդեպ:

Եվ կարծում եմ, որ մենք պետք է պլենումի անունից դիմենք Հայաստանի, Ադրբեջանի ղեկավարությանը, աշխատավորությանը՝ կոչ անելով կանգ առնել, հասկանալ, որ կոնֆլիկտի հետագա բորբոքումը սպառնում է կործանարար հետևանքներ ունենալ երկու ժողովուրդների համար, որոնք դարեր շարունակ ապրել են կողք-կողքի և այսուհետև էլ պետք է ապրեն **(Ծափահարություններ)**:

Ընկերներ, ֆեդերացիայի արմատական վերափոխումների ապահովումը անխզելիորեն կապված է տնտեսական հարաբերությունների և ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման հետ: Այս պրոբլեմատիկան բավական լրիվ լուսաբանված է պլատֆորմում: Չկանխորոշելով դրա քննարկման արդյունքները, կուզենայի մի քանի նկատառում հայտնել այդ առթիվ:

Ամենից առաջ մենք ոչ մի պարագայում ընթացիկ դժվարությունների ճնշման տակ չպիտի մոլորվենք ապագայի համար սկզբունքային տնտեսական որոշումների մշակման գործում: Այդ որոշումները պետք է հաշվի առնեն ինչպես աշխատանքի բաժանման հիման վրա ինտեգրացման զարգացման օբյեկտիվ պահանջմունքը, այնպես էլ տնտեսական ինքնուրույնության անհրաժեշտությունը:

Արդի պայմաններում չափազանց վտանգավոր կլինեին ավտարկիայի միտումները, մեկուսանալու, ուրիշներից անջրպետվելու՝ համեմատաբար բարգավաճող հանրապետությունների ու մարզերի փորձերը: Դա կարող է շատ բացասական հետևանքներ ունենալ նրանց համար, ովքեր կբռնեին այդ ուղին:

Մենք պետք է Կենտրոնական կոմիտեի պլենումում Խորհրդային Միության բոլոր ժողովուրդների դեմ հանդիման մեկ անգամ էլ այդ բանն ասենք, որպեսզի նրանք չենթարկվեն ամբոխավարներին, որոնք թաքցնում են, թե ինչի կարող է հասցնել անկախության, անջատման և այլ «հանելի սոուսով» մատուցվող իրենց լոզունգների իրացումը: Դա անպատասխանատու խաղ է ժողովրդի բախտի հետ: Առհասարակ ով հանձն կառնի բաժանել, վերաձևել մեր ներկայիս միահյուսված, բոլոր տնտեսական, քաղաքական, սոցիալական, հոգևոր, մարդկային, ընտանեկան կապերով շաղկապված հասարակությունը: Միայն արկածախնդիրները կարող են այդ բանի կոչ անել **(Ծափահարություններ)**:

Այսօր գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առաջադիմության հիմքը կազմում են աշխատանքի ռացիոնալ բաժանումը, ինտեգրացումը, ամբողջ հասարակության կուտակած պոտենցիալի օգտագործումը: Եվ դա վկայում է ոչ միայն մեր փորձը, այլև ամբողջ համաշխարհային պրակտիկան:

Մեր պայմաններում բոլոր հանրապետությունների ու ռեգիոնների արդյունավետ զարգացման համար սկզբունքային նշանակություն է ստանում նրանց ավելի օրգանական ներգրավումը աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման մեջ: Որոշ ընկերներ, ճիշտ է, գանգատվում են, որ մեզ մոտ լավ չի դրված հենց աշխատանքի բաժանմանն ու գնագոյացմանն առնչվող գործը, ցածր է պայմանագրային պարտավորությունների կատարման կարգապահությունը: Այդ ամենն այդպես է: Բայց մի՞թե կարելի է այսօր, երբ մենք էկոնոմիկայի զարգացումը նպատակամղում ենք հեռանկարին, սեփական կանխատեսումների մեջ հենվել միայն անցյալից մեզ ժառանգություն մնացած համակարգի թերությունների արձանագրման վրա:

Դրանք կարող են վերացվել ու կվերացվեն տնտեսական ռեֆորմի ծավալման շնորհիվ, ինչով և հիմա մենք զբաղված ենք: Հենց այս մասին ամենից առաջ պետք է խոսք գնա՝ ինչպես իրականացնենք այդ ռեֆորմը, որ վերացնենք այն ամենը, ինչ մտահոգություն է պատճառում, ինչ վնաս է հասցրել ամբողջ երկրի ու առանձին ռեգիոնների էկոնոմիկայի զարգացմանը:

Մենք լավ գիտենք, որ անսահմանորեն կենտրոնացված վարչահրամայական համակարգի շրջանակներում կիրառվում էր ոչ միայն առաջավոր ձեռնարկություններից միջոցները անհիմն կերպով հետ մնացող ձեռնարկություններին տալը: Այդ նույն բանը տեղի էր ունենում նաև երկրի տնտեսական ռեգիոնների միջև: Եթե անկեղծորեն խոսենք, ապա ոմանցից միջոցների առգրավման հաշվին ծածկվում էին մյուսների անտնտեսվարությունն ու անգործունակությունը: Դա բացահայտորեն հակասում էր սոցիալիզմի հիմնական սկզբունքին, ծնում խնամառուական տրամադրություններ:

Պլատֆորմում նախատեսված միջոցառումների իրականացումը թույլ կտա վերացնել նման ոչ նորմալ երևույթները, որոնք խարխլում են շահագրգռությունը տնտեսական գործունեության արդյունքների հարցում: Մենք արդեն կանգնել ենք այդ ուղու վրա, պաշտպանելով Բելոռուսիայի, Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի համապատասխան նախաձեռնությունները: Նույնանման առաջարկություններ են պատրաստվում մյուս հանրապետությունների ու ռեգիոնների գծով: Նման մոտեցումը ամենքին հնարավորություն կտա հանդես բերել ձեռներեցություն, կխթանի տնտեսական արդյունավետության աճը: Կաճեն իշխանության հանրապետական ու տեղական մարմինների տրամադրության տակ դրվող միջոցները և դրանք կարող են օգտագործվել սոցիալական պրոբլեմների լուծման համար: Հանրապետության, ռեգիոնի տնտեսական վիճակը կախման մեջ կդրվի տնտեսական գործունեության արդյունքներից:

Ընդգծելով տնտեսական ինքնուրույնության սկզբունքի մեջ նշանակությունը, պետք է այն դիտել ձեռնարկությունների լրիվ տնտհաշվարկի անցնելու հետ օրգանական կապի մեջ: Առանձնապես կարևոր է, որ սա հասկանանք ամենքս, ընկերներ, որովհետև այս գործում դեռ շատ խառնաշփոթություն կա: Պետք է ուղղակի ասել, իսկական ինքնուրույնություն անհնար է ապահովել առանց այդ արմատական խնդրի լուծման: Առավել ևս չի կարելի թույլ տալ, որ կենտրոնի թելադրանքը պարզապես տեղափոխվի մի մակարդակից մյուսը: Այդ դեպքում ընդհանուր միութենական շուկան, որը մենք ուզում ենք կատարելագործել և որտեղ գլխավոր գործող անձինք պետք է լինեն տնտհաշվարկային ձեռնարկությունները, բաժան-բաժան կլիներ ռեգիոնալ ցանկապատերով:

Մի՞թե սա այն բանն է, ինչի մենք ձգտում ենք: Չէ որ այդ դեպքում հարկ կլինի ծագող հարցերը լուծել արդեն ոչ թե մի կենտրոնում, այլ 15 կամ հարյուրավոր կենտրոններում:

Վերջերս մենք հանդիպում ունեցանք Մերձբալթիկայի ընկերների հետ և խոսում էինք այն մասին, թե ինչ բան է ՌԱՖ-ը: Դա լավ ձեռնարկություն է, թողարկում է պետքական մեքենա, որը նաև արտասահման է առաքվում, իսկ ձեռնարկությունը դետալներ է ստանում երկրի մի քանի հարյուր գործարաններից: Եթե ՌԱՖ-ում մտադրվել են ինչ-որ բան կատարելագործել տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար, ուրեմն պետք է ամենքին ներգրավել:

Ուստի ձեռնարկությունների տնտհաշվարկը տնտեսական ինքնուրույնության կենտրոնական հարցն է, դրանից կշահեն թե հանրապետությունը և թե տեղական





խորհուրդները, որոնք նորմատիվներով ձեռնարկություններից մասհանումներ կստանան: Այլ կերպ ասած, մեզ համար կենսականորեն անհրաժեշտ է էկոնոմիկայի հետագա ապակենտրոնացում: Եվ նույնքան էլ հրամայական պահանջ է բազային ճյուղերի, արտադրական ենթակառուցվածքի զարգացման, հիմնարար գիտական հետազոտությունների կազմակերպման, երկրի հուսալի պաշտպանունակության պահպանման, խոշոր էկոլոգիական պրոբլեմների լուծման, տարերային աղետների հետևանքների հաղթահարման, միջազգային էկոնոմիկային ու քաղաքականությանը երկրի մասնակցության հետ կապված համապետական ծրագրերի իրականացումը:

Չնայած «հավասարեցման» քաղաքականության խոշոր արդյունքներին, այդ գործում դեռ մնում են լուրջ պրոբլեմներ: Կուզենայի հետևյալ հարցը առաջադրել. հարկ չկա՞, արդյոք, որ մենք ռեգիոնալ տնտհաշվարկի անցնելիս մշակենք տնտեսագիտական լծակների ու խթանների այնպիսի համակարգ, որը թույլ տար, արդյունավետորեն օգտագործելով պետական բյուջեի միջոցները, նպատակամետ կերպով անցկացնել հետ մնացող շրջանների կենսական պրոբլեմների լուծման գիծ: Կարծում ենք, արդեն այժմ պետք է նման հանձնարարություն տալ կառավարությանը, քանի որ այդ աշխատանքի իրականացումը սերտորեն կապված է հանրապետություններին տնտեսական ինքնուրույնություն տալու հետ:

Ազգամիջյան հարաբերությունների տնտեսական կողմերի շուրջը ծավալվող դիսկուսիաների ընթացքում գրեթե միշտ ուշադրության կենտրոնում են հայտնվում սեփականության հարցերը:

Սոցիալիստական սեփականության կատարելագործումը վերակառուցման հիմնական հարցն է: Ուղղակի կասենք, այդ բնագավառում հասունացած փոփոխությունները չկատարելով, մենք չենք կարողանա հաղթահարել աշխատավորների օտարումը արտադրամիջոցներից, լրիվ չափով վերածնել շահագրգռությունը բարեխիղճ ու լիարժեք աշխատանքի հարցում, խթանել տնտեսական նախաձեռնությունն ու ձեռներեցությունը: Այդ հարցի լուծված չլինելը այժմ անդրադառնում է պրակտիկ գործերի վրա, ներառյալ իշխանության միութենական, հանրապետական ու տեղական մարմինների ֆունկցիաների օպտիմալ սահմանազատման խնդիրները:

Մենք դեռ պետք է լայնորեն քննարկենք այդ պրոբլեմը: Հիմա ես կուզենայի ասել ահա թե ինչ: Ռեգիոնալ տնտհաշվարկի, տնտեսական ինքնուրույնության անցնելու կապակցությամբ մեծ նշանակություն է ստացել այն հարցը, թե ինչպես ռացիոնալ կերպով, առավել մեծ արդյունավետությամբ օգտագործենք երկրում ստեղծված ժողովրդատնտեսական պոտենցիալը: Դիսկուսիաների ընթացքում, որոնք այժմ լայնորեն տեղի են ունենում հասարակության մեջ, երբեմն արվում են այնպիսի առաջարկներ, որոնք քաղաքականության հիմքում դրվելու դեպքում կարող են մի ծայրահեղությունից մյուսը հրել:

Իսկապես, մենք ուզում ենք ազատվել չափից ավելի մեծ համակենտրոնացումից, հանրապետությունների, ռեգիոնների նկատմամբ գերատեսչությունների կամայականությունից, ձգտում ենք գտնել այնպիսի լուծումներ, որոնք ապահովեին նրանց տնտեսական ինքնուրույնությունը, օգնեին թոթափել արդյունավետ աշխատանքին խանգարող կապանքները: Այս ամենը ճիշտ է, բնական հակազդեցություն է կենտրոնական մինիստրությունների ու գերատեսչությունների բռնացմանը, ինչից հեծում են բոլոր հանրապետություններն ու ռեգիոնները նաև հիմա: Հենց այդ բռնացման վրա էր դիմանում տնտեսավարման վարչահրամայական համակարգը, որը, ինչպես ամենքիս համար պարզ է, այժմ սպառել է իրեն:

Բայց պակաս կարևոր չէ նկատի ունենալ, որ, անցնելով տնտեսական կյանքի նոր ձևերին, հարկավոր է լրիվ չափով օգտագործել այն ամեն դրականը, ինչ ստեղծվել էր խորհրդային ֆեդերացիայի՝ որպես միասնական պետության, զարգացման նախորդ փուլերում: Մեզ մոտ ստեղծվել են կոմպլեքսային փոխկապակցված էներգետիկ բազա և էներգամատակարարման համակարգ: Դա մեր էկոնոմիկայի հիմքն է, արտադրական կոլեկտիվների վստահ աշխատանքի, բոլոր հանրապետություններում կենցաղային հարցերի լուծման հիմքը: Նման մոտեցումներով են զարգացել տրանսպորտի ու կապի համակարգը, արտադրական ենթակառուցվածքի մյուս ոչ պակաս կարևոր տարրերը, հաշվի առնելով ընդհանուր միութենական ու ռեգիոնալ խնդիրները:

Ուրեմն ինչ, ընկերներ, մենք հիմա այդ ամենը պետք է ավերե՞նք: Դա հիշեցնում է ցարի կողմից Մոսկվայի ու Պետերբուրգի միջև կառուցված երկաթգիծը ավերելու «հեղափոխական» լոզունգը:

Պետք է շատ մանրակրկիտ կերպով վերլուծել առաջարկվող կոնցեպցիաները և ամենից առաջ կանխատեսել դրանց իրացման բոլոր հավանական հետևանքները: Մշակելով նոր տնտեսական քաղաքականություն, որը համապատասխանում է վերակառուցման, ֆեդերացիայի զարգացման, նոր բովանդակությամբ դրա հարստացման խնդիրներին ու նպատակներին, մենք պետք է ամեն ինչ անենք կշռադատված, սառը դատողությամբ և ոչ թե էմոցիաների, ամբիցիաների ու վերացական սխեմաների հիման վրա: Այս չափազանց կարևոր գործում, որը շոշափում է ժողովուրդների կենսական շահերը, ոչ մի դեպքում չի կարելի, ես կասեի, խառնաշփոթություն ստեղծել, ընդունել հապճեպ որոշումներ: Դա անուղղելի հետևանքներ կունենար: Համենայն դեպս չի կարելի որոշումներ ընդունել ոտքերի դոփյունների և «ծափերի» տակ, որ կազմակերպում են հայտնի հոսանքները:

Եթե մենք անցյալի մեջ տեսնենք միայն վրիպումներ ու բացթողումներ, չտեսնենք տասնամյակների ընթացքում ձևավորված իրողությունները, մի՞թե կարող ենք առհասարակ խոսել լուրջ քաղաքականության մասին: Չէ որ սա բուհական ամբիոն չէ, որտեղ ինչ ուզենաս կարող ես ասել: Ես չէի ուզենա, որ սա ընկալվեր որպես գիտնականների նկատմամբ ինչ-որ բացասական վերաբերմունքի, անվստահության արտահայտություն: Դա բացառված է: Առանց գիտության, առանց նրա պատասխանատու ավանդի մենք ոչինչ չենք անի և ոչնչից գլուխ չենք հանի: Բայց ես չէի ուզենա, որ անհրաժեշտ մարդիկ ոտքերի դոփյունով մեզ քաղաքական կոնցեպցիաներ պարտադրեն: **(Ծափահարություններ):**

Այլ կերպ ասած, ես կուզենայի ընդգծել, որ մեր բոլոր մոտեցումներում և որոշումներում պետք է ներկա լինեն մեծագույն ձեռնհասությունն ու մեծագույն պատասխանատվությունը: Եվ, իհարկե, մենք պետք է հաշվի առնենք երկրում տնտեսական հարաբերությունների վերակառուցման կապակցությամբ արմատապես փոխվող իրավիճակը: Ներկայումս առաջնահերթ կարգով Գերագույն խորհրդի քննարկմանն են ներկայացվում օրենքները սեփականության մասին, հողի մասին, վարձակալության և վարձակալական հարաբերությունների, հանրապետությունների տնտեսական ինքնուրույնության, տեղական տնտեսության և ինքնակառավարման, միասնական հարկային համակարգի մասին: Ամբողջությամբ վերցրած դրանք նշանակում են արտադրական հարաբերությունների արմատական փոփոխում: Ես կասեի, ընկերներ, որ խոսքը վերաբերում է մեր հեղափոխության նոր փուլին:

Եվ այդ պայմաններում ազգային հարցը անհնար է քննության առնել երկրում ծավալվող սոցիալ-տնտեսական խոր պրոցեսներից կտրված:

Մենք ճիշտ ուղու վրա ենք ու պետք է հաստատակամ լինենք, պաշտպանելով վերակառուցման քաղաքականության գլխավոր ուղղությունները: Մեզ ուզում են համոզել, թե մենք իբր չենք կարող երկրում ծագած պրոբլեմները լուծել առանց էկոնոմիկայի կապիտալիզմացման: Իսկ մյուս կողմից, ես կասեի՝ աջից, վերակառուցման ամբողջ քաղաքականությունը ուզում են ներկայացնել որպես համարյա թե մի այնպիսի ձեռնարկում, որ Արևմուտքին հաջողվել է մեզ պարտադրել: Սա անհեթեթություն է: Ու եկեք ոչ թե նյարդայնանանք, այլ զարգացնենք վերակառուցման գլխավոր ուղղությունը՝ բացահայտենք սոցիալիզմի, դեմոկրատիայի պոտենցիալը, ֆեդերացիայի պոտենցիալը, բացահայտենք մեր հասարակության հոգևոր, ինտելեկտուալ պոտենցիալը, նոր շունչ հաղորդենք սոցիալիզմին: Ահա թե ինչի մասին է խոսքը: **(Ծափահարություններ):**

Այսպիսով, տնտեսագիտական գործոնները, ինչպես որ քաղաքականները, համոզիչ կերպով խոսում են մի կողմից հանրապետությունների ու ռեգիոնների տնտեսական ինքնուրույնության առավելագույն ամրապնդման հիման վրա խորհրդային ֆեդերացիայի վերափոխման ու հետագա զարգացման օգտին, մյուս կողմից՝ ընդհանուր ժողովրդատնտեսական համալիրի ամրապնդման օգտին:

Քննության առնելով խորհրդային ֆեդերացիայի պոտենցիալի հետագա բացահայտման հետ կապված հարցերի ամբողջ կոմպլեքսը, մենք պետք է առանձնակի ուշադրությամբ ու նրբազգացությամբ մոտենանք այն ամենին, ինչ վերաբերում է հոգևոր ոլորտին: Սա վերաբերում է գիտությանը, մշակույթին, ավանդույթներին և ուրիշ շատ բանի, ինչով հարուստ են մեր ժողովուրդները: Բայց այսօր ես կուզենայի խոսել լեզվի պրոբլեմի մասին, որը սուր բնույթ է ստացել: Ինչպիսի՞ն պիտի լինի մեր քաղաքականությունը այս բնագավառում:

Ամենից առաջ մենք ելնում ենք այն բանից, որ բոլոր հանրապետությունների հիմնական բնակչությունը անտարակույս լիակատար իրավունք ունի իր լեզուն հաստատելու որպես պետական, այլ կերպ ասած, ստեղծելու իր լեզվի պահպանման ու զարգացման համար իրավական պայմաններ: Սա, ընկերներ, միայն իրավաբանական հարց չէ: Սա քաղաքական հարց է, քանի որ խոսքը վերաբերում է մեր ժողովուրդների ինքնազգացողությանը, իրենց ազգային ինքնատիպությունը պահպանելու նրանց հասկանալի ձգտմանը:

Միևնույն ժամանակ մեր երկրի բոլոր ժողովուրդները կենսականորեն շահագրգռված են ունենալու ազգամիջյան հաղորդակցման միջոց, որպիսին օբյեկտիվ պատճառների բերումով մեր պայմաններում դարձել է ռուսաց լեզուն:

Իրականությունն այն է, որ այդ լեզվի շնորհիվ բոլոր խորհրդային մարդիկ հնարավորություն են ստանում անհամեմատ ավելի լայնորեն և լիովին գործադրել իրենց ուժերն ու գիտելիքները, հաղորդվել հայրենական և համաշխարհային գիտության ու մշակույթի արժեքներին: Այն նյութերից, որ ձեր ձեռքին են, կարելի է դատել, որ պլատֆորմի քննարկմանը մասնակցած և մեր տարբեր ազգեր ներկայացնող շատ ընկերներ նպատակահարմար են համարում ռուսաց լեզվին ընդհանուր պետական կարգավիճակ տալ ԽՍՀՄ-ի մասշտաբով: **(Ծափահարություններ):**

Այս առաջարկությունը մեզ թվում է ուշադրության և իշխանության բարձրագույն մարմինների պաշտպանությանն արժանի: Դրա իրականացումը բնավ չի ոտնահարի որևէ ազգության իրավունքները և միևնույն ժամանակ լուրջ իրավական հիմք կտար մեր բազմազգ երկրում ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու մշակութային շփումը, նրանց համատեղ ստեղծագործական գործունեությունը զարգացնելու, ինչպես նաև միջազգային կյանքին ակտիվորեն մասնակցելու համար:

Ներկայումս մեզ մոտ որոշ տեղերում շեղումներ են նկատվում և տեսեք, թե դա ինչի է հասցրել:

Շարունակելով լեզվական խնդիրների քննարկումը, մենք պարտավոր ենք ճանաչել բոլոր ազգային փոքրամասնությունների մայրենի լեզվի կիրառման իրավունքը: Դա վերաբերում է տարբեր հանրապետություններում ապրող տասնյակ ազգությունների մարդկանց: Վերջին ժամանակներս մենք տագնապով ու ցավով էինք հետևում, թե լեզվական խնդիրները ինչպես դարձան որոշ ռեգիոններում մարդկանց բաժանման, տարանջատման պատճառ, բազմօրյա միտինգների, ցույցերի, գործադուլների առիթ, որոնք ծանր անդրադարձան տնտեսության և բնակչության կենսապայմանների վրա: Կուսակցական և հասարակական կազմակերպությունների, պետական մարմինների, ստեղծագործական միությունների, իշխանությամբ օժտված և ուղեղների վրա ազդեցություն ունեցող բոլոր անձանց պարտքն է իրենցից կախված ամեն ինչ անել վերջ դնելու փոխադարձ վիրավորանքների, հավակնությունների և կտրական պահանջների այդ վտանգավոր հորձանապտույտին: Թույլ տվեք ինձ վստահություն հայտնել, որ առաջարկվածի հիման վրա, որը համապատասխանում է բոլոր դեմոկրատական ավանդույթներին ու արդի աշխարհում գոյություն ունեցող իրավական նորմերին, այդ խնդիրները կկարգավորվեն, և մեր բազմազգ հայրենիքի բոլոր լեզուները ասպարեզ կստանան իրենց զարգացման համար: **(Ծափահարություններ):**

Այսօր մեր կողմից քննարկվող խնդրին հարում է ազգամիջյան հարաբերություններում եկեղեցու ունեցած դերի հարցը: Հայտնի է, որ անցյալում տարբեր ազգությունների մարդկանց խոշոր ընդհարումները, թշնամանքն ու գժտությունները մեծապես կրոնական անհանդուրժողության հետևանք էին: Այդ գործոնը այժմ էլ է հաճախ իրեն զգալ տալիս: Մենք գնահատում ենք այն փաստը, որ ուղղափառ, մուսուլմանական և մյուս եկեղեցիները խաղաղարար դիրք են բռնում, և հուսով ենք, որ դրանք կօգտագործեն իրենց ազդեցությունը, իրենց ուժերի ու հնարավորությունների չափով կնպաստեն ծագած ազգամիջյան կոնֆլիկտների կանխմանն ու հաղթահարմանը:

Այսօր եկեղեցիներին հնարավորություն է ընձեռվում նորմալ հասարակական պայմաններում իրականացնել իրենց գործունեությունը՝ լիովին սահմանադրական սկզբունքներին համապատասխան: Դա առանձնապես ակնբախորեն դրսևորվեց այն բանում, որ նրանց երևելի ներկայացուցիչներն ընտրվեցին ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներ: Խղճի ազատության մասին նախապատրաստվող օրինագիծը պետք է կարգավորի արդի պայմաններում եկեղեցական կազմակերպությունների վիճակի ու գործունեության հետ կապված խնդիրների ողջ համալիրը:

Ընկերնե՛ր: Հուսով եմ, որ ամբողջ ասվածը թույլ կտա ավելի լավ հասկանալ ազգային հարցի վերաբերյալ ԽՄԿԿ-ի առաջարկած պլատֆորմի իմաստն ու նշանակությունը: Մեր կուսակցությունը հանդես է գալիս խոշոր և ուժեղ ֆեդերատիվ

պետության օգտին, համոզված լինելով, որ դա բխում է Խորհրդային Միության մեջ միավորված բոլոր ժողովուրդների շահերից: (Ծափահարություններ):

Այդպիսին էր Լենինի դիրքորոշումը, այդ դիրքորոշմանն ենք մենք հետևում նաև այժմ:

Կարևոր է հստակորեն պատկերացնել մեր Միության ամրապնդման ու զարգացման բոլոր՝ տնտեսական, քաղաքական, հոգևոր, եթե ուզում եք, բարոյական հիմքերը: Հարցն այսպես դնենք. դա ի՞նչ է տալիս հանրապետություններին:

Նախ և առաջ պատկանելություն արդի հզորագույն պետություններից մեկին, որն ունի հսկայական բնապաշարներ, զարգացած ժողովրդատնտեսական համալիր, գիտական գիտելիքների զինանոց, տեխնիկական հնարավորություններ ու հարուստ մշակույթ, որն ընդունակ է հուսալիորեն ապահովել իր անվտանգությունը: ԽՍՀՄ-ի կազմում յուրաքանչյուր ժողովուրդ հնարավորություն է ստանում մասնակցելու ընդհանուր հոգևոր արժեքների ձևավորմանն ու զարգացմանը, հաղորդակցվելու դրանց, իսկ դրանց միջոցով իր մասին հայտարարելու համամիութենական ու համաշխարհային մասշտաբով: Այնուհետև: Միությանը իրենց պատկանելության շնորհիվ բոլոր ժողովուրդները հնարավորություն են ստանում լայնորեն մասնակցելու միջազգային հարաբերություններին, եռանդագին ազդելու համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա: Միութենական հանրապետությունների իրավունքների իրականացման մեխանիզմը, որ վերաբերում է նրանց մասնակցությանը միջազգային գործունեությունը, պետք է մշակվի՝ հաշվի առնելով ներկայիս պայմանները:

Սրանք մշտական գործոններ են: Բայց կա նաև մի գործոն, որը կապված է ներկայիս պատմական պահի հետ: Խորհրդային սոցիալիստական հասարակության հեղափոխական նորացումը գլխավոր փաստարկն է հօգուտ մեր Միության ամրապնդման: Հենց վերակառուցումը մեզ հանգեցրեց խորհրդային ֆեդերացիայի վերափոխմանը որպես երկրի դեմոկրատացման ու վերածննդման պրոցեսների կարևոր բաղկացուցիչ մասի: Եվ միայն վերակառուցման ուղիներում, ես դրանում համոզված եմ, կարող են հաջողությամբ լուծվել ժողովուրդների զարգացման և ամբողջությամբ վերցրած ազգային հարաբերությունների բոլոր սուր ու բարդ խնդիրները:

Վերջապես, ընկերներ, կանգ կառնեմ մեր ֆեդերացիայի վերափոխման պայմաններում ԽՄԿԿ-ի ունեցած դերի վրա: Մեր բազմազգ պետության ճակատագիրը վճռականորեն կախված է այն բանից, թե կուսակցությունն ինչպես կգործի նոր իրադրության մեջ:

Մեր կուսակցությունը հենց սկզբից կառուցվել է որպես համախոհների կազմակերպություն, ոգեշնչված պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով: Նրա կազմավորման պրոցեսը բնավ էլ դյուրին չի եղել: Լենինի ղեկավարությամբ կուսակցությունը ձևավորվեց որպես միասնական կազմակերպություն՝ ընդհանուր ծրագրով և նրա բոլոր անդամների համար պարտադիր կանոնադրությամբ, կառուցվելով դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա:

Դրա հետ մեկտեղ պետք է ընդգծել, որ կուսակցության մեջ ինտերնացիոնալիստական սկզբունքը բնավ չէր նշանակում նրա այս կամ այն ազգային ջոկատի շահերի և առանձնահատկությունների որևէ անտեսում: Դա ձեռք էր բերվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի ճիշտ մեկնաբանման շնորհիվ: Հետագայում, սակայն, այն սկսեց մեկնաբանվել խեղաթյուրված կերպով, ինչը հանգեցրեց շեղվածքի հօգուտ ցենտրալիզմի, ի վնաս դեմոկրատիայի և չէր կարող բացասաբար չանդրադառնալ կուսակցական կազմակերպությունների վիճակի ու պրակտիկ գործունեության վրա, այդ թվում հանրապետություններում և մյուս ազգային կազմավորումներում:

Այսօր մենք պետք է լիովին վերականգնենք դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնումը, որը ենթադրում է բոլոր կուսակցական կազմակերպությունների եռանդուն, լիարյուն կյանք, դրանց իրական ինքնուրույնության կազմակերպման, կադրային քաղաքականության հարցերում և գործունեության այլ ոլորտներում: Եվ ամենևին ոչ թե զորանոցային կարգապահություն, ոչ թե անառարկելի հնազանդություն, այլ գործողությունների միասնություն, որը հիմնված է քաղաքական ու գաղափարական ընդհանուր դիրքորոշումների մշակման վրա:

Պլատֆորմում շարադրված են որոշ գործնական քայլեր հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների ինքնուրույնությունը ընդլայնելու ուղղությամբ, ներառյալ իրենց կազմակերպության հարցերը ինքնուրույն լուծելու, կուսակցական մարմինների կառուցվածքը որոշելու, քաղաքական որոշումներ կայացնելու նրանց իրավունքը: Ֆեդերատիվ կառուցվածքը նոր բովանդակությամբ հարստացնելը



չի կարող չանդրադառնալ հանրապետական կուսակցական կազմակերպությունների դերի վրա: Դրանք պետք է հնարավորություն ունենան ընդունելու գործողությունների իրենց ծրագրերը ԽՄԿԿ-ի ծրագրի շրջանակներում:

Ձեզ հետ միասին մենք որոշում ընդունեցինք գումարելու կուսակցության հերթական XXVIII համագումարը, որի օրակարգում այլ հարցերի թվում դրված են ԽՄԿԿ-ի նոր կանոնադրության մշակումն ու ընդունումը: Ակներև է, որ հանրապետությունների կոմկուսների գործունեության հարցերը, հաշվի առնելով ֆեդերացիայի վերափոխումները, իրենց պատշաճ արտացոլումը կգտնեն նրանում:

Ձեռնարկելով այս բոլոր հասունացած միջոցառումները, մենք պետք է միևնույն ժամանակ վճռականորեն արտահայտվենք ԽՄԿԿ-ի ֆեդերացման դեմ: Ասենք ուղղակի, որ դա կնշանակեր մեր կուսակցության վերջը այն ձևով, որպիսին այն հիմնադրվել էր Լենինի կողմից, անուղղելի վնաս կհասցներ վերակառուցմանը, սոցիալիզմի ամբողջ գործին: Նա, ով կընթանար այդ ուղիով, ծանրագույն պատասխանատվություն կստանձներ թե կուսակցության, թե ժողովրդի հանդեպ:

Աջակցության արժանի առաջարկությունների թվում կնշեմ ազգային քաղաքականության և ազգային հարաբերությունների հարցերի առնչությամբ ԽՄԿԿ Կենտկոմի հանձնաժողովի, համանման հանձնաժողովների ստեղծումը հանրապետական կուսակցական կազմակերպությունների կենտրոնական կոմիտեներում, կուսակցության մարզկոմներում և քաղկոմներում, հասկանալի է՝ այնտեղ, որտեղ դա թելադրվում է բնակչության կազմով, ազգային խնդիրները մշտապես տեսադաշտում պահելու անհրաժեշտությամբ: Հավանաբար, իրավացի են այն ընկերները, որոնց կարծիքով ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղարներից մեկին պետք է հանձնարարվի զբաղվել հատկապես այդ հարցերով:

Կուսակցության վերակառուցումը, որի կարևոր ուղենիշը կլինի ԽՄԿԿ XXVIII համագումարը, թույլ կտա իրականացնել այն անչափ պատասխանատու խնդիրները, որ ծառացել են մեր հասարակության զարգացման արդի փուլում: Եվ, իհարկե, ընկերներ, այսօր հսկայական նշանակություն է ստանում կուսակցության անդամների դիրքորոշումը: Տարբեր ռեգիոնների իրադարձությունները ցույց տվեցին, որ նրանց մի մասը տրվում է գրգռված ազգային հույզերի տարերքին, հանդես չի գալիս ազգայնական դրսևորումների դեմ, կամ, որ էլ ավելի վատ է, ինքն է ներքաշվում դրանց մեջ: Կուսակցությունը, նրա կազմակերպությունները չեն կարող և չպետք է հաշտվեն դրա հետ: Ինտերնացիոնալիզմը եղել է և մնում է մեր աշխարհայացքի կարևորագույն տարրը, կոմունիստների գաղափարական հավատամքը:

Վերջում կկամենայի ասել հետևյալը: Բոլորս հասկանում ենք, թե ինչքան բարդ է ազգային հարցը, թե ինչ սուր խնդիրներ է նա առաջադրում: Դա փափկանկատ, նուրբ գործ է, որը պահանջում է հարգալից վերաբերմունք, համբերություն, զսպվածություն: Մենք հավաքվել ենք պլենումի, որպեսզի հենց այս ոգով քննարկենք կուտակված հարցերը, հաշվի առնելով դժվարին ազգային խնդիրների նպատակահարմար լուծում գտնելու մեր ժողովուրդների և ողջ հասարակության կարծիքներն ու տրամադրությունները:

Պետք է ամեն ինչ անել, որ մեր պլենումը շրջադարձային նշանակություն ունենա, նախադրյալներ ստեղծի երկրի իրադրության առողջացման, մեր ֆեդերացիայի հետագա զարգացման համար՝ ի շահ բոլոր խորհրդային ժողովուրդների: **(Ծափահարություններ):**

# ԽՄԿԿ ՀԵՐԹԱԿԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ՄԱՍԻՆ

## *ԽՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1989 ԹՎԱԿԱՆԻ ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 19-Ի*

## *ՈՐՈՇՈՒՄԸ*

I. ԽՄԿԿ հերթական XXVIII համագումարը հրավիրել 1990 թվականի հոկտեմբերին:

II. Հաստատել հետևյալ օրակարգը.

1. Վերակառուցման ընթացքը և կուսակցության խնդիրները. ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը:
2. ԽՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:
3. ԽՄԿԿ կանոնադրության մասին:
4. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:

III. Քաղբյուրոյին հանձնարարել առաջարկություններ նախապատրաստելու նախահամագումարյան հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացման ժամկետների, ներկայացուցչության նորմայի և համագումարի պատգամավորների ընտրության կարգի վերաբերյալ և դրանք ներկայացնել Կենտկոմի պլենումի քննարկմանը:

# ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի 1989 թվականի սեպտեմբերի 20-ի

## ՈՐՈՇՈՒՄԸ

## *ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

Քննարկելով ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը և քննության առնելով «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին» ԽՄԿԿ պլատֆորմի նախագիծը, հաշվի առնելով կուսակցության և ժողովրդի մեջ դրա քննարկման արդյունքները, պլենումը որոշում է.

1. Ընդունել «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին» ԽՄԿԿ պլատֆորմը և դրա հետևողական կենսագործումը համարել բոլոր կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի խնդիրը:

Պլենումը գտնում է, որ հասարակության լայն հավանությանն արժանացած պլատֆորմի գաղափարներն ու դրույթները համապատասխանում են վերակառուցման կենսական պահանջներին և կարող են քաղաքական հիմք դառնալ խորհրդային ֆեդերացիայի նորացման, բոլոր ազգային-պետական կազմավորումների զարգացման և մյուս ազգային պրոբլեմների լուծման համար՝ ի շահ Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության բոլոր ժողովուրդների:

2. Պլենումը ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին հանձնարարում է կուսակցական կազմակերպությունների գործունեության կոնկրետ պլաններ մշակել «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականության մասին» ԽՄԿԿ պլատֆորմում շարադրված գաղափարների իրականացման նպատակով:

# *Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթը**

## *ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. սեպտեմբերյան պլենումում*

Արդեն երկրորդ տարին է, ինչ մամուլը և հեռուստատեսությունը մեր ռեգիոնն անվանում են ոչ այլ կերպ, քան թեժ և պայթյունավտանգ, ասաց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը: Ի՞նչն է այն դարձրել եռացող կաթսա: Իներցիայով չնշենք էկոնոմիկայի ձախողումները, սոցիալական ոլորտի բարձիթողի վիճակը, թեև դրանք էլ, ինչպես ասում են, տեղ են գտել: Պայթուցիչ դարձան նախ և առաջ ազգային հարցի աղաղակող ձևախեղումները, որոնք մերկացվեցին հրապարակայնությամբ և վերակառուցմամբ:

Խիստ մոլորվում են նրանք, ովքեր բոլոր հանրապետությունների համար փընտրում են ազգամիջյան հարաբերությունների սրման միատեսակ պատճառներ և կոնֆլիկտների լուծման համապատասխան համապիտանի դեղատոմսեր: Յուրաքանչյուր ռեգիոն ունի իր յուրահատկությունը, և առանց դրա ըմբռնման չեն գտնվի ճիշտ մոտեցումներ:

Հայաստանի ներկա հասարակական-քաղաքական իրադրության վրա անդրադառնում են ինչպես անցյալի արձագանքը, այնպես էլ ներկա իրողությունները: Պատմական հանգամանքների բերումով ժողովուրդը բաժանված է մասերի, որոնք ձգտում են իրար: Ցեղասպանության դառը ժառանգությունն է աշխարհի բազմաթիվ երկրներում ցրված ավելի քան երկու միլիոնանոց սփյուռքը: Մոտավորապես նույնքան էլ հայեր կան Հայկական ԽՍՀ-ի սահմաններից դուրս, երկրի տարբեր ռեգիոններում:

Այսօրվա ազգամիջյան պառակտումից և բնական աղետից սրված պատմական հիշողությունը անդրադարձավ և չէր կարող չանդրադառնալ ժողովրդի հոգեբանության, տրամադրության և ինքնազգացողության վրա: Եվ սրանում, գտնում է հռետորը, պետք է փնտրել այն բանի ըմբռնման բանալին, թե այսօր ինչ է տեղի ունենում հանրապետությունում:

Ամբողջ պատասխանատվությունը ծայրահեղականների գործողությունների վրա բարդելը, շարունակեց նա, կնշանակեր խիստ պարզունակ դարձնել գործի էությունը, իրեն զրկել ճգնաժամային իրավիճակից դուրս գալու ճիշտ ուղիներ գտնելու հնարավորությունից:

Հայաստանը բուռն ժամանակներ է ապրում: Մասսաների աճած քաղաքական ակտիվությունը, ղարաբաղյան հանգույցի լուծման գործում հանդես բերված դանդաղկոտությունը, Ադրբեջանի հետ գոյություն ունեցող հարաբերություններում լարվածության սաստկացումը, շրջափակումը հանրապետությունում ստեղծել են գրեթե ճգնաժամային իրադրություն:

Մեր պլենումի նախօրեին սկսված Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նստաշրջանում դրվեց հանրապետության Գերագույն խորհրդի նախագահությանը վստահության քվե հայտնելու հարցը: Որոշ ելույթներում կոչեր հնչեցին անվստահություն հայտնելու նաև միութենական մարմիններին:

Դեպուտատները հարց էին առաջադրում, թե ինչպես կարող էր պատահել, որ խորհրդային իշխանության 70-րդ տարում անմեղ մարդկանց արյուն է հեղվում, չի դադարում գաղթականների հոսքը, տեղի է ունենում խորհրդային պետության պատմության մեջ այնպիսի աննախադեպ ձեռնարկում, ինչպիսին է միութենական հանրապետության տնտեսական շրջափակումը հարևանի կողմից: Ինչու՞ շրջափակման կապակցությամբ միջոցներ չեն ձեռնարկում երկրի պառլամենտն ու կառավարությունը, ինչու՞ է դա լռության մատնում կենտրոնական մամուլը:

Ես, շարունակեց ելույթ ունեցողը, այս հարցերն այստեղ՝ պլենումում առաջադրում եմ ոչ պատահականորեն: Հանրապետական կուսակցական կազմակերպությունների ուժերով կոնֆլիկտի կարգավորման հնարավորությունները խիստ սահ-

*) *Տպագրվում է շարադրանքը։*

մանափակ են: Ամենայն ակնբախությամբ այդ են վկայում վերջին իրադարձությունները: Հարևան հանրապետությունների կոմկուսների կենտկոմների երկու բյուրոների հանդիպման ժամանակ ձեռք բերված համաձայնությունները փաստորեն ի չիք դարձվեցին, խափանվեցին Հայաստանի և ԼՂԻՄ-ի վրա գործադրված տնտեսական ճնշմամբ: Միայն պատերազմական ժամանակներից ծանոթ «բլոկադա» բառը հանկարծ իրողություն դարձավ: Իսկ Վրաստանով անցնող երկաթուղին հիմա անվանում են «կյանքի ճանապարհ»: Բայց այն կարող է ապահովել պլանային փոխադրումների միայն 15 տոկոսը:

Արդեն երկրորդ ամիսն է, նշեց հռետորը, որ Հայաստանում բեռներ չեն ստացվում Ադրբեջանի երկաթուղով: Մեկ տարուց ավելի տնտեսական մեկուսացման մեջ է ԼՂԻՄ-ը: Վառելիքը չի բավականացնում նույնիսկ շտապ բուժօգնության մեքենաների համար: Աղետի գոտում ընդհատված են շինարարական և վերականգնման աշխատանքները: Երկրաշարժից տուժածներին օգնելու համար ամբողջ երկրից եկած հարյուրավոր չոկատներ ստիպված անգործության են մատնված: Սա արդեն ոչ թե տնտեսական, այլ քաղաքական մեծ պրոբլեմ է: Եթե մինչև սեպտեմբերի 20-ը թուղթ բերող տրանսպորտը Հայաստան չհասնի, ապա 21-ին հանրապետությունում թերթերը լույս չեն տեսնի, և մարդիկ չեն կարողանա ծանոթանալ Կենտկոմի Ներկա պլենումի նյութերին:

Ռեգիոնի իրադրությանը, հայտարարեց հռետորը, դրամատիզմ և սրություն է հաղորդում Լեռնային Ղարաբաղի արնածոր վերքը: ԼՂԻՄ-ի հարցը Հայաստանի և Ադրբեջանի տերիտորիալ վեճի առարկա չէ: Այն, գտնում է հռետորը, առաջադրվել է ոչ թե Հայաստանի կողմից, այլ հենց Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կողմից: Այն պետք է դիտել միայն որպես ժողովուրդների ինքնորոշման հարց: Խոսքը ժողովրդի կամքի արտահայտման, նրա սուվերեն իրավունքի մասին է: Այդ իրավունքն անտեսելը, ասաց ելույթ ունեցողը, նշանակում է վարկաբեկել կուսակցության ազգային քաղաքականությունը:

ԽՄԿԿ պլատֆորմում ճիշտ է ասվում, որ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը պետք է լուծվի սահմանադրական-իրավական, դեմոկրատական հիմքի վրա, հրապարակայնորեն, բոլոր շահագրգիռ կողմերի ներկայացուցիչների պարտադիր մասնակցությամբ:

Կարծում եմ, ասաց Ս. Գ. Հարությունյանը, սկզբունքային նշանակություն ունի այդ շարքում ազգերի ինքնորոշման իրավունքի ներառումը, առանց որի, ինչպես հայտնի է, չի կարող իսկապես դեմոկրատական ազգային-քաղաքականություն լինել:

Պետք է իրատեսորեն գնահատել իրավիճակը: Ներկայիս իրադրության մեջ, երբ երկուստեք փոխադարձ անվստահություն, անհանդուրժողություն և նույնիսկ թշնամանք է կուտակվել, ելքը պետք է որոնել փոխզիջման ուղիներում: Այդ ուղղությամբ, նրա կարծիքով, խելամիտ քայլ կլիներ Լեռնային Ղարաբաղին միութենական ենթակայության ինքնավար տարածքի կարգավիճակ տրամադրելը, այլ խոսքերով՝ դա ԼՂԻՄ-ի իրական ենթակայությունն է կենտրոնին՝ մարզային կուսակցական և խորհրդային մարմինների վերականգնումով:

Կուսակցության ազգային քաղաքականության ստրատեգիան, որը մարմնավորված է ԽՄԿԿ պլատֆորմում, այսօր կանխորոշվում է սոցիալիստական ֆեդերալիզմի հիմունքների հետագա զարգացմամբ, միութենական հանրապետությունների ինքնուրույնության խորացմամբ, ռեգիոնալ տնտհաշվարկի ներդրմամբ և մի ամբողջ շարք արմատական այլ քայլերով: Բանախոսը անհրաժեշտ է համարում արտացոլել ընդհանուր սկզբունքը. խորհրդային ֆեդերացիան ոչ միայն միութենական հանրապետությունների, այլև ինքնավար կազմավորումների միություն է: Դրանով իսկ կընդգծվի, որ մեզ մոտ չկան ժողովուրդներ՝ ավելի կամ պակաս իրավունքներով, բոլոր ազգերն ու ազգություններն ունեն հավասար ինքնուրույնություն և հոգևոր, մշակութային, տնտեսական ու սոցիալական զարգացման հավասար հնարավորություններ:

Ստեղծվել է մի վիճակ, երբ ազգային խոշոր ընդհանրությունները, կազմելով միութենական հանրապետություններ, ունեն իրենց զարգացման ոչ միայն տնտեսական, այլև սահմանադրությամբ ամրագրված քաղաքական երաշխիքներ: Իսկ ազգային փոքրամասնությունները, եթե անգամ նրանք համահավաք բնակատեղված են պատմական տերիտորիաներում և ունեն ինքնավարության կարգավիճակ, միշտ չէ, որ նման երաշխիքներ ունեն: Հռետորը այնուհետև կանգ առավ այն պրոբլեմների վրա, որոնց բախվում են ազգային փոքրամասնություններն ու խմբերը:



Պետք է մեր ֆեդերացիան դարձնել բաց, հայտարարեց բանախոսը, ինքնավար կազմավորումներին իրավունք ընձեռել երկրի բարձրագույն մարմիններին դիմելու ինքնավարության կարգավիճակի բարձրացման մասին առաջարկություններով: Կարելի էր նախատեսել ազգային-տերիտորիալ կազմավորումների միջև պայմանագրային հարաբերությունների համակարգ այն նույն հիմունքներով, ինչ որ միութենական հանրապետությունների և ԽՍՀ Միության միջև: Այս դեպքում, հռետորի կարծիքով, ինքնորոշման ձևը համապարփակ բնույթ է ստանում:

Ի՞նչն է ֆեդերացիայի սուբյեկտ հանդիսանում՝ միության մեջ մտնող տերիտորիալ կազմավորումնե՞րը, թե՞ ժողովուրդները: Առանց այս հարցին պատասխանելու, նրա կարծիքով, հնարավոր չէ գտնել միությունը կատարելագործելու, հետևաբար և ամրապնդելու բանալին:

Այսօրվա իրողությունները հրամայաբար թելադրում են, որ ազգերի ինքնորոշման իրավունքը անհրաժեշտ է մեկնաբանել ոչ այնքան ԽՍՀՄ-ի կազմից այս կամ այն հանրապետության դուրս գալու հնարավորության, որքան խորհրդային ֆեդերացիայի շրջանակներում ժողովուրդների ինքնորոշման տեսանկյունով: Ըստ էության, նմանօրինակ հարցադրում է պարունակում պլատֆորմի նախագիծը Ռուսաստանի Ֆեդերացիայի ինքնավար կազմավորումների վերաբերյալ: Ելույթ ունեցողը հնարավոր է համարում այդ սկզբունքն իրականացնել ամբողջ խորհրդային ֆեդերացիայի շրջանակներում:

Ազգամիջյան կոնֆլիկտները, ասաց նա, անողոք իրողություն են: Իսկ մենք չունենք դրանց լուծման իրավական մեխանիզմներ: Նման մեխանիզմների որոնումը հանգեցնում է այն հետևության, որ ԽՍՀՄ սահմանադրության մեջ կարելի էր նախատեսել միութենական ենթակայության ինքնավար տերիտորիայի ստատուս:

Դա հնարավորություն կընձեռեր, ասում է հռետորը, բորբոքված հրդեհը հանգցնել հենց սկզբում, թույլ չտալ, որ իրավիճակը անշրջելի բնույթ ստանա:

Արդարություն ազգամիջյան հարաբերություններում՝ այսօր այսպիսին է ժամանակի հրամայականը, շարունակեց ելույթ ունեցողը, և այդ արդարությունը ի թիվս առաջինների պետք է զգա ռուս ժողովուրդը: Ազգային քաղաքականության մեջ գլխավոր ուղղությունը երկար ժամանակ ծայրամասերին ցույց տրվող օգնությունն էր՝ ժողովուրդների միջև փաստական անհավասարությունը վերացնելու համար: Նման մոտեցման դեպքում Ռուսաստանի ուսերին ծանր բեռ էր ընկած: Պետականության ատրիբուտների տարտամության պատճառով Ռուսաստանի Ֆեդերացիան սկսեց նույնացվել կենտրոնի հետ: Եվ ավելորդ կենտրոնացման քննադատությունը երբեմն վերածվում է Ռուսաստանի քննադատության: Մենք, հայտարարեց հռետորը, ամբողջ հոգով պաշտպանում ենք պլատֆորմի նախագծի այն առաջարկությունները, որոնք նպատակամղված են Ռուսաստանի համար արժանավայել տեղի ապահովմանը միութենական հանրապետությունների ֆեդերացիայի մեջ:

Տեղերի կուսակցական շատ կոմիտեներ հանկարծակիի եկան ազգային ինքնագիտակցության արագ վերելքից, բնակչության կողմից սոցիալ-քաղաքական և տնտեսական ցավոտ պրոբլեմների հիմնավոր առաջադրումից: Ազգային և սոցիալական սուր պրոբլեմների չլուծված մնալը սպառնալիքի տակ է դնում կուսակցական կազմակերպությունների հեղինակությունը:

Մենք, շարունակեց նա, ստիպված ենք հաճախ պաշտպանության անցնել, հաճախակի է, որ չենք տիրում նախաձեռնությանը, ձեռքից բաց ենք թողնում ազգային դրոշը, որն իրենց ձեռքն են առնում քաղաքականացած միավորումներն ու կազմակերպությունները, դառնալով ազգային իղձերի արտահայտիչներ:

Իհարկե, ընդգծեց նա, կուսակցությունը նախ և առաջ պետք է լինի ինտերնացիոնալ, միավորող սկզբունքների կրողը, բայց մեր բազմազգ երկրում անհրաժեշտ է ինտերնացիոնալ սկզբունքները մարմնավորել մեր Միության ժողովուրդների և ազգությունների ազգային իղձերը բավարարելու միջոցով:

Ամենևին չհրաժարվելով իմ պատասխանատվությունից, ասաց հռետորը, սրա հետ միասին կցանկանայի նշել, որ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն ևս հաճախ ուշացել են ազգամիջյան հարաբերությունների «պիրկ հանգույցների» քաղաքական գնահատումների և դրանց լուծման գործնական միջոցառումների գործում: Կան հարցեր, որոնք կարող են և պարտավոր են լուծել ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը, երկրի կառավարությունն ու ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, և մենք իրավունք ունենք նրանցից ակնկալելու թե ավելի շատ վճռականություն, թե ավելի շատ հետևողականություն և թե ավելի շատ օպերատիվություն:

(ՏԱՍՍ)

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Գ. ՇՄԱՎՈՆՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԿՅԱՆՔՈՒՄ իրականացվում է կտրուկ բեկում դեպի տնտեսավարման ինտենսիվ մեթոդներ, անցում գիտատեխնիկական առաջադիմությունն ըստ ամենայնի ծավալելու հիման վրա սոցիալ-տնտեսական զարգացման նոր որակի: Կուսակցության կուրսը նպատակամղված է արդյունավետ, բարձր կազմակերպված էկոնոմիկայի ստեղծմանը և արտադրողական ուժերի համակողմանի զարգացմանը, որին հասնելու գործում առաջնակարգ դեր է պատկանում ծանր արդյունաբերությանը:

Վ. Ի. Լենինը նշել է, որ «սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը» (ԵԼԺ, հ. 44, էջ 11): Երկրի տնտեսական հզորությունը և պաշտպանունակության պատշաճ մակարդակն ամենից առաջ պայմանավորված են էկոնոմիկայի զարգացման որակական արգասիքներով: Որպես միասնական ժողովրդատնտեսական համալիրի առաջատար ճյուղ արդյունաբերությունը ընդլայնված վերարտադրության ամբողջ ընթացակարգի պլանաչափ իրականացման, սոցիալիստական արտադրահարաբերությունների համակարգի ամրապնդման անհրաժեշտ պայմաններ, ինչպես նաև ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացման նյութական նախադրյալներ է ստեղծում: Նրան է պատկանում վճռորոշ դերը ազգային եկամտի, տնտեսական աճի այլ վերջնական պարամետրերի մեծացման գործում: Ահա թե ինչու միանգամայն հիմնավոր է էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման արագացման, ժողովրդատնտեսական վերջնական բարձր արդյունքների ապահովման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում արդյունաբերական արտադրության ինտենսիվացման առաջնային նշանակության մասին թեզը:

Արդյունաբերական այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են էլեկտրաէներգետիկան, քիմիական ու նավթաքիմիական արդյունաբերությունը, մեքենաշինության առանձին ճյուղերը, շինարարական նյութերի, միկրոկենսաբանական արդյունաբերությունը, կանխորոշում են ոչ միայն ծանր արդյունաբերության, այլև ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման ուղղությունները: Արդյունաբերության ինտենսիվացումն անմիջականորեն խթանում է ինտենսիվ պրոցեսները գյուղատնտեսությունում, շինարարությունում, տրանսպորտում, նյութատեխնիկական մատակարարման մեջ, առևտրում, ոչ նյութական ոլորտի ճյուղերում: Սակայն այսպիսի կախվածությունն, անշուշտ, փոխադարձ է: Արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի մեծացման, դրա արդյունավետության աճի կայուն բարձր տեմպերը մեծապես պայմանավորված են այդ ճյուղերի ինտենսիվացմամբ, դրանց զարգացման որակական բնութագրերի բարելավմամբ: Իսկ արդյունաբերությունը որքան արագ աշխատանքի առարկաներ և միջոցներ ստեղծի իր իսկ արտադրական սպառման համար,

---

*ՇՄԱՎՈՆՅԱՆ ԳԱՐԵԳԻՆ ՋԻՎԱՆԻ— ՀԽՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի կրտսեր գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու*



այս նրա զարգացման նոր աստիճանը, լինելով տնտեսության այլ ճյուղերի ինտենսիվ աճի հիմքը և համապատասխանաբար ենթարկվելով նշված հակադարձ ազդեցությանը, կնպաստի իր բազմակի վերարտադրությանը:

Սոցիալ-տնտեսական առաջադիմության արդի փուլում արդյունաբերական արտադրության ընտենսիվացումն արագացնելու ասպարեզում խոշոր տեղաշարժերի հասնելու համար անհրաժեշտ է ծանրության կենտրոնը նոր, հաճախ տնտեսապես չարդարացված շինարարությունից փոխադրել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման, տնտեսական պոտենցիալի քանակական մեծացումից՝ դրա որակական վերափոխման, միջանկյալ արտադրությունների զարգացումից՝ բարձրորակ վերջնական արտադրանքի թողարկման վրա: Այս ամենը հնարավորություն կընձեռի զգալիորեն մեծացնել արտադրական տարածության միավորից ստացվող արտադրանքի ծավալը, բարձրացնել աշխատանքային, ինվեստիցիոն, նյութական, բնական և մյուս ռեսուրսների հատույցը:

Ծանր արդյունաբերության ինտենսիվացման էությունը բնորոշող կարևորագույն տնտեսական պրոցեսները արտադրական ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը և արմատական վերակառուցումն են: Դրանք, գործող պոտենցիալի օգտագործման ռացիոնալացման հետ, մեծ նշանակություն ունեն տնտեսական բազիսի արմատական նորացման, արտադրության տեխնիկական մակարդակում դրական տեղաշարժերի, միագումար ռեսուրսահատույցի նկատելի աճի հասնելու գործում: Վերակառուցման ու վերազինման դերն առանձնապես մեծանում է արդի պայմաններում, երբ արտադրանքի թողարկումն ավելացնելու ռեզերվներն աստիճանաբար սպառվում են և արտադրության զարգացման միակ ռեալ ուղին առկա կարողությունների ու ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն է: Ելնելով դրանից, ընթացիկ հնգամյակում էական փոփոխություններ են կատարվում ինվեստիցիոն քաղաքականության մեջ, մասնավորապես կապիտալ ներդրումների վերարտադրական կառուցվածքում: Դրա կոնկրետ դրսևորումն է այն, որ երկրի ժողովրդական տնտեսության գործող սկզբնական օղակների տեխնիկական վերազինմանը և վերակառուցմանը տրամադրվող միջոցների բաժինը մեծանում է՝ 1985 թ. 37 տոկոսից 1990 թ. հասնելով 50 տոկոսի, մեր հանրապետությունում՝ 48,5-ից մինչև 57,3 տոկոսի:

Սակայն ինչպես ընդգծվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում, մենք չկարողացանք նորովի իմաստավորել տեխնիկական վերազինման, վերակառուցման պրոբլեմները, փաստորեն նախապատրաստված չէինք լայնորեն օգտագործելու տնտեսական աճի ինտենսիվ գործոնները: Բավական է նշել, որ դեռևս 1987 թ. արտադրական կապիտալ ներդրումների ծավալի մոտ երկու երրորդը հատկացվում էր ձեռնարկությունների ընդլայնմանը, ընդ որում, դա կատարվում էր տեխնիկական վերազինման և վերակառուցման (ՏՎՎ) անվան տակ: Այսպիսի արատավոր քաղաքականությունը չէր կարող չհանգեցնել արտադրության զարգացման տեխնիկատնտեսական մակարդակի անկման, նրա որակական պարամետրերի վատացման: Բացի այդ, պրակտիկայում քիչ չէր պատահում, երբ ավելի շատ շինարարական աշխատանքներ կատարելու և համապատասխանաբար ավելի մեծ եկամուտ ստանալու կապալային կազմակերպությունների շահագրգռվածության պատճառով արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման մի քանի տարբերակներից ընտրվում էին առավել կապիտալատարները: Այս ամենի հետևանքով զգալիորեն նվազում է կապիտալ ներդրումների միագումար արդյունավետությունը: Բավական է նշել, որ կապիտալահատույցի գործակիցը 1981—1985 թթ. 0,75-ից 1986—1987 թթ. իջել է 0,67-ի:

Կապիտալ ներդրումների վերարտադրական կառուցվածքում ռեալ տեղաշարժերի հասնելու պրոբլեմը քննարկելիս անհրաժեշտ է նաև հաշվի առնել, որ ՏՎՎ-ին նպատակամղված միջոցառումներն էլ իրենց սահմաններն ունեն: Չէ որ շատ դեպքերում արտադրանքի նոր, անհրաժեշտ տեսակների թողարկման կազմակերպումը պահանջում է նոր շինարարություն: Դրան պետք է ավելացնել, որ նոր շինարարությունը միշտ չէ, որ պետք է դիտել իբրև զուտ էքստենսիվ պրոցես: Այն նաև կարող է նպաստել արտադրության ինտենսիվացմանը՝ վերակառուցվող ձեռնարկությունը նոր, բարձրարդյունավետ տեխնիկայով զինելու և դրա հիման վրա ընդհանուր առմամբ ճյուղի արդյունավետությունը բարձրացնելու շնորհիվ:

Արդի պայմաններում շատ կարևոր է ոչ միայն տեխնիկական վերազինման հրատապ պրոբլեմները բացահայտելը, այլև դրանց իրականացման հնարավորությունները և ուղղությունները իրատեսորեն գնահատելն ու կենսագործելը: Այդ առնչությամբ առանձնակի նշանակություն է ստանում մեքենաշինության՝ գործող ձեռնար-

կությունների տեխնիկական վերազինման հիմքի արագ զարգացումը: Խոսքն արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ մեքենաների ու սարքավորումների, ինչպես նաև մշակող արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշռի մեծացման մասին է: Դա տնտեսական աճի առաջադիմականության որոշակի չափանիշ է դառնում: Ի դեպ, մեզանում այդ բաժինն առայժմ ցածր է համաշխարհային պրակտիկայում գոյություն ունեցող համանման պարամետրից: Այսպես, մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում մշակող արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ մեքենաշինության տեսակարար կշիռը կազմում է մոտ 40 տոկոս, մինչդեռ ԽՍՀՄ-ում՝ 30 տոկոս (ներառյալ նաև մետաղամշակումը), իսկ Հայկական ԽՍՀ-ում՝ 29,7 տոկոս:

Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում, մեքենաշինական համալիրը հանրապետության էկոնոմիկայի զարգացման ըստ էության նեղ տեղերից մեկն է դարձել: Գերատեսչական տարանջատվածությունը, վերջնական արտադրանքի ցածր բաժինը (այն կազմում է 20 տոկոսից էլ պակաս), բազմապրոֆիլայնությունը և միջճյուղային (ինչպես նաև ներճյուղային) մասնագիտացման ու կոոպերացման լրիվ բացակայությունը, առկա արտադրատեխնիկական ու մտավոր պոտենցիալի անբավարար օգտագործումը նկատելիորեն կասեցնում են ճյուղի զարգացումը: Այստեղ արտադրանքի նորացման մակարդակը 1987 թ. կազմեց սոսկ 5,7 տոկոս, իսկ թողարկվող արտադրատեսակների 26 տոկոսի «հասակը» անցնում է տասը տարուց:

Այսպիսի պայմաններում անհրաժեշտ է հետևողականորեն արդիականացնել մեքենաշինությունը, հասնել դրա զարգացման որակական ու քանակական բարձր ցուցանիշների, որոնք կնպաստեն արտադրության արդյունավետության իրական բարձրացմանը, տնտեսական աճի ներճյուղային ու միջճյուղային համամասնությունների կատարելագործմանը:

Արդյունաբերության զարգացման ինտենսիվացումը ենթադրում է կենդանի աշխատանքի արտադրողականության, արտադրության փոնդահատույցի և նյութահատույցի, արտադրանքի որակի անշեղ բարձրացում և, դրա հիման վրա, ընթացիկ ու միանվագ ծախսերի ըստ ամենայնի խնայողություն:

Աշխատանքի արտադրողականությունը, որը արտադրության արդյունավետության ամենակարևոր բաղադրիչներից մեկն է, դրսևորվում է որպես հասարակության արտադրողական ուժերի հասունության ցուցանիշ: Հայկական ԽՍՀ-ում դրա մեկ տոկոս աճը համազորազոր է ազգային եկամտի 54 մլն ռուբլու աճին (կամ մոտ 48 հազար աշխատողների աշխատանքի խնայողության) և արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելի քան 80 միլիոն ռուբլով ավելացնելուն: Սակայն ընթացիկ հնգամյակի անցած տարիներին կատարվում է հանրապետության ծանր արդյունաբերության տվյալ ցուցանիշի անշեղ նվազում:

Աշխատանքի արտադրողականության պյսօրինակ բացասական դինամիկան հիմնականում պայմանավորված է այնպիսի գործոնների առկայությամբ, ինչպիսիք են վերակիրառվող տեխնիկական համակարգերի ցածր արդյունավետությունը (մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում նոր մեքենաների և սարքավորումների գների աճը մոտ կրկնակի գերազանցում է դրանց արտադրողականության աճին), արտադրության և աշխատանքի կազմակերպման թերությունները (արտադրական կարողությունների օգտագործման գործակիցը հաճախ կազմում է 0,7—0,8 տոկոս, ակներև է աշխատաժամանակի էական կորուստը), նյութատեխնիկական մատակարարման գործում բացահայտ վրիպումների պատճառով պարապուրդները արտադրությունում: Պետք է նշել, որ ծանրակշիռ արդյունքներ ձեռք չեն բերվել նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով արտադրանքի թողարկումն ավելացնելու գործում:

1987 թ. այդ ցուցանիշը հավասար էր 73,5 տոկոսի: Նման համեմատաբար ցածր բաժինը, ինչպես նշվեց, բացասական գործոնների, այնպես էլ ընթացիկ հնգամյակում նոր ձեռնարկությունների շինարարության և, հետևաբար, արդյունաբերության մեջ զբաղվածների թվակազմի աճի հետևանքն է:

Սոցիալ-տնտեսական առաջադիմության արդի փուլում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արմատական արագացումը պարտադիր օրինաչափություն է բնավ ոչ այն պատճառով, որ արտադրության աճի այլ (էքստենսիվ) ուղիների օգտագործման հնարավորություններ չկան կամ դրանք սահմանափակ են: Ի դեպ, տասներկուերորդ հնգամյակում կպահպանվի անբարենպաստ ժողովրդագրական իրադրությունը, որն արտահայտվում է աշխատանքային ռեսուրսների բա-



ցարձակ աճի կրճատմամբ: 90-ական թվականներին վիճակը որոշ չափով կբարելավվի, աճը մի քիչ կավելանա: Սակայն դա ամենևին չի նսեմացնում աշխատանքի արդյունավետության իրական բարձրացման ողջ կարևորությունը և հրատապությունը, որովհետև արտադրության աճն զբաղվածների թվի աճի հաշվին գործնականում քիչ է նպաստում աշխատավորների բարեկեցության բարձրացմանը: Տընտեսագիտական գրականության մեջ հաճախ ընդգծվում է, որ աշխատանքի արտադրողականության աճը որոշվում է աշխատանքի փոնդահատույցի և փոնդազինվածության ցուցանիշների արտադրյալով: Այդպիսի պնդումը կարելի է ընդունել միայն որոշ վերապահումով. չէ որ աշխատանքի արտադրողականության դինամիկայի վրա ազդում է նաև նրա ինտենսիվացման աստիճանը: Այլ կերպ ասած, աշխատանքի արտադրողականության աճն ապահովվում է աշխատանքի ինտենսիվության բարձրացման միջոցով:

Մեզ մոտ աշխատանքի արտադրողականության աճը ձեռք է բերվում հետևյալ հիմնական ազդակների ներգործությամբ. գիտատեխնիկական առաջադիմությանն ուղղված միջոցառումների շնորհիվ ստացվում է ամբողջ աճի մոտ կեսը, թողարկվող արտադրանքի կառուցվածքի փոփոխման և մատակարարումների կոոպերացման մակարդակի բարձրացման շնորհիվ՝ մոտ մեկ երրորդը, արտադրանքի որակի բարելավումից, նրա պատրաստման և խոտանի շտկման ժամանակի կրճատումից՝ 7 տոկոսը, աշխատանքի ինտենսիվացումից՝ 18 տոկոսը: Այսպիսով, աշխատանքի փոնդազինվածության և փոնդահատույցի մեծացման հաշվին նրա արտադրողականության մեծացումն ապահովվում է հենց աշխատանքի արտադրողական ուժի աճով: Շատ կարևոր է, որ տվյալ աճը պայմանավորված լինի ոչ այնքան փոնդազինվածության, որքան փոնդահատույցի մեծացմամբ: Մինչդեռ իրականությունն այլ բան է ցույց տալիս. հանրապետությունում կենդանի աշխատանքի ամբողջ տնտեսումը անցած հնգամյակի տարիներին լիովին ձեռք բերվեց փոնդազինվածության աճի հաշվին՝ փոնդահատույցի անկման պայմաններում, որը վկայում է արդյունաբերության զարգացման մեջ էքստենսիվ պրոցեսների որոշակի ուժեղացման մասին: Սակայն դա բնավ չի նշանակում, որ փոնդազինվածության ուժեղացման միջոցով արտադրողականության ամեն մի աճ նույնական է արտադրության ինտենսիվացմանը: Բանն այն է, որ տվյալ դեպքում չպետք է նվազի փոնդահատույցը, իսկ փոնդազինվածության և դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության աճը պետք է մեծ մասամբ ձեռք բերվի զբաղված աշխատողների թվակազմի կրճատման, այլ ոչ թե հիմնական փոնդերի ծավալի մեծացման միջոցով: Արտադրողականության բարձրացման այդպիսի ուղու օրինակ է ձեռքի աշխատանքի կրճատմանը նպատակամղված միջոցառումների իրականացումը: Ըստ ակադեմիկոս Թ. Ս. Խաչատուրովի հաշվարկների, երկրի արդյունաբերության մեջ աշխատող բանվորների մոտ 40 տոկոսն զբաղված է առավելապես սակավ հրապուրիչ, սակավ արտադրողական, իսկ երբեմն էլ նաև ձեռքի ծանր աշխատանքով (Ինտենսիվացման էությունը և ուղիները, ակադեմիկոս Թ. Ս. Խաչատուրովի հարցազրույցը, «Լենինյան ուղիով» 1983, № 3, էջ 65): Իսկ հանրապետության արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ընդհանուր թվակազմի մեջ ձեռքի աշխատանքով զբաղվածների բաժինը կազմում է 37 տոկոս: Ըստ մեր հաշվարկների, եթե արտադրության մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ նշված բաժինը կրկնակի կըրճատվի, ապա աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա գրեթե 17 տոկոսով, ընդ որում, արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի կայունության պայմաններում: Այլ կերպ ասած, աշխատանքի արտադրողականության աճի՝ հնգամյակի համար ծրագրված առաջադրանքը կգերակատարվի 0,4 կետով, իսկ եթե ընդունենք, որ այդպիսի կրճատման հետևանքով ազատված աշխատողները կներգրավվեն ոչ նյութական ոլորտը, ապա հանրապետության ամբողջ ժողովրդական տնտեսության գծով աշխատանքի արտադրողականությունը հենց միայն նրա քիչ առաջ նշված աճի շնորհիվ արդյունաբերության մեջ կավելանա 5 տոկոսով (պլանային 15,1 տոկոս աճի դիմաց): Այդ դեպքում աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս աճը ծանր արդյունաբերությունում կապահովի հասարակական աշխատանքի արտադրողականության 0,29 տոկոս աճ: Իսկ ընթացիկ հնգամյակում հասարակական աշխատանքի արտադրողականության նշված 15,1 տոկոս աճի ձեռքբերման համար միանգամայն բավարար կլիներ ազգային եկամտի 9,6 տոկոս ավելացումը (հնգամյակի համար նախատեսված 24,6 տոկոսի դիմաց):

Արդյունաբերության ինտենսիվացման պրոբլեմին է առնչվում ֆոնդահատույցի աճի ձեռքբերման անհրաժեշտությունը: Այդ ցուցանիշի դրական դինամիկան ծանրակշիռ դեր է խաղում արտադրության արդյունավետության բարձրացման գործում: Սակայն պետք է ընդգծել, որ ֆոնդահատույցն արդեն երկար ժամանակ է, ինչ նվազման միտում է ցուցաբերում, որը ֆունկցիոնալ առումով կապված է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի համեմատությամբ նրա ֆոնդազինվածության տեմպերի մեծացման հետ:

Ութերորդ հնգամյակում՝ 1966—1970 թթ., տեղի ունեցավ ֆոնդահատույցի նվազման տեմպերի թուլացում: Եթե յոթերորդ հնգամյակում աշխատանքի ֆոնդազինվածության մեկ տոկոս աճին ընկնում էր աշխատանքի արտադրողականության 0,4 տոկոս աճ, իններորդ հնգամյակում՝ 0,7, ապա տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներում՝ համապատասխանաբար 0,8 և 0,9, տասներկուերորդ հնգամյակի առաջին երկու տարում՝ 6,8 տոկոս: Ֆոնդահատույցի այդպիսի անբարենպաստ դինամիկայի հիմնական պատճառներն են (ի դեպ, այն հիմա էլ գոյություն ունի) ոչ միայն առկա արտադրական ապարատի պատշաճ օգտագործման բացակայությունը, այլև տեխնիկատնտեսական ցածր մակարդակը: Վերջինս հաստատվում է այն փաստով, որ նոր սարքավորումների զգալի մասը հատկացվում է առանց այն էլ չափազանց ուռճացած մեքենայական համակազմին և սոսկ մեկ երրորդը՝ ֆիզիկապես ու բարոյապես հնացածին: Այդ է վկայում հիմնական ֆոնդերի անպետքացման գործակցի համեմատությամբ դրանց կիրառման գործակցի ավելի քան կրկնակի գերազանցումը: Այսպիսով, առայժմ ակնհայտ է արտադրության ոչ թե ինտենսիվ, այլ էքստենսիվ ընդլայնած վերարտադրության առաջնայնությունը: Մինչդեռ հայտնի է, որ արդյունաբերական սարքավորումների ավելի քան 40 տոկոսը շահագործվում է տասը տարուց ավելի, երբ հաճախ կարելի է տեսնել աշխատանքի այնպիսի գործիքներ, որոնք սկսել են կիրառվել 30—40 տարի առաջ և նույնիսկ ավելի վաղ: Դրա հետ մեկտեղ, չնայած նշված հանգամանքին, ընթացիկ հնգամյակում ֆոնդահատույցի նվազումն, այնուամենայնիվ, արագանում է՝ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կազմելով 9,9, իսկ արդյունաբերությունում՝ 6,8 տոկոս: Ֆոնդահատույցի անկումը կատարվում է այնպիսի հիմնական գործոնների ներազդեցությամբ, ինչպիսիք են վերագործարկվող արտադրական կարողությունների օգտագործման անբավարար մակարդակը, արտադրական ապարատի նորացման ցածր գործակիցը, բնապահպան նշանակության հիմնական ֆոնդերի գործարկումը, որոնք չեն ազդում սրտադրանքի աճի վրա, նոր օբյեկտները շահագործման հանձնելու և գործող կարողություններն ընդլայնելու առնչությամբ արդյունաբերության ֆոնդատարողունակ ճյուղերի (քիմիայի, մեքենաշինության, էլեկտրաէներգետիկայի, շինանյութերի արդյունաբերության) կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունները:

Անանցողիկ նշանակություն ունի նյութահումքային, վառելիքաէներգետիկ և բնական ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացումը: Հիշյալ պրոբլեմի լուծումն առանձնապես հրատապ է այն պատճառով, որ նշված ռեսուրսների տնտեսումն զգալիորեն ավելի էժան է դրանց ավելացմանն ուղղված միջոցառումներից: Ուստի ընթացիկ հնգամյակում հանրապետության արդյունաբերության մեջ մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի նյութական ծախսերը պետք է նվազեն 3,2 տոկոսով (նախորդ հնգամյակի 1,4-ի դիմաց), որն աշխատանքի արտադրողականության աճի հետ որոշ չափով կփոխհատուցի ֆոնդահատույցի անկումը:

Արտադրության ինտենսիվացումն արագացնելու հիմնական լծակներից մեկն արտադրանքի որակի բարձրացումն է: Կուսակցության XXVII համագումարում նշվեց, որ այդ հարցը ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական նշանակություն ունի: Ժողովրդական տնտեսությունը մտել է մի այնպիսի բնագծի, երբ առանց որակի հետ կապված գործերի վիճակի արմատական բարելավման, չի կարող լուծվել ոչ մի խոշոր արտադրական և սոցիալական խնդիր: Ի դեպ, մեր հանրապետությունում թողարկվող արտադրանքի շատ տեսակներ իրենց տեխնիկատնտեսական մակարդակով չեն համապատասխանում արտադրության զարգացման ժամանակակից պահանջներին: Ավելին, տվյալ բնագավառում մի շարք կարևորագույն ցուցանիշների գծով վիճակը վատացել է:

Արտադրության համակողմանի ինտենսիվացման, արտադրանքի որակի բարձրացման կուրսն աներևակայելի է առանց գիտատեխնիկական առաջադիմության



(ԳՏԱ) արագացման: Նրա համապարփակ ծավալումն արդեն դարձել է մեր ողջ էկոնոմիկայի աճի և արմատական կատարելագործման առանցքային գործոն:

Արդի պայմաններում գիտության ու տեխնիկայի առաջնային ուղղություններում առկա միջոցների կենտրոնացման, ամբողջ առաջավորի արագ և մասշտաբային յուրացման, արտադրողական ուժերի որակական վերափոխման օբյեկտիվ անհրաժեշտություն է ծագում. դա էլ ԳՏԱ-ի արագացման կառավարման ստրատեգիան է: Ելնելով դրանից, առանձնակի հրատապություն է ստանում արտադրության ճյուղային կառուցվածքի համապատասխան փոփոխումը, որը հաստատվում է նաև զարգացած արտասահմանյան երկրների փորձով, որտեղ նկատվում է մշակող արդյունաբերության ավանդական ճյուղերի կշռի մեծացում: Այդտեղ գիտատարողունակ արտադրանքի թողարկումն առնվազն երկու անգամ արագ է ավելանում, քան համախառն ազգային արտադրանքը: Մեր երկրում նույնպես տեղի է ունեցել ԳՏԱ-ն ապահովող ճյուղերի զարգացման առաջանցում: Հայկական ԽՍՀ-ում, օրինակ, նախորդ հնգամյակի տարիներին ռադիոէլեկտրոնիկայի, սարքաշինության ձեռնարկություններում արտադրանքի թողարկումն ավելացել է 2,5 անգամ, այսինքն արդյունաբերական արտադրանքի աճի տեմպը գերազանցել է գրեթե կրկնակի: Միաժամանակ կարևոր է ԳՏԱ-ի վերջնական որակական արդյունքների զգալի բարելավման հասնելը: Այդ նկատառումով պետք է նշել, որ հանրապետության արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ ապահովվում է աշխատանքի արտադրողականության աճի սոսկ 39,3 տոկոսը, մինչդեռ կուսակցության XXVII համագումարում առաջադրվել էր այդ բաժինը մինչև երկու երրորդի հասցնելու խնդիրը: Այսպիսի բացասական միտումը պայմանավորված է նրանով, որ տարբեր ճյուղերի մի շարք ձեռնարկություններում տեխնիկայի, տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման և կուլտուրայի մակարդակը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին, իսկ դա հնարավորություն չի ընձեռում լուծելու արտադրական ապարատի արդիականացման խնդիրը, արագացնելու նոր տեխնիկայի ներդրումը: Ակնհայտ է, որ գիտատեխնիկական առաջադիմության ցածր արդյունավետությունը կապված է ոչ միայն նրա արագացման առկա ռեզերվների թերօգտագործման, այլև այն անհերքելի փաստի հետ, որ ժամանակի ընթացքում տեխնոլոգիական և կազմակերպական արժեքների որոշակի վիճակ է ստեղծվում: Դա հաստատում է ԳՏԱ-ի էվոլյուցիոն ձևից դեպի նրա հեղափոխական ձևը, արտադրության գիտատեխնիկական հիմունքի մասնակի կատարելագործումից այդ բնագավառում դեպի արմատական որակական վերափոխումներ արագացված անցում կատարելու հրատապությունը:

ԳՏԱ-ի սկզբնավորումը պայմանավորված է մարդկության ողջ նախընթաց հասարակական-տնտեսական զարգացմամբ, ստեղծագործական գիտական մտքի թռիչքաձև առաջընթացի համար պայմանների ստեղծմամբ, տեխնիկայի, տեխնոլոգիայի, արտադրական պրոցեսների կազմակերպման գործում սկզբունքորեն նոր վիճակի հասնելու շնորհիվ: Գիտության ու տեխնիկայի բնագավառում հեղափոխությունը մարդկանց նյութական և հոգևոր ավելի ու ավելի բարձր պահանջմունքների բավարարման, մարդկային քաղաքակրթության դարակազմիկ առաջադիմության նոր ուղղությունների կենսագործման համար արտադրողական ուժերի զարգացման մակարդակի շեշտակի բարձրացման հնարավորությունների իրականացման հիմք է ծառայում:

Տնտեսական աճի արդի փուլում միայն ԳՏԱ-ի նվաճումների բարձրարդյունավետ ներդրումը կնպաստի հասարակական-արդյունաբերական արտադրության ինտենսիվացման, նրա արգասավորության շեշտակի բարձրացման գործում արմատական վերափոխումներին:

Այդ նվաճումների նյութականացման դրսևորումն է սկզբունքորեն նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի ստեղծումը և ռացիոնալ օգտագործումը: Տեխնիկայի և տեխնոլոգիայի մեջ էական տեղաշարժեր ապահովող հիմնարար հետազոտությունների գծով ԽՍՀՄ-ը զգալիորեն առաջ է անցել զարգացած արտասահմանյան երկրներից: Բայց ընդհանուր առմամբ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում դրանց գործնական կիրառման առումով էական բացթողումներ կան: Այսպես, Հայկական ԽՍՀ արդյունաբերության մեջ օգտագործվում է արդյունաբերական բնույթի գյուտերի ընդհանուր քանակի սոսկ 41 տոկոսը: Այսպիսով, խնդիրը նշված պոտենցիալը առավելագույն հատույցով գործադրելն է, որակապես նոր տեխնիկա-տեխնոլոգիական լուծումների իրականացումից բարձրագույն սոցիալ-տնտեսական արդյունքի ձեռքբերմանը հետամուտ լինելը:

Ընդունված է էապես նոր համարել տեխնոլոգիական նոր սկզբունքի կամ ավանդականի արմատական կատարելագործման վրա խարսխված տեխնիկան: Դրա հետ մեկտեղ, մեր կարծիքով, նոր տեխնիկա է այն, որը միաժամանակ պատկառելի տեխնիկական և սոցիալական արդյունք է ապահովում: Այդպիսի տեխնիկական համակարգերի օրինակ են միկրոէլեկտրոնիկան, առանձնապես միկրոպրոցեսորային տեխնիկան, արդյունաբերական ռոբոտները, ճկուն վերասարքավորվող ավտոմատացված համակարգերը, «մշակող կենտրոն» տիպի ծրագրային կառավարմամբ բազմաօպերացիոն հաստոցները, ռոտորային-հարահոսային գծերը:

Ժամանակի նշանակ է դարձել սկզբունքորեն նոր տեխնոլոգիայի օգտագործումը: Դրանցից այնպիսիք, ինչպիսիք են կենսատեխնոլոգիան, գենային և բջջային ինժեներիան, տեխնոլոգիական լազերները, նպաստում են արտադրության արդյունավետության բազմակի աճին:

Արդյունաբերական արտադրության վերջնական պարամետրերի վրա ԳՏԱ-ի բազմազան ներգործության մասին խոսելիս չի կարելի ասել, թե դա միագիծ բնույթ ունի: Գիտության ու տեխնիկայի առաջադիմությունը, իր հերթին, մեծապես պայմանավորված է արտադրության մակարդակի զարգացմամբ, գիտությունների ակադեմիաներում, փորձնական կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպություններում նրա արդյունքների կիրառմամբ: Խոսքը վերաբերում է համեմատաբար նոր ճյուղի՝ գիտական սարքաշինության ստեղծմանը և ընդլայնմանը: Գիտության հաստատությունների տեխնիկական զինվածության անմիջական մակարդակով է կանխորոշվում հետազոտական աշխատանքների արդյունավետության աստիճանը:

Վերջապես, գիտության վրա արտադրության ներգործությունը դրսևորվում է նրանով, որ գիտության առաջադիմությունը, ընդհանուր առմամբ առաջ անցնելով մարդու կենսագործունեության նյութական ոլորտի զարգացումից, ձևավորվում է արտադրության հիման վրա և նրա պահանջմունքների բավարարման համար: Չէ որ գիտության նշանակությունն է արտադրության բազմազան հրատապ պրոբլեմների լուծումը: Իսկ այդ պրոբլեմները լուծելու համար պետք է դրանք իմանալ, տքնաջանորեն ուսումնասիրել և վերլուծել, ըստ էության ընդունել և իրացնել արտադրության կողմից ներկայացվող յուրօրինակ սոցիալ-տնտեսական պատվերը:

---

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄ. ՌԵԶԵՐՎՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ք. ՊԵՏՐՈՍՅԱՆ***

ԽՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ խնդիր դրեց գիտատեխնիկական առաջադիմության համակողմանի արագացման շնորհիվ առաջիկա մեկուկես տասնամյակում երկրի ժողովրդական տնտեսությունը փոխադրել ինտենսիվ ուղու վրա, դրանով իսկ արագացնել տնտեսական աճի տեմպերը, ստեղծել այնպիսի արտադրական պոտենցիալ, որն իր մասշտաբներով հավասարազոր լինի խորհրդային իշխանության անցած բոլոր տարիների ընթացքում կուտակվածին: Էկոնոմիկայի մասշտաբների այսպիսի ընդլայնումը պահանջում է խնայողության խստագույն ռեժիմ հաստատել արտադրության բոլոր օղակներում, հասնել այն բանին, որ քիչ ծախսումներով ավելի շատ արտադրանք ստացվի:

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում էլ նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների խնայողաբար օգտագործումը եղել է մեր էկոնոմիկայի զարգացման ռեզերվներից մեկը: Դա լրացուցիչ ռեսուրսներ է ստեղծում մեծացնելու նյութական ու կուլտուրական արժեքների արտադրության ծավալը և բարձրացնելու բնակչության բարեկեցության մակարդակը: Դա սոցիալիստական տնտեսավարման անխախտ օրենքն է, ինչպես նշեց ԽՄԿԿ XXVII համագումարը, արտադրական ճյուղերի, միավորումների, ձեռնարկությունների, տնտեսական բոլոր բջիջների գործունեության գնահատման հիմնական չափանիշը, էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ ուղին:

Դեռևս խորհրդային իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը դիմեց երկրի աշխատավորներին՝ կոչ անելով աչքի լույսի պես պահպանել և խնայողաբար օգտագործել հողը, նրա ընդերքը, հացը, ֆաբրիկաները, գործիքները, մթերքը, տրանսպորտը, սոցիալիստական սեփականությունը, ժողովրդական ամբողջ ունեցվածքը:

Վ. Ի. Լենինը խնայողության ռեժիմը համարել է տնտեսավարման սոցիալիստական մեթոդ: Պլանային տնտեսության պայմաններում, ըստ նրա, հասարակության բոլոր անդամները պետք է հավասարապես շահագրգռված լինեն խնայողաբար ծախսելու հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները: Խնայողության ռեժիմը օբյեկտիվորեն դառնում է տնտեսավարման մեթոդ, քանի որ սոցիալիզմն անսահման հնարավորություններ է բացում ռեսուրսների ռացիոնալ և արդյունավետ օգտագործման համար:

Վ. Ի. Լենինը անփույթ տնտեսավարներին հանդիմանում էր այն բանում, որ նրանք հոգ չեն տանում «... այն մասին, որպեսզի խնայեն իրենց տրված կոպեկը, և չեն ջանում այն 2 կոպեկ դարձնել...» (ԵԼԺ, հ. 45, էջ 20):

Խնայողության ռեժիմի կիրառման լենինյան պահանջը զարգացման արդի փուլում նոր հնչողություն է ստացել: Նա ոչ թե ժամանակավոր կոչ է, այլ սոցիալիստական տնտեսավարման մշտական պահանջ՝ ուղղված մեր հասարակության բոլոր անդամներին: Մեր երկիրը կդառնա ավելի ուժեղ ու ավելի հարուստ, եթե բոլոր աշխատավորները սովորեն խնայել աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեն, հումքի, նյութերի, վառելիքի յուրաքանչյուր գրամը, հանրային ամեն մի կոպեկը:

Խնայողությունը էկոնոմիկայի ինտենսիվացման և արտադրության արդյունավետ վարման գործոն է, ժողովրդական սեփականության բազմապատկման նպատակամբ աշխատավորների կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության հզոր միջոց: Այդ պահանջներն արտացոլվել են ԽՄԿԿ ծրագրում, որտեղ ասված է, որ «խնա-

ՊԵՏՐՈՍՅԱՆ ՔՐԻՍՏԱՓՈՐ ԱՐԱՅԻ— Տնտեսագիտության թեկնածու

ցգտագործվում այդ և այլ նպատակների համար, երբ կարելի է դրանց փոխարեն օգտագործել փոխարինող նյութեր:

Այսօր հանրային դաշտերում աշխատում են շուրջ 3 միլիոն տրակտոր, 2 միլիոն բեռնատար ավտոմեքենա, մեկ միլիոն զանազան տիպի կոմբայններ և այլ տեխնիկա, որոնք ամառային մեկ օրում օգտագործում են մինչև 280 միլիոն տոննա բենզին և դիզելային վառելանյութ: Բացի այդ, մեծ քանակությամբ էլ վառելանյութ անտնտեսվարության, թափթփվածության և այլ ճանապարհներով մատնվում է կորստի: Այստեղից էլ պարզ է դառնում, թե ինչքան հսկայական օգուտ կամ վնաս կպատճառի թեկուզ մեկ տոկոսով նրա խնայողությունը կամ գերածախսը: Երկրում տարեկան 8 միլիոն տոննա բենզին է գերայրվում այն պատճառով, որ ավտոհավաքակազմի փոխադրումը դիզելային շարժիչների հետ է մնում: Ջերմաէլեկտրակայանների սարքավորումների անկատարության պատճառով տարեկան ավելի քան 20 միլիոն տոննա պայմանական վառելիքի գերածախս է տրվում: Երկրում գործող հարյուր հազարավոր պարզունակ կաթսայատների վերակառուցման միջոցով հնարավոր է նրանց օգտագործած վառելիքի էներգիայի 75—80 տոկոսը խնայել և տրամադրել այլ նպատակների:

Մեծ են տրակտորների, ավտոմեքենաների և մյուս մեխանիզմների, դուրս գրած մեքենաների և նրանց մասերի վերականգնման ու կրկին օգտագործման ռեզերվները:

Հայտնի է, որ կենցաղի ոլորտում է սպառվում երկրի նյութական ռեսուրսների մեկ հինգերորդ մասը: Ուսումնասիրված է, որ տարեկան հացի 20 տոկոսը, կարտոֆիլի, սոխի 25—30 տոկոսը, գազի, ջրի, էլեկտրաէներգիայի 20—25, բնակֆոնդի 15 տոկոսը, անփույթ, անտնտեսվար օգտագործելու հետևանքով, մատնվում են կորստի, փչանում են: Մինչդեռ դրանց խելացի օգտագործումը ռեսուրսների զգալի խնայողություն կտա: Մի՞թե քիչ են անփույթ օգտագործված կոշիկների, հագուստի, կտորեղենի և տնային իրերի, կահ-կարասիների, ժամանակից շուտ մաշված առարկաների հասցրած վնասները: Դրանց գնման, վերամշակման կազմակերպումը երկրին մեծ չափերի հասնող օգուտ կտա:

Նյութական ռեսուրսների խնայողության և երկրորդային հումքի օգտագործման կազմակերպմանը խթանում են ցուցահանդեսները, որտեղ ցույց են տրվում նյութական արժեքների ռացիոնալ օգտագործման ռեզերվները, երկրորդային հումքի օգտագործման ձևերը, մեթոդները և տեխնոլոգիան: Կարևոր դեր են խաղում առաջավոր փորձի դպրոցները, սեմինարները հատուկ պարապմունքներ են նվիրում խնայողության ռեժիմին: Առանձին տեղերում կազմակերպվում են աշխատավորներից անօգտագործելի հացի, սննդամթերքի, հագուստեղնի, կենցաղային իրերի հավաքումն ու հետզնումը՝ դրանք որպես հումք կրկին վերամշակելու և նոր արտադրանք տալու համար: Այս ճանապարհով մեր հանրապետությունում անցյալ տարի վերամշակվել է մեծ քանակությամբ երկրորդային հումք:

ԽՄԿԿ XXVII համագումարը պահանջեց հասնել այն բանին, որ վառելիքի, էներգիայի, հումքի և նյութերի պահանջմունքների աճի 75—80 տոկոսը բավարարվի դրանց տնտեսման հաշվին, ազգային եկամտի էներգատարությունը նվազեցվի առնվազն 1,4 անգամ, իսկ մետաղատարությունը՝ գրեթե 2 անգամ, համալիր կերպով օգտագործվեն բնական ու նյութական ռեսուրսները, առավելագույն չափով կանխվեն կորուստները և ոչ ռացիոնալ ծախսերը, տնտեսական շրջանառության մեջ լայնորեն ընդգրկվեն երկրորդային ռեսուրսները, ինչպես նաև ուղեկից արգասիքները:

Հնգամյակի վերջին տարում պետք է ապահովվի 200—230 միլիոն տոննա օրգանական վառելանյութի տնտեսում, այդ թվում 75—90 միլիոն տոննա ատոմային էներգետիկայի զարգացման և էներգիայի վերականգնելի աղբյուրների օգտագործման հաշվին, 12—14 միլիոն տոննա սև մետաղների գլանվածքի տնտեսում: Շինարարության մեջ սև մետաղների գլանվածքի տեսակարար ծախսման իջեցում՝ 13—15 տոկոսով, ցեմենտինը՝ 8—10, փայտանյութերինը՝ 10—12 տոկոսով: Արդյունաբերության մեջ արտադրանքի և աշխատանքների ինքնարժեքը կիջնի 4—5 տոկոսով, շինարարության մեջ՝ 2—3, գյուղատնտեսության մեջ՝ 5—7 տոկոսով: Հայտնի է, որ արտադրանքի ինքնարժեքի երկու երրորդը գոյանում է նյութական ծախսումներից, 17 տոկոսը՝ աշխատավարձից և 8 տոկոսը՝ ամորտիզացիոն մուծումներից: Ուժեղացնելով խնայողության ռեժիմը, զգալիորեն կխնայվեն նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսները և արտադրության նախատեսված աճը կապահովվի դրանց հաշվին. դրա հետ միասին մեծ չափով կիջնի արտադրանքի ինքնարժեքը:



Շատ ու բազմազան են հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, աշխատանքի և ֆինանսական ռեսուրսների խնայողության ռեզերվները: Այսօր խնայողության ռեժիմով են աշխատում հանրապետության առաջավոր ձեռնարկությունները, շինարարական կազմակերպությունները, գյուղական տնտեսությունները: Խնայողության ռեժիմով են սկսել աշխատել նաև Զանգեզուրի ռեգիոնի արդյունաբերական, շինարարական, գյուղատնտեսական շատ ձեռնարկություններ և տնտեսություններ: Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատը, օրինակ, միայն հանքաքարի արդյունահանման վերամշակման, խտանյութի թողարկման ինքնարժեքի իջեցման, հումքի, նյութերի խնայողության հաշվին 1988 թվականին տվեց շուրջ 6 միլիոն ռուբլու խնայողություն, տնտեսեց 66,5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 16500 տոննա պայմանական վառելանյութ և մոտ 900 հազար ռուբլու դրամական միջոցներ: Կոմբինատը խնայողության ռեժիմը հաջողությամբ իրականացնում է նաև այս տարի: Առաջին կիսամյակում նա տնտեսել է 3,5 միլիոն ռուբլու նյութեր, հումք և պայքարում է մինչև տարվա վերջը այն հասցնել 7 միլիոնի:

Ղափանի լեռնահարստացուցիչ կոմբինատը քաղաքում էլեկտրաէներգիայի ամենամեծ սպառողն է: Հայաստանի ատոմակայանը լրիվ կանգնեցնելուց հետո կոմբինատը էլեկտրաէներգիան խնայողաբար օգտագործելու ուղիներ է որոնում: Այստեղ հզոր լամպերի փոխարեն տեղադրում են թույլ հզորության էլեկտրական լամպեր: Կոմբինատը լրիվ անցնում է մեկ սեկցիայով շուրջօրյա աշխատանքի, կանխում էլեկտրաէներգիայի կորուստները, աննպատակ օգտագործումն ու շռայլումները: Այդ ամենի շնորհիվ էլեկտրաէներգիայի օգտագործումն այս տարվա առաջին կիսամյակում պակասեց 6 անգամ, իսկ մինչև տարվա վերջը նախատեսված 432 հազար կիլովատ-ժամի փոխարեն կօգտագործվի ընդամենը 72 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Ղափանի լուսատեխնիկական գործարանը 1988 թվականի հունվարից աշխատում է ինքնաֆինանսավորման և լրիվ տնտհաշվարկի պայմաններում: Կիրառելով խնայողության ռեժիմ բոլոր օղակներում, ձեռնարկությունը հասավ բարձր արդյունքների: Պայմանագրային տարեկան պարտավորությունները կատարեց 100, ապրանքային արտադրության պլանը՝ 105,6 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն այստեղ իջել է 8,8 տոկոսով: Գործարանը տվել է շուրջ 2 միլիոն ռուբլու նյութերի, հումքի տնտեսում: Խնայողության բարձր արդյունքներ են արձանագրված նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում: Գործարանում նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ առաջին կիսամյակում խնայվեցին 1,5 միլիոն ռուբլու միջոցներ: Ձեռնարկության կոլեկտիվը ձգտում է մինչև տարեվերջ կրկնապատկել խնայված միջոցները: Ավելի քան 25 միլիոն ռուբլու խնայողություն են տվել նաև Ղափանի սննդի և թեթև արդյունաբերության, մեքենաշինության, քիմիական, շինանյութերի, անտառային, փայտամշակման, ավտոնորոգման և այլ ձեռնարկություններ, որոնք տարեկան թողարկում են 100 միլիոն ռուբլուց ավելի արտադրանք: Այս տարվա առաջին կիսամյակում նյութական, ֆինանսական և աշխատանքային միջոցների խնայողությունը հասավ 20 միլիոն ռուբլու: Ղափանցիները ձգտում են մինչև տարեվերջ տնտեսել 35 միլիոն ռուբլու արտադրական ռեսուրսներ և ֆինանսական միջոցներ:

Խնայողության ռեժիմը կիրառվում է Մեղրիի շրջանի արտադրական ձեռնարկություններում: Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը 1988 թվականին տնտեսել է շուրջ 3 միլիոն ռուբլու նյութեր, մեկ միլիոն ռուբլու ֆինանսական միջոցներ: Մի քանի միլիոն ռուբլու հումք, նյութեր և ֆինանսական միջոցներ են տնտեսել Մեղրիի մյուս ձեռնարկությունները: Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, աշխատելով տնտեսական հաշվարկով, ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը կատարել է 103,1, իսկ հանքաքարի հանույթինը՝ 102 տոկոսով: Դա վերջին տարիների ամենաբարձր ցուցանիշն է: Տնտեսավարման և խնայողության նոր մեխանիզմի անցնելիս կոմբինատում անցկացվեց բանվորական տեղերի ատեստացիա: Կարգավորվեց աշխատողների մասնագիտական կարգը: Քիչ թվաքանակով, երկու և ավելի մասնագիտությունների համատեղմամբ աշխատանքը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, նպաստում հումքի և նյութերի ռացիոնալ օգտագործմանը:

Ատեստացիա անցկացվեց նաև ինժեներատեխնիկական անձնակազմի և մյուս աշխատողների շրջանում: Դրանով էապես բարձրացավ կոլեկտիվի պատասխանատվությունը: Ձեռնարկությունում մեծ չափերով կրճատվեցին անարտադրողական ծախսերը, խնայվեցին հումքը, օժանդակ նյութերը, վերացվեց պակաս արդյունավետ երրորդ հերթափոխը և դրա շնորհիվ կրճատվեց գիշերային հերթափոխի ժա-

մանակ էլեկտրաէներգիայի օգտագործումը: Սակայն այստեղ բոլոր հարցերը չէ, որ լուծված են:

Անցյալ տարի Մեղրիի պահածոների գործարանն աշխատեց վնասով, բարձր էր արտադրանքի ինքնարժեքը: Ընթացիկ տարում, նոր տնտեսակարգի անցնելուց հետո, արդեն զգացվում են դրական տեղաշարժերը, բարելավվում են ֆինանսատնտեսական ցուցանիշները: Գործարանն այս տարվա առաջին եռամսյակում աշխատեց օգուտով, այն կազմեց 45 հազար ռուբլի: Ձեռնարկության աշխատողներն այժմ գործի նկատմամբ ցուցաբերում են հետևողականություն, սրտացավություն, խնայողաբար են ծախսում հումքը, էլեկտրաէներգիան: Այդ միտումներն առավել ևս ամրապնդվեցին հաջորդ եռամսյակում: Դրա հաշվին բանվորների աշխատավարձը նկատելիորեն ավելացել է, որը, սակայն, չի գերազանցում աշխատանքի արտադրողականության աճին: Ձեռնարկությունը ստեղծել է իր սեփական հումքի բազան, արդեն առաջին մի քանի հեկտարների վրա այս տարի տնկվել են թզենու, թթենու և այլ արժեքավոր ծառատեսակներ, որոնք բարեհաջող կերպով աճում են: Ձեռնարկությունը պայմանագրեր է կնքել միրգ արտադրող և իրացնող կազմակերպությունների հետ: Բոլոր հիմքերը կան պնդելու, որ նախկինում վնասով աշխատող ձեռնարկությունը այս տարվանից իր գործունեությունը կավարտի օգուտով՝ շուրջ կես միլիոն ռուբլու շահույթով և կապահովի կես միլիոն ռուբլու հումքի, նյութերի և ֆինանսական միջոցների խնայողություն:

Խնայողության խստագույն ռեժիմով են աշխատում Գորիսի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները: 1988 թվականին Ծինուհայրի ռետինե կոշիկի գործարանը տվել է շուրջ 2 միլիոն ռուբլու խնայողություն: Գորիսի «Զանգեզուր» արտադրամիավորումը տնտեսել է 1,8, տրիկոտաժի ֆաբրիկան՝ 1,9, «Միկրոշարժիչ» գործարանը՝ 1,7, սարքերի գործարանը՝ 2 միլիոն ռուբլու հումք, նյութեր, վառելիք, էլեկտրաէներգիա և ֆինանսական միջոցներ: Ամբողջությամբ վերցրած շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները անցած տնտեսական տարում խնայեցին շուրջ 20 միլիոնից ավելի արտադրական միջոցներ և դրա հաշվին լրացուցիչ արտադրեցին 30 միլիոն ռուբլու լայն սպառման ապրանքներ: Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարի ռեսուրսների խնայողության հաշվին մինչև տարեվերջ ժողովրդական տնտեսությանը լրացուցիչ կտան ավելի քան 40 միլիոն ռուբլու լայն սպառման ապրանքներ:

Շինարարական կազմակերպություններում, ուր անտնտեսվարության հետևանքով փչանում էին հազարավոր տոններով ցեմենտ, գազ և այլ շինանյութեր, այժմ խիստ վերահսկողություն է իրականացվում դրանց օգտագործման նկատմամբ: Խնայողության խիստ ռեժիմ է կիրառվում յուրաքանչյուր կիլոգրամ ցեմենտի, խորանարդ մետր շինափայտի, շինաքարի և մյուս նյութերի նկատմամբ: Արդեն առաջին կիսամյակում շրջանի շինարարները տվել են մի քանի միլիոն ռուբլու շինանյութերի խնայողություն:

Սիսիանի շրջանի տեղական արդյունաբերության և կենցաղային սպասարկման կոմբինատները, բժշկական տեխնիկայի, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման թողարկիչ-կարգավորիչ սարքերի, գյուղատնտեսական մթերքի վերամշակման գործարանները, շինանյութերի արտադրության և մյուս ձեռնարկությունները, աշխատանքները կազմակերպելով տնտեսական հաշվարկի, ինքնաֆինանսավորման, ինքնածախսածածկման և խիստ խնայողության մեթոդով, 1988 թվականին տնտեսեցին ավելի քան 10 միլիոն ռուբլու հումք, նյութեր և ֆինանսական միջոցներ: Շրջանի արտադրական ձեռնարկությունները տնտեսեցին ավելի քան 31 հազար տոննա պայմանական վառելիք և 65 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, շինարարական կազմակերպությունները՝ 15 հազար խորանարդ մետր շինափայտ, 12 հազար տոննա ցեմենտ և մեծ քանակությամբ շինաքար, ավազ և այլ նյութեր:

Տրիկոտաժի նորաստեղծ ֆաբրիկան վերջին մեկ տարում, աշխատելով տնտեսավարման նոր եղանակով, տվել է հարյուր հազարավոր ռուբլիների հումքի, նյութերի խնայողություն: Ֆաբրիկան արտադրում է ժամանակակից, հետաքրքիր կոմպոզիցիոն լուծումներով, նկարներով, դաջվածքներով բարձրորակ մանկական հագուստներ, սպորտային զգեստներ, որոնք բարձր պահանջարկ են վայելում բնակչության շրջանում: Ձեռնարկությունը թողարկում է 57 տեսակի արտադրանք, որից 3 մոդելը՝ «Նորույթ» նշանով: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները տնտեսել են 1,5 միլիոն ռուբլու արտադրական միջոցներ, իսկ շինարարական կազմակերպությունները՝ մեկ միլիոն ռուբլու շինանյութեր: Սակայն խնայողության ռեժիմի իրականացման գծով ռեգիոնում դեռ չօգտագործված ռեզերվներ շատ կան:



Շինարարության մեծ ծավալն ու թափը ռեգիոնի ղեկավարներին հարկադրում են ամեն տարի հեռավոր վայրերից դժվարանցանելի ճանապարհներով տեղափոխել մեծ քանակությամբ ցեմենտ, շինաքար, ավազ, գաջ և այլ շինանյութեր: Դա տասնյակ միլիոնավոր ռուբլիներ է նստում տնտեսությունների վրա, մինչդեռ Զանգեզուրը հարուստ է կրաքարերի, պեմզայի, ավազի, տարբեր գույնի բազալտի շինաքարերի հանքերով: Բացի այդ, շինանյութերի խոշոր բազա է նաև Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի հարյուր միլիոնավոր տոննաներով թափոնը, որը տասնյակ տարիների ընթացքում կուտակվել է Ողջի գետի հունում: Մասնագետները գտնում են, որ այդ թափոնները կարելի է օգտագործել սիլիկատային բետոնի և այլ շինանյութերի պատրաստման համար: Եթե այդ հումքին մոտ կազմակերպվի շինանյութերի արտադրություն, ապա տեղում կլուծվի դրանցով մատակարարելու հարցը, և տնտեսությունները 15—20 անգամ կկրճատեն շինանյութերի տեղափոխման վրա կատարվող ֆինանսական ծախսերը:

Հետաքրքրական է, որ Զանգեզուրի դաշտերում, քաղաքացիների մոտ մեծ քանակությամբ մետաղի ջարդոն կա: Դրանց հավաքումն ու օգտագործումը, անշուշտ, կտա տասնյակ միլիոնավոր ռուբլիների արդյունք:

Խնայողության մեծ ռեզերվներ կան նաև գյուղատնտեսության մեջ: Ամեն տարի այս ռեգիոնում անփութության և անտնտեսվարության պատճառով փչանում են տասնյակ հազարավոր տոննաներով մթերք, ինչպես և բենզին, քսայուղ, հանքային պարարտանյութեր: Դրանց անկորուստ պահպանումը և օգտագործումը ժողովրդական տնտեսությանը կտան տասնյակ միլիոնավոր ռուբլիների տնտեսական օգուտ:

Խնայողությունն է մեր զարգացման գլխավոր ուղին և պետք է օգտագործել նրա բոլոր ռեզերվները:

# ԳՈՐԾԵԼ ԲԱՑ, ՀՐԱՊԱՐԱԿԱՅՆՈՐԵՆ

Ջ. ԱՆԱՆՅԱՆ

ԽՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ դեմոկրատիայի, հրապարակայնության բաց դաս եղավ բոլոր կուսակցական կազմակերպությունների համար: Եվ նրա ոգով մեր՝ Իջևանի շրջանային կուսակցական կազմակերպության 44-րդ կոնֆերանսին նախապատրաստվելը կոմունիստներիս համար առաջնակարգ պարտականություն եղավ: Կուսշրջկոմում որոշեցինք կոնֆերանսի նախապատրաստմանը մասնակից դարձնել շրջանի բոլոր կոմունիստներին ու աշխատավորներին: Ամենից առաջ՝ լսել նրանց: Առանց բացառության բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում քննարկվեց շրջկոմի բյուրոյի հաշվետվությունը, որով հանդես էին գալիս բյուրոյի անդամները: Կոնֆերանսից շուրջ մեկ ամիս առաջ շրջանային թերթում հրապարակվեցին հաշվետվության թեզիսները, ավելի վաղ բացվել էր «Շրջանային կազմակերպության 44-րդ կոնֆերանսին ընդառաջ» խորագիրը: Գյուղերում և շրջկենտրոնի մարդաշատ, տեսանելի տեղերում դրվել էին կարծիքների հավաքման հարցարկղներ, շրջկոմում գործում էր հեռախոսային ընդունարան: Կոմունիստների և անկուսակցականների կարծիքները ուսումնասիրելու, վերակառուցման իսկական առաջամարտիկներին հայտնաբերելու համար շուրջ 50 կազմակերպություններում անցկացվեցին սոցիոլոգիական հետազոտություններ, անկետավորում, բանավոր հարցումներ, որոնց արդյունքները հաշվի առնվեցին կոնֆերանսի բանաձևի նախապատրաստման և շրջկոմի նոր կազմի ձևավորման ժամանակ:

Հաշվի առնելով հանդիպումների ընթացքում, ինչպես նաև շրջկոմին հասցեագրված բազմաթիվ նամակներում մարդկանց արտահայտած կարծիքները ու նաև անկետավորման արդյունքները՝ խախտեցինք նախկինում ընդունված կարգը և շրջկոմի հաշվետվությունը սկսեցինք սոցիալական բնույթի հարցերի վերլուծությունից: Ընդ որում, սկզբունքային դիրքերից վերհանեցինք պարենային և բնակարանային պրոբլեմների իրականացման, սպասարկման ոլորտի կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները, նշեցինք դրանց վերացման, ավելի արագ առաջընթացի ուղիներ:

Կոնֆերանսի նախապատրաստության ընթացքում առանձնապես կարևոր ուշադրություն նվիրեցինք շրջկոմի ներկա կազմի հրապարակային և դեմոկրատական ձևավորմանը: Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում սկզբնական կուսկազմակերպությունները, շրջանային 44-րդ կոնֆերանսի պատգամավորների ընտրության հետ համատեղ, առաջին անգամ առաջադրեցին նաև շրջկոմի իրենց թեկնածուներին, որոնց մասին պարբերաբար հոդվածներ էին տպագրվում շրջանային «Լենինյան ուղիով» թերթում:

Շրջկոմի նորընտիր կազմի ճիշտ ձևավորմանը զգալիորեն նպաստեց այդ նպատակով նրան առընթեր ստեղծված հանձնաժողովը, որի կազմում ընդգրկվել էին կուսակցության և աշխատանքի վետերաններ, արտադրության առաջավորներ, կուսակցական, խորհրդային աշխատողներ: Հանձնաժողովի անդամները կոնֆերանսի

ԱՆԱՆՅԱՆ ՋԵՄՄԱ ԳՈՒՐԳԵՆԻ— ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար:



նախապատրաստության ընթացքում մշտապես լինում էին տեղերում, զրուցում կոմունիստների, անկուսակցականների, ինչպես նաև շրջկոմի կազմի համար հաշվետու-ընտրական ժողովներում առաջադրված թեկնածուների հետ, ձգտում էին ճանաչել մարդկանց, իմանալ, թե նրանք ինչ կենսադիրք ունեն, ինչպիսի հեղինակություն են վայելում իրենց աշխատանքային կոլեկտիվում: Եվ ահա կոնֆերանսում ձևավորվեցին ընտրովի մարմինները: Ընդ որում, կուսշրջկոմի և վերստուգիչ հանձնաժողովի կազմերում ընտրվածների մոտ 46 տոկոսը բանվորներ և կոլտնտեսականներ են, 32 տոկոսը՝ կանայք, 55 տոկոսն ունի բարձրագույն կրթություն: Նորընտիր շրջկոմի և վերստուգիչ հանձնաժողովի անդամ-թեկնածուների 57,8 տոկոսը չի եղել նախկին կազմերում:

Շրջկոմը, իր առաջնահերթ խնդիրներից մեկը համարելով պլենումների դերի և արդյունավետության բարձրացումը, մեծ ուշադրություն է դարձնում դրանց նախապատրաստման ձևերի ու մեթոդների նորացմանը, հրապարակայնության ապահովմանը: Այսպես, անցած տարի կուսշրջկոմի հերթական պլենումը քննարկել է շրջկոմի բյուրոյի հաշվետվությունը վերակառուցման ղեկավարման ասպարեզում տարվող աշխատանքի մասին: Դրան նախորդել էր նախապատրաստական լուրջ ու ծավալուն աշխատանք: Նպատակը ոչ թե զեկուցման համար բազմաթիվ տեղեկանքների ու ինֆորմացիաների հավաքումն էր, ելույթների «խմբագրումն» ու պլենումի անցկացման «սցենարի» կազմումը, ինչպես արվում էր նախկինում, այլ, առաջին հերթին, շրջանում իրականացվող վերակառուցման աշխատանքների, առկա պրոբլեմների ու խնդիրների կոլեկտիվ քննարկումն ու դրանց լուծման ուղիների որոնումը:

Պլենումի նախապատրաստման ժամանակաշրջանում հրավիրեցինք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն, հանդիպումներ և զրույցներ շրջկոմի բյուրոյի անդամների, կուսակցական, խորհրդային, տնտեսական ղեկավար աշխատողների, արտադրության առաջավորների հետ: Լայն քննարկման դրվեցին պլենումի զեկուցման թեզիսները ու որոշման նախագիծը: Հաշվի առնվեցին նաև շրջանային թերթում տրված հայտարարությանը արձագանքողների՝ գործին օգնող դիտողությունները ու առաջարկությունները: Շրջկոմի աշխատանքի մասին հասարակական կարծիքի ուսումնասիրման համար անցկացվեց անկետավորում: Պլենումը դարձավ վերակառուցման կուրսից բխող շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների ու պրոբլեմների, դրանց լուծման ուղիների որոնման, վերակառուցման կուսակցական ղեկավարման մասին նախապատրաստական շրջանում ծավալված խտապահանջ և գործնական խոսակցության օրգանական շարունակությունը: Այն անցավ կոնկրետ, հասցեագրված քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, պլենումի մասնակիցների ակտիվության պայմաններում: Այդտեղ էր, որ սկզբունքային և լուրջ խոսակցություն ծավալվեց սոցիալական ոլորտի՝ մեզանում դեռևս առկա պրոբլեմների ու թերությունների և դրանց առաջնային լուծում տալու անհրաժեշտության շուրջ:

Գործնական ընթացք են ունեցել նաև կուսշրջկոմի՝ «ԽՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումի որոշումների կենսագործման խնդիրների մասին» և «ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի որոշումների լույսով ազգաբնակչությանը պարենային մթերքներով մատակարարումը բարելավելու ասպարեզում շրջանի կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների խնդիրների մասին» օրակարգերով. անցկացված պլենումները:

Կուսշրջկոմին առընթեր մենք ստեղծել ենք սոցիալ-տնտեսական զարգացման կարևորագույն ուղղությունների մշտական գործող հանձնաժողովներ, որոնք ձեռնամուխ են եղել իրենց պարտականությունների կատարմանը: Ձևավորված հին ստերեոտիպերի վերացման շնորհիվ մեր ընդունած որոշումները դարձել են ավելի կոնկրետ, իսկ դրանց կատարման նկատմամբ հսկողությունը, շրջկոմի համապատասխան բաժինների հետ միասին, կոչված են իրականացնելու նաև այդ հանձնաժողովները:

Ընդունած որոշումների արդյունավետության բարձրացման, աշխատանքում հրապարակայնության ապահովման նպատակով լայնորեն կիրառվում է բյուրոյի նիստերում ու պլենումներում դրանց կատարման ընթացքի և արդյունքների մասին հաղորդում տալու պրակտիկան: Այսպես, վերջերս պլենումում լսվեց արդյունաբերության և տրանսպորտի նախկին բաժնի ինֆորմացիան շրջկոմի 1987 թ. հոկտեմբերի 30-ի պլենումի՝ «ԽՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսով շրջանում բնակարանային պրոբլեմի լուծման գործում տեղական կուսակցական, խորհրդային

Յուրաքանչյուր ամսվա առաջին ուրբաթ օրը շրջկոմում անցկացնում ենք «Սկզբնական կուսկազմակերպության քարտուղարի օր», իսկ տեղերում՝ արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների և կուսխմբավարների օրեր: Այդ օրը շրջկոմի քարտուղարներից որևէ մեկը սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին մանրամասն ինֆորմացիա է տալիս անցած ամսվա ընթացքում հանրապետության, շրջանի մասշտաբով տեղի ունեցած կարևոր իրադարձությունների մասին, հաղորդում, թե ինչ ուղղությամբ է աշխատում շրջկոմը, ինչպիսի հարցեր ու պրոբլեմներ են անհանգստացնում նրան և հրահանգավորում է նրանց առանձին հրատապ խնդիրների վերաբերյալ: Այդ աշխատանքներն առավել ակտիվացել են վերջին մեկուկես տարում:

Լեռնային Ղարաբաղի և նրա շուրջն ստեղծված իրադարձությունների հետևանքով հանրապետությունում տիրող շիկացած իրավիճակը որոշակի սրբագրումներ մտցրեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կառուցվածքում: Մասսայական միջոցառումները, որքան էլ դրանք հրապուրիչ ու մնայուն են, իրենց տեղը զիջեցին կոնկրետ, տեղայնացված միջոցառումներին, շեշտավորված բնույթ ստացավ անհատական աշխատանքը: Շրջկոմի ու նրա բյուրոյի անդամները, խորհրդային, տնտեսական բոլոր պատասխանատու աշխատողները իրադարձությունների թեժ օրերին և այժմ էլ պատասխանատվություն են կրում կոնկրետ արտադրական կոլեկտիվի ու բնակավայրի համար: Ըստ բնակության և աշխատանքի վայրի գաղափարախոսական, մասսայական-քաղաքական հերթապահ միջոցառումները վերածվել են ամենօրյա կոնկրետ ու նպատակասլաց գործունեության: Ուժեղացվում է սոցիալական արդարության համար մղվող պայքարը: Եվ հենց դա էլ մասսաների շրջանում ամրապնդում է հավատը կուսակցական, քաղաքական խոսքի հանդեպ: Ասենք նաև, որ շրջանի աշխատավորները, ճիշտ ընկալելով Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի խաղաղ լուծման անհրաժեշտությունը, ցուցաբերեցին կամք ու քաղաքական զգոնություն, անցանկալի միջադեպերի տեղիք չտվին:

Ներկուսակցական աշխատանքի, կադրային քաղաքականության դեմոկրատացումը դրական ազդեցություն են ունեցել շրջանի տնտեսական ցուցանիշների վրա: Արդյունաբերական ձեռնարկություններում շահույթները նախորդ հնգամյակի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել են 37 տոկոսով: Ի տարբերություն նախորդ տարիների՝ վերջին երկու տարիներին կատարվել են արտադրանքի առաքման պայմանագրային պարտավորությունները, աշխատանքի արտադրողականությունը 1988 թ., տասներկուերորդ հնգամյակի միջին տարեկանի համեմատությամբ, աճել է 18 տոկոսով, ապահովվել է արտադրության ծավալների 17 տոկոս աճ: Ուրախացնող է, որ առավել բարձր ցուցանիշներ են ապահովել լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատող շրջանի երեք ամենախոշոր ձեռնարկությունները՝ գորգի, «Իջևանի բենտոնիտ», փայտամշակման կոմբինատները:

Կայուն ցուցանիշները առկա են նաև գյուղատնտեսության մեջ: Կատարվել են պետությանը հիմնական մթերքների վաճառքի պլանները, ապահովվել է դրանց արտադրության ծավալների, մթերատվության և բերքատվության դինամիկ աճ: Ընթացիկ հնգամյակի անցած տարիների և նախորդ հնգամյակի մթերատվության և բերքատվության միջին ցուցանիշների համեմատությունը ցույց է տալիս, որ զգալիորեն ավելացել են մեկ կովի կաթնատվությունը, մթերակայան հանձնած տավարի միջին քաշը, հացահատիկի, խաղողի, ծխախոտի, պտղի և բանջարեղենի բերքատվությունը: Հատկանշական է, որ վերջին տարիներին թեև խաղողի այգետարածությունները նվազել են շուրջ 300 հեկտարով, սակայն այդ կուլտուրայի մթերումների ծավալը աճել է 25 տոկոսով:

Վերջին երեք տարիներին շրջանում շուրջ 2,5 անգամ մեծացել է կապիտալ [illegible]րությ[illegible]ն ծավալը, որի 65 տոկոսը կազմում է սոցկուլտօբյեկտների շինարարությ[illegible] [illegible]յդ ժամանակաշրջանում կառուցվել և շահագործման են հանձնվել շուրջ 21 մլն ռուբլի ընդհանուր նախահաշվային արժեքով 45 տարբեր նշանակության օբյեկտներ՝ 19 բնակելի շենք, գյուղական երկու մանկապարտեզ, կենցաղի տներ և այլն: Ներկայումս ընթացքի մեջ է 40-ից ավելի մեծ և փոքր տարբեր նշանակության օբյեկտների շինարարությունը, որոնց նախահաշվային արժեքը կազմում է ավելի քան 40 մլն ռուբլի: Անհամեմատ մեծացել են տնտեսական եղանակով կատարվող շինարարության ծավալները: 1985 թ. 300 հազարի փոխարեն, 1988-ին այդ եղանակով իրականացվել է շուրջ չորս մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանք: Վերջին երեք տարում շահագործման հանձնված բնակելի մակերեսը նախորդ հնգամյակի մակարդակը գերազանցում է երկու անգամ, ներկայումս ընթացքի մեջ է 20-ից ավելի բնակելի շենքերի և շուրջ 90 առանձնատների շինարարությունը, 1985 թ. համեմատությամբ գրեթե տասնապատկվել է բնակավայրերի բարեկարգման և կառուցապատման աշխատանքների ծավալը:

Սակայն կատարվածը ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի, ԽՄԿԿ Կենտկոմի 1988 թ. հուլիսյան, ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումների որոշումների լույսով գնահատելու դեպքում դժվար չէ տեսնել, որ կուսշրջկոմի, նրա բյուրոյի աշխատանքում քիչ չեն թերությունները ու բացթողումները, որ դեռևս խիստ դանդաղ է ընթանում վերակառուցման պրոցեսը, ցածր է կուսակցական ղեկավարման մակարդակը: Շրջանի էկոնոմիկայում դեռևս լուրջ անելիքներ կան արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման առումով, արդյունաբերության և շինարարության մեջ արդյունավետ չեն օգտագործվում առկա ռեզերվներն ու հնարավորությունները, չի հաջողվել ապահովել ռիթմիկ աշխատանք, չնայած աճին, անասնապահական մթերքների ցուցանիշներով շրջանը զիջում է հանրապետական միջին մակարդակը, ընդհանրապես ցածր է արտադրության վարման կուլտուրան:

Թերությունները քիչ չեն նաև սոցիալական ոլորտում: Դեռևս բավարար չի կատարվում բնակչության պարենավորումը, դանդաղ են բնակարանային, ազատ աշխատուժի տեղավորման պրոբլեմների լուծման տեմպերը, արմատական բարելավման կարիք ունեն սպասարկման կուլտուրան և որակը:

Կուսակցության XIX համամիութենական կոնֆերանսի պահանջների ոգով դանդաղ է վերափոխվում կուսակցական, գաղափարաքաղաքական աշխատանքը: Հանգել ենք այն եզրակացության, որ այլևս այդպես շարունակել չի կարելի: Ի՞նչ անել: Մեծ գործարարությամբ ձեռնամուխ ենք եղել շրջկոմի հերթական պլենումի նախապատրաստմանը: Փորձում ենք այն անցկացնել ոչ ընդունված ձևով: Հարցը դրվում է ուղղակիորեն. կուսակցական աշխատանքում այն ձևերն ու մեթոդներն են հնացած, որոնք իրենց չեն արդարացնում: Ի՞նչն է խանգարում վերակառուցման ընթացքին: Հրաժարվել հնացած, քարացած աշխատաձևերից, դրանք փոխարինել նորերով: Այս հարցադրումներից ելնելով, խորհրդակցելով կուսակցական ակտիվի, կոմունիստների ու աշխատակիցների հետ՝ կուսշրջկոմը նախապատրաստել է համապատասխան երաշխավորություններ կուսակցական աշխատանքի վերափոխման, նորացման համար: Դրանք շրջանային թերթի միջոցով ներկայացվել են շրջանի կոմունիստների, հասարակության դատին:

Լուրջ անելիքներ կան կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների գործունեության սահմանազատման, խորհուրդների, հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման բարելավման, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության ուժեղացման, նրանց դերի ու հեղինակության, գաղափարաքաղաքական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում:

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԵՆՔ

## ԶՐՈՒՅՑ ԵՐԿՐՈՐԴ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ մարդկային հասարակության կենսագրությունն է: Մարդկային հասարակության և բնության, այսինքն՝ այն միջավայրի, որն ինքն էլ փոփոխվում է իրեն տեր դարձած հասարակության հետ՝ պայմանավորելով նրա զարգացման ընթացքը, ինքն էլ իր հերթին փոփոխվելով այդ ընթացքի հետ, հաճախ դառնալով նրա կցորդն ու հավելվածը:

Մեծ մտածողները միշտ էլ բարձր են գնահատել պատմական գիտությունը՝ որպես հասարակական մտածողության ողնաշարը և ուղեցույցը: Իսկապես, ի՞նչ վայրիվերությունների կենթարկվեր մարդկային կյանքը, հասարակության առաջաքայլերն ինչպե՞ս կդառնային հնարավոր, եթե չարձանագրվեր փորձը, եթե եկող սերունդները չառաջնորդվեին նախորդների դասերով: Խոսքն, իհարկե, ճշմարիտ պատմության մասին է, այն փորձի և դասերի, որոնք հաղորդվում կամ փոխանցվում են անեղծ վիճակում: Դրա համար էլ աղբյուրների անաղարտությու՛ն՝ առաջին հերթին:

Շուրջ քսան տարի առաջ Երևանում հյուր էր Վիեննայի Մխիթարյան միաբանության վանահայրը: Հանդիպման հրավիրեցին մեր պատմության ինստիտուտ: Եվ հարցազրույցի ժամանակ մերոնցից մեկը նրան այսպիսի հարց տվեց:

— Ձեր «Հանդես ամսօրյան» ամեն ինչի մասին հրապարակումներ է տպագրում: Ձեր ուսումնասիրություններում քննության եք առնում պատմական ամեն տեսակ հարց ու երևույթ: Ինչո՞ւ ոչինչ չեք գրում մեր զարգացած սոցիալիստական հասարակարգի մասին:

Հարց տվողը մեկն էր նրանցից, որոնք այդ տարիներին փառաբանում էին հասունացած թե զարգացած սոցիալիզմը և հետո էլ բերանների ջրերն էին գնում:

Մեր հոգևորականը դժկամությամբ խոսքերն իրար բերեց, բայց, այնուամենայնիվ, մտքինն ասաց:

— Ձեր սոցիալի՞զմը... ձեր զարգացած, թե ի՞նչ տեսակ սոցիալիզմը, որ կառուցել եք, թե կառուցում եք... ձեր գործն է, դեմ չեմ,— այսպես կերկերաց նա:— Բայց միայն հարյուր տարի հետո, երբ ես չեմ լինի, իսկ ձեզանից ոմանք անպայման կլինեն... Այո՛, միայն հարյուր տարի հետո նրա մասին ճշմարիտ ու արդար խոսքը կասվի... Իսկ հիմա ինչի՞ զուր տեղը թուղթ փչացնենք:

Հարց տվողն իր դիրքը հեշտությամբ զիջողներից չէր: Համառեց, և ծերունին վերստին հիշեցրեց, թե պատմություն է այն, ինչի վրայից առնվազն հարյուր տարի է անցել:

— Ձեր կարծիքով, ուրեմն, մենք անպտուղ գործո՞վ ենք զբաղված:

— Ես չգիտեմ՝ դուք ինչով եք զբաղված: Բայց կցանկանայի, որ ժամանակակիցներն ազնվամտությամբ արձանագրեին երևույթները, անցուդարձերը և մեկ էլ... դուք ինչպե՞ս կըսեք՝ փաստե՞րը...

Ուրեմն, ազնվամտությամբ արձանագրված փաստերը, անխեղաթյուր փաստաթղթերը, կենսական նյութը բազմակողմանիորեն ներկայացնող աղբյուրները պիտի դառնան այն ամուր ու անխախտ հիմքը, որի վրա հարյուր թե հազար տարի հետո կանգնելու է պատմության շենքը: Իրական ու ճշմարի՛տ պատմության:

Պատմության սպասավորները հիմա մի արտասովոր խանդավառություն են ապրում հրապարակայնության խոստումներով իրենց դեմ բացվելիք դռների, արխիվային գաղտնարանները արևերես հանելու հեռանկարից: Հասկանալի է, որ շատ բան պիտի պարզվի, պատմության ճերմակ ու սև շատ կետեր պիտի վերանան, որովհետև ուսումնասիրողի առջև աղբյուրները բացվելու են մինչև հատակ, և բյուրոկրատն այլևս երկաթե պահարանում կամ երկաթե վարագույրի հետև հոգեպահուստ չի ունենալու:

Բայց այդ թղթերը, փաստաթղթերն ու մնացած ամեն տեսակ աղբյուրնե՞րը: Նրանք շա՞տ են վստահելի, իսկապե՞ս անցյալ իրականությունը ներկայացնում են հարազատ ու բազմակողմանի տվյալներով: Չէ որ մեզանից ամեն մեկն իր շրջապատի մասին վկայող ամեն տեսակ փաստաթղթերի ու սեփական ընկալումների միջև այնպիսի անդունդներ կարող է ցույց տալ, որ հաճախ կարելի կլինի մտածել, թե այդ փաստաթղթերը և առհասարակ բազմատեսակ աղբյուրները հենց նրա համար էլ ստեղծվել են, որպեսզի քողարկեն, աղավաղեն պատմական իրականությունը, հնարավորություն տան այն գլխիվայր ներկայացնելու: Նույնիսկ սովորական արձանագրությունները, փաստերի այնպիսի հաստատումները, որոնք, թվում է, պետք է առնվազն լուսանկարչական պատկերի արժեք ունենան...

Հիմա ես ձեզ կներկայացնեմ պատկերը մի փաստաթղթի, և դուք կտեսնեք, թե այն ինչպես է խեղաթյուրում իրական փաստը:

Վերջերս կարդացի Ա. Անտոնով-Օվսեենկոյի աշխատությունը չարագործներ Բերիայի, Բաղիրովի ու սրանց գործակիցների մասին, և ուշադրությունս բևեռվեց Բաղիրովի վերջին խոսքին՝ արտասանված ռազմական տրիբունալի նիստում: Հեղինակը, հավանաբար, դատական արձանագրությունից, մեջ է բերում Բ-ի վերջին խոսքը, որից ես քաղում եմ հետևյալը. «Այստեղ փորձում են ինձ վերագրել գործողություններ, որոնց համար պատասխանատվություն է կրում ոչ այլ ոք, քան Ստալինը: Ինձ բավական է և իմ անձնական մեղքը, առանց նրան, և ես չեմ ցանկանում արդարանալ: Բոլոր ներկա գտնվողներին հայտնի է, որ ես կատարել եմ Գլխավոր քարտուղարի կամքը և կուսակցության Անդրկովկասյան երկրկոմի առաջին քարտուղարի կարգադրությունները, ինչպես և ազգային հանրապետությունների կենտկոմների մնացած քարտուղարները: Բայց ես գիտեմ, թե ինձ ինչ է սպասում, և ձեզանից ներում չեմ խնդրում» (Антон Антонов-Овсеенко, «Карьера палача», «Знамя», 1989, № 5, стр. 109):

«Ձեզանից ներում չեմ խնդրում»: Սա, իբր, Բ-ի վերջին խոսքն է՝ տրիբունալի վճիռը կարդալուց առաջ:

Ես ներկա եմ եղել հիշյալ դատավարությանը և եթե ոչ բառացի, ապա ըստ հիմնական էության, հիշում եմ ադրբեջանական չարագործի վերջին խոսքի համարյա բոլոր նախադասությունները: Այնտեղ նա իրեն ներկայացնում էր որպես կուսակցության «հին ու հավատարիմ գամփռը» «Я старий и верный пёс партии») և խնդրում էր հնարավորություն տալ իրեն՝ քավելու բոլոր այն մեղքերը, որ գործել է կամա թե ակամա... Եվ նույնիսկ հույս հայտնեց, թե կտրվի այդ հնարավորությունը...

Ո՞ւր են այս խոսքերը: Մի՞թե կեղծելով մեղսականի վերջին խոսքի այս նախադասությունները, դատարանի քարտուղարները մտածել են, թե ավելի հարազատորեն պիտի ներկայացնեն ճարահատյալ խոստովանությունը, որից միշտ էլ անբաժան էր խուսանավելու, այս արևի տակ դեռևս ապրելու, «գործելու» հույս փայփայող ճիվաղը: Եվ այս ամենը կատարվել է մի հսկայական (Բաքվի Ձերժինսկու անվան դահլիճը լեփ-լեցուն) հասարակության ներկայությամբ: Ինչպե՞ս են «խըմբագրել», հեռացել իրականի, ճշմարտության ոգուց: Հիմա ինչպե՞ս հավատաս այն փաստաթղթերին, որոնք ստեղծվել են ո՛չ այսքան շատ վկաների ներկայությամբ: Ո՞վ և ինչպե՞ս պիտի աղբյուրներից քամի բուն ճշմարտությունը: Ականատեսների օժանդակությամբ գուցե և հնարավոր լինի ինչ-որ բանի հասնել: Իսկ հարյուր տարի հետո որտեղի՞ց պիտի ականատես գտնեն:

Մեր ժողովուրդն ապրում է իր բազմահազարամյա դժվար պատմության ամենաճակատագրական պահերից մեկը: Շուտով կլրանա երկու տարին, ինչ Արցախ աշխարհի հայությունը ոտքի է կանգնել թոթափելու տասնամյակներ առաջ չարերի ձեռքով իր ուսերին դրված անարգ լուծը: Ինչպես և պետք էր սպասել, արցախյան ընդվզումն անմիջապես պարուրեց ամբողջ հայությանը՝ բուն հայրենիքում և Սփյուռքում, համերաշխության արձագանք գտավ աշխարհի շատ երկրներում, ազգերի ազատությունն ու իրավունքները հարգող շատ ժողովուրդների կողմից: Բավական է ասել, որ ԱՄՆ-ի կառավարական շրջաններում այն նույնիսկ արժանացավ որոշման, որը չի կարող անհետևանք անցնել:

Արդար պայքարի յուրաքանչյուր օրը լի էր ազատասիրական կամքի, համառ ոգորումի ահռելի ցնցումներով, որովհետև եթե բախումների մի թևում կանգնած էր արցախյան հիմնահարցի վերջնական լուծման համար ասպարեզ եկած հայկական հանրությունը, մյուսում՝ ստրկացնողի չար ու բութ բնազդներով մոլեգնած գործում էր ադրբեջանական կողմը:

Հակառակորդի դիրքը չէ, որ ինձ թելադրում է ադրբեջանական կողմի առաջմղիչը համարել «ստրկացնողի չար ու բութ բնազդները»: Ա՛յդ է ճշմարտությունը, որն անհնար է այլ կերպ կոչել: XX դարի վերջին քառորդում, երբ աշխարհի ամենահետա-

մնաց երկրներում անգամ վերացվել են գաղութակալական կարգերը, և գաղութաբարները, իրենց թերևս լուսավորական-քաղաքակրթիչ դերն ավարտած համարելով, մեծահոգաբար հեռանում են գաղութներից, ադրբեջանական բռնությունը կառչել է Արցախի փեշից և պոկ չի գալիս: Այժմ արդեն լոկ փեշի՞ց, որովհետև Արցախն ինքն Ադրբեջանից իրեն բաժանել է մարզային խորհրդի 1988 թ. փետրվարի 20-ի որոշումով և այլևս ապօրինի, գաղութացման վերադարձնող ոչ մի կապ չի ճանաչում:

Նկատի առնելով շուրջ երկու հազար տարվա հարևանությունը, կարելի էր մտածել, թե արցախահայն ու ադրբեջանցին իրար լավ են ճանաչում: Մանավանդ հայը՝ ադրբեջանցուն: Երբ Ասկերանում ձախողված ադրբեջանական ոհմակները ետ փախան և Սումգայիթի անպաշտպան հայերի վրա շրջեցին իրենց վայրենի կատաղությունը, Արցախում մտածում էին, թե դա արդեն վերջն է. օրինապահ երկրի վերին իշխանությունն ըստ էության կգնահատի խորհրդային երկրի տարածքում, նույնիսկ ցարական ինքնակալության սահմաններում երբեք չեղած-չտեսնված այդ բարբարոսությունը և կմտածի, թե ինկապես անհնար է մեկ հանրապետության դրոշի տակ ապրել այսօրինակ մարդակերների հետ:

Տարաբախտաբար այդպես չեղավ: Տևական քաշքշուկով, պաշտոնական, հատկապես լրատվական մարմինների ստեղծած մշուշի մեջ Սումգայիթն այնպես լուծվեց, անէացավ, որ այսօր նույնիսկ վտանգ կա, թե նրա մեղքն էլ կարող է հայերի վրա բարդվել: Չէ՞ որ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի երկրորդ նստաշրջանի հենց առաջին օրվա (1989 թ. սեպտեմբերի 25) նիստում, երբ խոսք էր գնում Ադրբեջանի կողմից Արցախն ու Հայաստանը շրջափակելու և դրանով իսկ պատերազմական վիճակ ստեղծելու մասին, ավելորդ չհամարվեց շեշտել՝ չնայած դրա համար հիմքեր եղե՞լ են: Ուրեմն, հայկական կողմը հիմքեր է ստեղծել, այսինքն՝ ստիպել է, որ Ադրբեջանը դիմի շրջափակման՝ ժողովուրդների փոխհարաբերությունների մեջ ամենադաժան միջոցառմանը: Իսկ եթե նկատի առնենք, որ դա արվել է ահավոր երկրաշարժի հետևանքներից դեռևս տնտեսական ու հոգեբանական հեղձուկ ապրող մի ժողովրդի դեմ, ապա մարդկային լեզուն կատարվածի համապատասխան բառը դեռ չունի:

Այս վերաբերմունքն ադրբեջանցի մտավորականներին հենց այն գլխից անսահման հնարավորություն ընձեռեց՝ ստեղծելու և ապարեզ քաշելու իրականության այնպիսի պատկերներ ու պատկերացումներ, դեպքերի ու երևույթների այնպիսի մեկնաբանություններ, որոնք ամեն մի բանական հասարակության աչքում կարող են խելագարության կամ բարոյական նորմերի ապականության արդյունք երևալ: Եվ իբրև այս ամենի պսակ՝ Ադրբեջանի ղեկավարի ելույթը (1989 թ. սեպտեմբերի 17-ին), Հայաստանի ու Արցախի շրջափակման ամենամղձավանջային օրերին, երբ միութենական հեռուստատեսության «Ժամանակ» ծրագրում նա ձեռքը սրտին դրած երդվում էր, թե ամբողջ Ադրբեջանը, իր ժողովուրդը Հայաստանի հանդեպ տածում են ամենաջերմ եղբայրական զգացումներ:

Ուրեմն, այդ «ամենաջերմ եղբայրական զգացումների» դրդումով է, որ նրանք աշխարհի աչքի առաջ կազմակերպեցին սումգայիթցի հայերի սպանդը և հիմա էլ շրջափակման մեջ են առել Հայաստանն ու Արցախը:

Առայժմ այդքանն են կարողանում...

Պատմությունը ոչինչ չի մոռանում: Այս մեծ ճշմարտությունը հիմա բոլորն են հասկանում, նույնիսկ բարբարոսները, որոնց առաջներում թյուրիմացաբար վերագրում էին արհամարհանք կամ անուշադրություն հեռու-մոտիկ անցյալի նկատմամբ (Ա. Ս. Պուշկին):

Հիմա բարբարոսներն անգամ փոխվել են և պատեպատ են զարկվում պատմություն շինելու համար: Ինչպե՞ս պատմությունը: Ամիսներ առաջ տխրահռչակ Զիա Բունիաթովն իրենց ակադեմիայի «Էլմ» («Գիտություն») թերթում հոդված էր տպագրել Սումգայիթի մասին և, իբր, միայն իրեն հայտնի աղբյուրներով ներկայացնում էր մեկ տարուց ավելի աշխարհին հայտնի չարագործության «ճշմարիտ» պատկերը: Պնդում էր, թե հայերը, որոնք 1915-ին Թուրքիայի արևելյան նահանգներում թուրք խաղաղ բնակչության ջարդեր էին կազմակերպել և աշխարհին հավատացրել, թե թուրքերն են իրենց կոտորել, 1988 թ. փետրվարի վերջում մի այդպիսի ներկայացում էլ տվին Սումգայիթում:

Ահա թե իրողությունն ինչպես է ներկայացնում Զ. Բունիաթովը. «Սումգայիթյան ողբերգությունը հայ ազգայնամոլների կողմից նախօրոք մտածված կերպով ծրագրված էր: Նրա սկզբից մի ժամ առաջ թաքուն քաղաք են թափանցել հայ հեռուստա ու ֆոտո-լրահաղորդողները և նրանք արդեն սպասում էին: Եվ առաջին հանցավոր գործողությունը, ադրբեջանցու կերպարի ներքո, իրականացրեց մի ոմն Գրիգորյան՝ անձամբ սպանելով սումգայիթցի հինգ հայի: Դե, իսկ հետագան, ինչպես ասում են, «տեխնիկայի» գործ էր» («Элм», 1989, № 19):

Տեսնու՞մ եք՝ ինչ հրաշքներ են լինում այս աշխարհում: Հայերն իրենք իրենց կոտորել են, միաժամանակ այդ «հերոսության» դրվագները լուսանկարել ու տեսագրել նախօրոք հրավիրված հայրենակիցների միջոցով... Եվ հիմա էլ աշխարհը լցրել են սեփական մեղքն ադրբեջանցիների վրա բարդող աղմուկով: Ըստ երևույթին այն մի քանի դեպքերն էլ, որոնց շուրջ թղթակիցներն առաջին օրերին այնպես աղմուկ էին բարձրացրել, թե ահա եղել են ադրբեջանցիներ, որոնք սեփական կյանքը վտանգի ենթարկելով փրկել են հարևան կամ ծանոթ հայերի, պիտի այնպես հասկանալ, թե հայերին փրկել են հայերից: Բայց կարող է հարց առաջանալ, թե հայերն ինչու՞ այս ամենը կատարելու համար հասել էին Սումգայիթ:

Բունիաթովն այնքան հեռատես է, որ այսպիսի հարցն էլ է կանխում: Ասում է. «Նրանք իրենց նողկալի հարվածը հասցրին Սումգայիթին»: Այսինքն՝ աշխարհին հայտնի էր, որ Ադրբեջանն ունի այդպիսի ինտերնացիոնալ, երանելի քաղաք, որը բոլոր ժողովուրդների համակեցության օրինակ պիտի ծառայի... Եվ հայերն «իրենց նողկալի հարվածը հասցրին» այդ քաղաքի հեղինակությանը, ինտերնացիոնալիստական Ադրբեջանի, նրա բարեբարո ժողովրդի արժանապատվությանը:

Եվ տեսնու՞մ եք՝ այդ հայերն ի՜նչ նողկալի են. իրենք իրար կոտորել են, որպեսզի վարկաբեկեն հարևաններին:

Սովորական, աննախապաշար ընթերցողն այս բոլորը կհամարի ցնդաբանություն, հիվանդ ուղեղի զառանցանք: Բունիաթովը երևի այսքան բան հասկանալու ընդունակություն էլ ունի: Ուստի և դիմում է համաշխարհային արվեստի բնագավառին, որպեսզի այդ սովորական ընթերցողը մտածի, թե այսքան բան իմացող մեկը դժվար թե ցնդած, զառանցող լինի: Թե ինչու՞ սումգայիթը Սումգայիթում կատարվեց, Զ. Բունիաթովը բացատրում է այսպես. «Որովհետև դաշնակները վերստին այս էլ ո՞րերորդ անգամ, ցանկանում էին նկարիչ Վերեշչագինի «Պատերազմի ապոթեոզ» կտավը վերածել ժամանակակից լուսանկարի՝ «հայկական գանգերով»:

Ըստ երևույթին Ադրբեջանի ակադեմիայում միայն Զիա Բունիաթովը չէ, որ այս խելքին ու այս վարքին է: Իրենց «Էլմը»՝ Բունիաթովի ցնդաբանությամբ զարդարված, ուղարկել են Խորհրդային Միության բոլոր գիտական հաստատություններ, հասցեագրել նշանավոր ու աննշան բազմաթիվ գիտնականների: Ուղարկել են, որպեսզի երկրի գիտական մտավորականությունը կարդա, տեսնի, թե ի՛նչ են իրենցից ներկայացնում այդ հայերը, և ի՛նչ արժե նրանց շուրջը ստեղծված տիեզերական հետաքրքրությունը:

Գիտնականները կարդացին, նորից նոր հասկացան, թե իսկապես իրենցից ի՞նչ են ներկայացնում հայերը, ինչպես նաև տեսան, թե ո՛վ է և ի՛նչ տեսակ նողկալի ու քստմնելի արարքների է ընդունակ նրա թշնամին... Հասկացան, մեզ հետ միասին իրենք էլ հազար տեղից խոցված սրտով, հայկական շրջաններին նամակներ հղեցին համերաշխության, կարեկցանքի ու զայրույթի արտահայտություններով: Շատերն իրենց խոսքերը հրապարակեցին, որպեսզի աշխարհը ճանաչի, իմանա, կողմնորոշվի:

Ահա այդ խոսքերից երկուսը:

Մեկը լույս է տեսել «Օգոնյոկում», այն հանդեսում, որը մի տարի առաջ նույն Բունիաթովի ինքնաթմբկահարման գրույցն էր տպագրել՝ պատմության կեղծարարություններով ու այլազան շաղատանություններով անդրկովկասյան մտավորական շրջաններում հայտնի մեկին ներկայացնելով իբրև բարձր սկզբունքների և լայնահուն գիտական հայտնագործությունների տիրոջ: Որքան էլ դժվար լիներ ոչ միայն հրաժարվել այս ամենից, այլև հակառակը պնդել, «Օգոնյոկը» դիմեց այդ քայլին: Տպագրեց լրագրող Եվգենի Մյագկովի նամակը, որը սկզբից ներ տարակուսանք է արտահայտում. ակադեմիկոս Զ. Մ. Բունիաթովն է՞լ իրեն մտավորական է համարում: Ապա հիշելով սրա գրչի տակից դուրս եկած պարսավագրի աղտեղությունները, զարմանում է՝ այդպիսի՞ք են նրա, այսպես կոչված, գիտական աշխատանքների ոճը, լեզուն, փաստարկումները: «Այս հարցի դրական պատասխանը լրջորեն կվիժեցներ հեղինակությունն այն ակադեմիայի, որի անդամն է նա, կվարկաբեկեր նրան»,— այս է լրագրողի վերջնական վճիռը («Օգոնյոկ», 1989, № 22, էջ 3).

Մյուս հոդվածի հեղինակն է Դուբնայի հանրահայտ գիտնականներից մեկը՝ ԽՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, պրոֆեսոր Վ. Պետրովսկին: Իր հոդվածը նա կոչելով «Ինչու՞ Սումգայիթ», հենց սկզբում իսկ անվանի գիտնականը հայտարարում է. «Հավանաբար, Զ. Բունիաթովի հոդվածը առաջին դեպքն է, երբ ես լիակատար հիմքի վրա կարող եմ ասել՝ «Զգու՜յշ, գաղափարական դիվե՛րսիա է» («Կոմունիստ» թերթ, ռուս., 1989, հուլիսի 17):

Այստեղ ևս ուղղակի պիտի մեջբերեմ հեղինակի գնահատականի ցայտուն արտահայտությունները, որոնցով բնութագրվում են ադրբեջանցի շաղատանն ու նրա հրապարակած դիվերսիան:

«Ամենից առաջ շշմեցնում է, որ այդ հոդվածը գրված է ակադեմիկոսի կոչում կրող մարդու կողմից»:

«Կարդալով հոդվածը՝ ես զգացի վիրավորանք գիտական արժանապատվությունն անարգելու և ամոթ այն մարդու համար, որը խայտառակում, գռեհկացնում է այդ կոչումը»:

«Ըստ ժանրի հոդվածն ավելի շուտ հարմար է կոչել անամնեզ (խելագարության բարդացման պատմություն— Բ. Ու.) կամ, եթե կարելի է այսպես ասել, ինքնապամֆլետ: Անձամբ ինձ համար ամոթ է, որ Բունիաթովն ու ես պատկանում ենք միևնույն ցեխին՝ գիտության ցեխին»:

«Վերեշչագինի «Պատերազմի ապոթեոզը» նկարը հայկական գանգերի հետ մեկտեղված՝ մեկի գլխին կփչի միայն խելացնորության զառանցանքի մեջ»:

Եվ վերջապես. «Ես միշտ էլ համակրանքով եմ վերաբերվել հայկական տեսակետին Լեռնային Ղարաբաղի բարդ հիմնահարցի մեջ: Դրա համար եղել են հիմքեր՝ կազմված հայերի նկատմամբ ադրբեջանցիների վերաբերմունքի անձնական դիտարկումներից՝ «դեպքերի» շրջանից դեռ շատ առաջ...

Այժմ էլ ձեր հոդվածի ազդեցությամբ ու ներգործությամբ, հիմնովին անցնում եմ «Ղարաբաղ» շարժումը ձեզ նման պատմաբաններից պաշտպանողների դիրքերը, ակադեմիկո՛ս Զ. Բունիաթով: Ձեր հոդվածի շնորհիվ ես շատ բան հասկացա: Դրա մեջ է նրա օգտակարությունը հարցի ըմբռնման պահին: Ցանկանում եմ մտածել, որ այդպիսի եզրակացության եմ հանգել ո՛չ միայն ես»:

Դժվար է հաղթահարել ավելի շատ մեջբերումներ կատարելու գայթակղությունը, մանավանդ այն հատվածից, որի մեջ Դուբնայի գիտնականը տեսնում է նոր սումգայիթների և արցախահայության պատմական հիշողությունը կտրելու բունիաթովյան սանձարձակ սպառնալիքները...

Բավական է և այսքա՛նը...

Հիշենք, որ Բունիաթովի աղբյուրագիտական հայտնագործությունը զառանցանք են համարել պատմաբանների ու քաղաքագետների միութենական այն խորհրդակցություններում ու «կլոր սեղանների» ատյաններում, որոնք վերջերս գումարվել են ազգային հարցի ու ազգամիջյան փոխհարաբերությունների խնդիրների վերաբերյալ:

Սակայն, երևի թե, Ադրբեջանի մտավորականության համար հիմնահարցը, ավելի ճիշտ՝ հիմնահարցի բունիաթովյան մեկնաբանությունը ճակատագրական նշանակություն ունի: Այն պետք էր պաշտպանել, դարձնել ունկնդիր ու ընթերցող տասնյակ միլիոնների համոզմունքը, սեփականությունը, նրանով պետք էր զինել հատկապես այն մարդկանց, որոնցից որևէ բան է կախված ազգամիջյան հարաբերությունների հարցեր լուծելիս:

Եվ ադրբեջանական լրատվության բոլոր մարմինները գործի անցան՝ շրջանառության մեջ դնելով իրենց ուժը, եռանդը, ունեցած-չունեցած հնարավորությունները: Գործի լծվեցին գիտնականներ ու գրողներ, կուսակցական ու խորհրդային աշխատողներ, արվեստի ու արհեստի գործիչներ... Անհնար է նրանց բոլորի արածթողածին անդրադառնալ: Պիտի խոսեմ լոկ մեկի մասին՝ միութենական ճանաչում ունեցող Մաքսուդ Իբրահիմբեկովի, որի, այսպես կոչված, ելույթը «Дружба народов» հանդեսի Ազգամիջյան հարաբերությունների խորհրդի նիստում տպագրել են Ադրբեջանի հանրապետական բոլոր թերթերը, արտատպված տարածվել է Միության հանրապետություններում, դարձել երկրի բազում մտավորականների ուշադրության առարկան:

Հավանաբար Բունիաթովի կապակցությամբ մտածել են, թե նրա անհաջողությունը պայմանավորված է եղել նյութի մատուցման մանրամասներով ու ստեղծագործական առանձին անհաջող եղանակներով: Ահա կինեմատոգրաֆիայի բնագավառի գործիչն այդ սխալները կշտկի, գործի կդնի իր երևակայությունն ու հնարանքները, և Սումգայիթը կդառնա հայկական դատի գերեզմանը, հայ չարագործ ժողովրդի նոր ամոթը: Իբրահիմբեկովն, անկասկած, Բունիաթով չէ իբրև գաղափարախոսական ճակատի մարտնչող: Օրինակ, նա գիտե, որ գործի հաջողության համար պարտադիր չէ, նույնիսկ վտանգավոր է սկզբից մինչև վերջ հայ ազգին հայհոյելը: Հակառակը, պիտի «բարեկամի դիրքից» խոսել նրա մասին, արժանիքներ վերագրել նրան, հարվածելիս էլ ձևացնել, թե դա ցավով ես անում, որպեսզի... Օրինակ, ի՞նչ արժե հայ ծայրահեղականների ու դաշնակցական ազգայնամոլների գործունեության գնահատականը, երբ անմիջապես էլ վրա է բերվում. «Բայց պե՞տք է դա հայ տաղանդավոր ու աշխատասեր ժողովրդին, որի անունից գործում են գերազգայնամոլները: Դա օգու՞տ է նրան»:

Տեսնու՞մ եք ի՞նչ գնահատական է, ի՞նչ սրտացավություն ու զգաստացումի պատվիրան: Այսքանից հետո ինչպե՞ս չհավատաս նրա խոսքերին, որոնցից յուրաքանչյուրում բաբախում է նախ համամարդկային, ապա համամիութենական, դրանից հետո համակովկասյան և նոր միայն ադրբեջանական մտահոգությունը:

Հենց հայ ազգի պատվի ու ապագայի համար է, որ Ի.-ն իր սիրտն է պատռում: «Չի բացառվում,— ասում է,— որ որոշ ժամանակ անց երկրի տարբեր շրջաններում և արտասահմանում,— իսկ հայերը, բնականաբար, բարեկամներից բացի ունեն նաև չարակամներ,— միտք կծագի, որ այս հայերը եթե մի կտոր հողի համար այդպիսի թեթևությամբ ամբողջ միջազգային հանրությունն օգտագործելով թափվեցին հարևանների վրա և կոյուղու մեջ թաղեցին նրանց, որոնք իրենց երբեք ոչ մի վատություն չէին արել, ուրեմն չէ՞ որ նրանք կարող են մեր դեմ էլ մի ստորություն անել. քանի ուշ չէ, պետք է միջոցներ ձեռնարկել»: Եվ հետևանքների համար ավանդով ցավում, ճաքուպատառ է լինում, նախ, մարդասիրությունից, ապա, նույնիսկ «մաքուր անհատապաշտական ըմբռնումներից». չէ որ կովկասյան յուրաքանչյուր ազգային երևույթ դրսիների աչքում ու պատկերացման մեջ տարածվում է Կովկասի ամբո՞ղջ բնակչության վրա:

Ուրեմն, ուզենա էլ, չի կարող մեր բարեկամը չլինել:

Եվ ահա, այսքանի կողքին, երբ ստեղծում է Սումգայիթի իր տարբերակը, ավելի շուտ՝ երբ լծվում է գիպաբունիաթովյան զառանցանքի վերակառուցմանն ու շնչավորմանը...

Ի-ի տարբերակի մանրամասների համար աղբյուրագիտական հիմքը Բունիաթովինն է. այստեղ էլ հայերն են կոտորել հայերին, դարձյալ ոմն Գրիգորյան է եղել նախաձեռնողը: Ամեն ինչ նախօրոք ծրագրված է եղել, նույնիսկ դեպքերի տեսագրությունը, որը հետո ցուցադրվել է արտասահմանյան համարյա բոլոր երկրներում, սակայն խորհրդային և ոչ մի քաղաքում... Սակայն կինոսցենարիստը բունիաթովյան սուտ ու մեռած կաղապարին «կենդանի շունչ» է փչել: Այսպես, եթե Բունիաթովն ասում է՝ Գրիգորյանը սկզբից ևեթ սպանել է հինգ հայի, ապա մնացածը..., այստեղ ավելացրել է՝ Գրիգորյանն «այդ սարսափելի օրը գործել է Փաշա մականունով»:

Առաջին դեպքում իրողությունները տեսագրելու համար մեկ ժամ առաջ հայ կինոաշխատողներն են Սումգայիթ ժամանել: Այստեղ դա կատարված է համարվում մեկ օր առաջ («Դեպքերի սկզբից մեկ օր առաջ Սումգայիթ ժամանեցին մարդիկ կինո և տեսախցերով»):

Բունիաթովը դեպքերը ներկայացնում է իբրև խարդախ հայերի հաշվեհարդար իրենց բարերար ադրբեջանցիների դեմ, իսկ Իբրահիմբեկովի տարբերակում այս ամենը խառնվում է բազմազգի մշուշին, պղտորվում, որպեսզի պղտոր ջրում... «Ադրբեջանցիներից բացի, սումգայիթյան կոտորածին ովքե՞ր են մասնակցել». նա հարց է բարձրացնում և ինքն էլ իրեն պատասխանում. «Սպանությունների մեղադրանքներ պաշտոնապես ներկայացվել են հանցագործներին՝ լեզգիների, ռուսների, հայերի, որոնցից մեկը՝ Գրիգորյան...»:

Սակայն մենք, որ իբրև շահագրգռված կողմ, հետևել ենք իրադարձությունների ընթացքին և նրա մասին արված պաշտոնական ու ոչ պաշտոնական հաղորդումներին, լեզգի, ռուս և հայ հանցագործների հեռավոր հիշատակություն անգամ չենք լսել կամ կարդացել: Իբրահիմբեկովը որտեղի՞ց է հայտնաբերել նման տվյալներ: Թե՞ սա ևս կինեմատոգրաֆիական ճարպիկ հնարք է:

Բայց ահա, շարունակում է Իբրահիմբեկով քննախույզը, «հաշվել են «եղեռնի» զոհերի թիվը, պարզվել է, որ ամբողջ աշխարհին հայտարարված զոհերի թիվն Ադրբեջանում,— սպանված տասնհինգ ադրբեջանցիները, ռուսները և լեզգիները հանած,— կազմում է քսանութ հայ. քսանվեցը՝ Սումգայիթում, երկուսը՝ Կիրովաբադում: Այսինքն՝ կատարած ողբերգության մասշտաբը չի համապատասխանում հայտարարվածին: Բայց խաղն արդեն արված էր. այդ ժամանակ Լեռնային Ղարաբաղի մասին առաջին անգամ լսած շատերը, բնականաբար, սկսել էին մտածել՝ այդ ծաղկուն երկրամասը կարելի՞ է թողնել մի հանրապետության կազմում, որը բնակեցված է արյունարբու մարդասպաններով ու բռնադատողներով»:

Այստեղից սկսած՝ կինոսցենարիստը ստեղծագործական հափշտակվածության մեջ է. հորինում է ստեր, գլխապտույտի մեջ գցող տվյալներ, որոնք, թեպետ մի մասով փոխ առած Զիա Բունիաթովից, այնպես են շրջանառության մեջ մտցվում, այնպես են «գործի» դրվում, որ արկածային շարժանկարի մեծագույն վարպետներն անգամ շշմած կմնան:

Բայց մենք դառնանք նրա հիմնական հաղթաթղթին. Սումգայիթում 26 հայեր են սպանվել, և չարժեր դրանց շուրջ բարձրացնել այն աղմուկը, որով հիմա բռնված է քաղաքակիրթ աշխարհը: Եվ այս բոլորը հրապարակում է իրեն գրող ու քա-

ղաքակիրթ մարդ համարող մեկը, մոռանալով կամ մոռացության տալով ամենակարևորը՝ ինչի՞ համար են կոտորել 26 հայերին:

Ես նույնիսկ մի վայրկյան կտրվում եմ իրողությունից. նահատակները տասն անգամ 26 են: Միայն վերջին օրվա՝ 29-ի զոհերը, որոնք զինվորականների ուժով հիվանդանոցներ են տարվել, և հարազատները նրանց մասին բժշկական վկայաթղթեր են ստացել, 39 են: Իմ ձեռքին են նրանց վկայականների կրկնօրինակները: Իսկ փետրվարի 26-ի կեսօրից սկսած բոլոր զոհերի դիակները հրկիզվել են կամ անհետ կորել...

Ինչի՞ են կոտորել սումգայիթցի հայերին: Նրա համար, որ Լեռնային Ղարաբաղի իրենց արյունակիցները որոշել էին բաժանվե՞լ Ադրբեջանից: Բայց չէ՞ որ հայ սումգայիթցիները ոչ մի մեղք չունեին այդ որոշման մեջ, իսկ որոշումն ինքն էլ մեղսագործություն չէ, քանի որ մեր երկրի օրենքներով և մանավանդ լենինյան տեսությամբ ամեն մի ազգ ու ազգային միավորում ունի այդպիսի իրավունք, ինքնորոշման և իր ազգային կյանքը տնօրինելու իրավունք: Հաշվի առնենք, որ Ադրբեջանը չի ճանաչում Ղարաբաղի հայության այդ իրավունքը: Բայց մի՞թե այդ չճանաչելը պիտի հաստատեր կոտորածով, ջարդով, սոցիալիստական համակեցության ավելի քան 70 տարիների ընթացքում չեղած-չտեսնված վայրագություններով:

Իբրահիմբեկովի հոդվածում կա Ղարաբաղի շուրջ արդեն կատարվածից, այսինքն՝ Սումգայիթից առավել սարսափելի սպառնալիքը ևս. զգուշացնում է, թե «կլինեն հետևանքներ, որոնց առաջ Ղարաբաղի շուրջ տեղի ունեցած իրողությունները կթվան շատ ավելի պակաս նշանակալից»:

Պարզ է, որ հենց այն ժամանակ իր հանրապետությունն ստուգորեն ծրագրած է եղել մեր մարզի ու հանրապետության շրջափակումը...

Հիշում եմ դեռևս մայիսին կենտրոնական մամուլում կարդացածս մի ցնցող հարց, որ ռուս մտավորականության ներկայացուցիչն էր տվել. «Այդ արնածոր վերք դարձած Հայաստանի առա՞ջ է, որ մենք պետք է տրվենք մեր սեփական հիմնահարցերին» (Տատյանա Իվանովա, «Օգոնյոկ», 1989, № 22, էջ 28): Այսպես է աշխարհի բանը. մարդկային մարդն անբարոյական է համարում արնածոր վերքի վերածված Հայաստանի կողքին հիշել իր սեփական, նույնիսկ ազգային ու հասարակական տառապանքները, իսկ հարևանը ամբակի փոխած ոտքը դնում է այդ վերքի վրա, շրջափակում...

Իբրահիմբեկովն իր ելույթ-հոդվածի սկզբից մինչև վերջը սեփական ժողովրդի ինտերնացիոնալիստական զգացումներն է փառաբանում: Ադրբեջանցին իր պատմության ամբողջ ընթացքում չի իմացել ո՛չ ցեղային, ո՛չ էլ կրոնական անհանդուրժողություն, հարևանների հանդեպ բարերար, միշտ պատրաստ բարեգործության ու ինքնազոհաբերումի: Ինչ վերաբերում է իրենց մայրաքաղաքին, այստեղ նա իր լորձնաշուրթ կեղծասացությունների մեջ անգամ չի կարողանում համապատասխան բառեր ընտրել, «Որովհետև բազմազգ Բաքուն միշտ էլ եղել է աշխարհի ամենաինտերնացիոնալիստական քաղաքներից մեկը»: Իմացա՞ք. աշխարհի՛ (և ոչ թե Կովկասի կամ Խորհրդային Միության) «ամենաինտերնացիոնալիստական քաղաքներից մեկը»:

Ի դեպ, սա միայն իմ ընդդիմախոսի կարծիքը չէ: Այդպես են մտածում, ավելի ճիշտ՝ այդ են թմբկահարում ու աղմկում նրա բոլոր հայրենակիցները, հատկապես պաշտոնյաները, որոնց հատուկ նպատակն է նման ճամարտակություններով սքողել շովինիստական այն մթնոլորտը, որ առհասարակ հատուկ է եղել այդ քաղաքին, իսկ վերջին տասնամյակներում դարձել է հեղձուցիչ բոլոր այլազգիների համար, ռուս մեծ ազգի զավակներից մինչև խեղճ հայերը և իրենց էթնիկական վերջին նշաններից զրկված թաթարները, թաթերը, լեզգիները, քրդերը:

Եվ իր սուտ քարոզն ինչո՞վ է «հիմնավորում» Իբրահիմբեկովը: Որ Ադրբեջանի բազմազգ ընտանիքում կան հինգ հարյուր հազար հայեր, որոնցից 200 հազարը՝ Բաքվում,— այստեղից էլ սկսվում է հետևյալ շաղակրատանքը հանրապետության մայրաքաղաքում այլևս գոյություն չունեցող հայերի մասին:— Դրանք բանվորներ են, լրագրողներ, վարսավիրներ, շրջկոմի քարտուղարներ, բանկի ու դատախազության աշխատողներ, ինժեներներ ու բժիշկներ: Հայերը Ադրբեջանի ազգի մասն են, դրանք բարեկամներ են, գործընկերներ, հարազատներ, դրանք բաքվեցիներ են՝ առանց ազգության հատկանիշների: Այդպես եղել է և, ես հուսով եմ, կլինի հավիտյան»:

Սուտն ու ճշմարտությունն այստեղ այնպես միահյուսված են, որ տեղերը կարող են փոխել և դրանից ոչինչ չի փոխվի: Բաքվում շրջկոմի հայ քարտուղարներ չկան: Հանրապետության ղեկավարության մեջ 500 հազար հայերը, ինքնա-



վար մարզը նույնպես ոչ ոք չի ներկայացնում... Ձնայած կար ժամանակ, որ կուսակցության Կենտկոմի քարտուղարներ ու բաժինների վարիչներ, Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալներ, մինիստրներ ու գերատեսչությունների ղեկավարներ եղել են:

Վերը մեջբերված խոսքի մեջ միայն մեկ նախադասությունն է համապատասխանում իրականությանը: Մինչև վերջերս Բաքվում բնակվող 200 հազար հայերը եղել են «բաքվեցիներ՝ առանց ազգային հատկանիշների»: Ի՞նչ ասես այսօրինակ դաժան ճշմարտության դեմ: Տասնամյակներ շարունակ նրանց զրկել ու հալածել են այդ ազգային հատկանիշների համար, ստիպել մոռանալ ակունքները: Փակել են նրանց մշակութային ու հոգևոր ամեն տեսակ օջախները՝ թատրոնն ու մշակույթի տները, սկզբում համալսարանի հայկական բաժանմունքը, հետո էլ՝ մանկավարժական ինստիտուտի... Հասցրել են նրան, որ 200 հազար հայերն իրենց լեզվով մի դպրոց էլ չունեին, որևէ մանկապարտեզ կամ մանկամսուր՝ նույնպես...

Ես հազար ներողություն եմ խնդրում իմ այդ 200 հազար խեղճուկրակ հայրենակիցներից, որ պիտի տամ իրենց վիճակի իսկական անունը՝ մանկուրթ: Մանկուրթ են դարձրել ու հիմա էլ սադիստորեն ասում են՝ այդպես է եղել և այդպես էլ կմնա: Նրանց ստիպում էին չարախոսել արցախցի իրենց ազգակիցների դեմ, նրանց ստորագրություններով կամ պարզապես նրանց անուններից պարսավագրեր ու զրպարտաթղթեր էին հրապարակում: Մի ոմն Թելման Զալյան-Ղարաբաղլի էլ, թլպատված մի ստահակ, համամիութենական թերթում արցախցիներին զգուշության դաս էր տալիս. այդ ի՞նչ գործի վրա եք, այ իմ նախկին ազգակիցներ, մի՞թե չգիտեք, որ Հայաստանին միանալով դուք աներկբայորեն պիտի աղքատանաք հոգով ու տնտեսապես...

Իբրահիմբեկովները միայն սրանով կարող են հպարտանալ, մարդագողության այս հրեշավոր ծառայությամբ: Մարդասիրության ու ինտերնացիոնալիզմի, գթասրտության ու մյուս բարձր բարոյական հասկացությունների մասին խոսելու իրավունք չպետք է ունենան:

Բաքուն ինտերնացիոնալ քաղա՞ք:

Ջունգլիներն էլ կարող են ինտերնացիոնալ բնակավայր կոչվել. այնտեղ ապրում են բազմատեսակ ու բազմաքանակ կենդանիներ: Եվ այնտեղ գիշատիչներն ու հզորները խժռում են տկարներին: 1918 թ. մուսավաթական կառավարությունը Ղարաբաղի հայ բնակչությանն առաջարկեց հպատակություն հայտնել և, մերժում ստանալով, երեք օրվա ընթացքում կոտորեց 30 հազար բաքվաբնակ հայերի:

... Սումգայիթը Բաքուն էր կազմակերպել, հետո էլ իր փողոցներում հեղեց անմեղ հայերի արյունը: Հիմա ու՞ր են նրա 200 հազար հայ բնակիչները: Հայաստանում կամ Հյուսիսային Կովկասի, Ստավրոպոլի երկրամասի, մերձմոսկովյան հեռուներում: Նրանք, որ ժամանակ ու հնարավորություն չունեցան փախչելով փրկվելու, մահ գտան մեկ-մեկ, երկու-երկու, փոքր խմբերով: Մարդակերները Սումգայիթից հետո սովորեցին իրենց գործը խնամքով, ծածուկ ու ապահով կատարել...

Այսքանից հետո մի՞թե սրբապղծություն չէ Բաքվի հետ համադրել «ինտերնացիոնալ» բառը:

Ռուս լրագրող Կոնստանտին Միխայլովը, որ 1988-ի խժդժություններին ականատես է եղել տևական ժամանակով և համոզվել, թե ուր են չարության ակունքն ու չարագործությունների ասպարեզը, գրել է. «Եթե լրագրողը թեկուզ նվազագույն վարչական իշխանությամբ օժտված լիներ, ես անմիջապես կհավաքեի ինտերնացիոնալիզմի մասին մինչև այժմ Բաքուն «զարդարած» գունազարդ պաստառներն ու պլակատները: Վերջին դեպքերից հետո նրանք կարող են երևալ որպես ծաղրուծանակ»:

Այս էլ այսպե՛ս:

Իբրահիմբեկովն աշխարհի բոլոր չարիքների աղբյուր է համարում Զորի Բալայանի «Օջախ» գիրքը՝ «Մարդատյացության ինչ-որ դասագիրք պատանի դեբիլների համար»: Իբր, Ադրբեջանում այն կարդացողները շենքեր են հրդեհում, մարդիկ կոտորում, այնպիսի գործողություններ կատարում, որոնք անքննելի են ու անկանխատեսելի: Չե՞ք հավատում: Կարդացե՛ք, իրենց օպերայի շենքը կրակ տվող երիտասարդին հարցրել են՝ քեզ ի՞նչն է մղել նման արարքի, և նա պատասխանել է, թե «կարդացել է Զորի Բալայանի «Օջախը», իսկ այնտեղ գրված է, թե ադրբեջանցիները մուսուլման-քոչվորներ են, թուրքեր, կնշանակի, պետք է նրանց կոտորել»:

Սեփական շահերը հասկանալու համար այնքան խելք ունի, որ չի ասում, թե Սումգայիթի հեղինակներն էլ էին «Օջախը» կարդացել: Չէ՞ որ դա կլիներ խոստովանություն...

Բայց Հայաստանում վիթխարի տպաքանակներով «Օջախը» լույս է տեսել հայերեն ու ռուսերեն, անմիջապես էլ սպառվել: Ոչ ոք նրանից դեբիլ չի դարձել ու չի հրդեհել Երևանի օպերան: Թե դեբիլնե-

րի՞ն է ոտքի հանում, ինչպես կարմիր գույնը՝ խելառված որոշ կենդանիների:

«Օջախում» և առհասարակ հայ մարդու գրչի տակից դուրս եկած որևէ գրքում անհնար է կոտորածի կոչ գտնելը: Երևի հենց այստեղ է դեբիլավարի կարդալու գաղտնիքը: Ինչ վերաբերում է ադրբեջանցիների նախնիներին, որոնք իսկապես քոչվորներ են եղել՝ ընդունած մուսուլմանություն, ապա մի՞թե Ադրբեջանում «Օջախից» բացի ուրիշ գիրք չեն կարդում, որպեսզի այդ էլ իմանան: Եթե չեն կարդացել, թող նայեն թեկուզ «Խորհրդային պատմական հանրագիտարանի» 10-րդ հատորը (Մոսկվա, 1967 թ.), որտեղ օղուզ թուրքերին մերձարալյան ու մերձկասպյան այդ «քոչվոր ու կիսանստակյաց ցեղերի» մասին գրված է՝ հետագայում «խաղացել են կարևոր դեր թուրքմենների, ադրբեջանցիների, թուրքերի, ինչպես նաև գագաուզների ու կարակալպակների ծագումնաբանության մեջ» (էջ 467—468): Ապա այս օղուզ թուրքերի քոչն ու վերաբնակության մանրամասներն են ներկայացնում, նրանցից գոյացած «ակ-կոյունլու քոչվոր ցեղային միության» (հ. 1, Մ., 1961, էջ 306), «կարա-կոյունլու քոչվոր ցեղերի» (հ. 7, Մ., 1965, էջ 15), այսինքն՝ ադրբեջանցիների ու օսմանյան թուրքերի անմիջական նախնիների՝ Անդրկովկասում ու Փոքր Ասիայում բնավորվելու հանգամանքները XIV—XV դարերի առումով:

Ես այստեղ հիշեցի միայն հանրագիտարանային տեղեկությունները: Բայց դրանք սփռված են պատմագիտական ամեն տեսակ հրատարակություններում և հայտնի են աշխարհի պատմական անցուդարձերին ծանոթ բոլոր մարդկանց:

Եթե պատմական այսպիսի ամեն մի տեղեկությունից ադրբեջանցի ընթերցողները պիտի գազազեին և հրդեհի ու ավերածության մատնեին իրենց մայրաքաղաքի շենքերը, հաղորդակցության ուղիները և կոտորեին մարդկանց, ապա մինչև հիմա Ադրբեջանի տարածքում բան մնացած չպիտի լիներ:

Նախնիների ապրած կյանքը մեր պատմությունն է, որը պետք է լավ իմանանք ոչ թե նրանցից հրաժարվելու կամ այն բարեշինելու համար, այլ այսօր նրանցից դասեր առնելու, այսօրվա և վաղվա կյանքն արժանավայել ապրելու նպատակով: Եվ առհասարակ հանցագործություն էլ չէ քոչվոր նախնիներ ունենալը: Հանցագործություն է այսօրվա քաղաքակիրթ հասարակարգում քոչվորի բարքերով ապրելը, երբ Գերագույն խորհրդի նստաշրջան են հրավիրում ու այնտեղ Արցախի հարցն են, իբր թե, քննում և իրենց այնպես պահում, ասես գտնվում են Լենկ-Թեմուրի դուռույթայում: Ո՞նց թե իրենց նվաճած երկիր Արցախի հայերն ուզում են ազատագրվել: Պետք է վերացնե՜լ նրանց մարզային իրավունքները, իրենց քշել այդ երկրամասից, տեղը բնակեցնել Հայաստանից փախած ադրբեջանցիներին ու Ֆերգանայից փոխադրված մեսխեթցի թուրքերին, շարունակե՜լ Հայաստանի և Ղարաբաղի շրջափակումն ու պարբերական հարձակումները նրանց վրա այնքան ժամանակ, մինչև որ ծնկի գան և իրենք իրենց վզները դնեն մեր լծի տակ (Ադր. ԽՍՀ XI գումարման Գերագույն խորհրդի X արտահերթ նստաշրջանի կոչերից):

Պատմությունը երևի ոչ միայն անցյալ է, այլև ահռելի բեռ, որը տանելու կամ թոթափելու համար էլ պետք է լծված լինել բանականությանը, առաջավոր մարդկության մշակած բարոյական ու քաղաքական օրենքներին:

Պատմությունը շարունակվում է, և ես էլ մեր մեծ պատմաբանի հին խոսքը պիտի կրկնեմ. «Քսաներորդ դարում (ո՛չ, քսանմեկերորդի նախաշեմին) ենք, բայց հային դեռ կրծում ու ծվատում է հին արյունոտ իրականությունը» (Լեո):

**ԲԱԳՐԱՏ ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ**

Պատմական գիտությունների դոկտոր, ՀԽՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի առաջատար գիտաշխատող



# ԱՆՀԱՏԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ԵՎ ԴՐԱ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ*

Ստալինի միահեծանությունը հատկապես ծանր հետևանքների հանգեցրեց Հայրենական մեծ պատերազմի ընթացքում:

Եթե վերցնելու լինենք մեր շատ վեպեր, կինոնկարներ և պատմական «ուսումնասիրություններ», ապա նրանցում միանգամայն անճշմարտացիորեն է պատկերվում Հայրենական պատերազմում Ստալինի դերի վերաբերյալ հարցը: Սովորաբար պատկերվում է այսպիսի սխեմա: Ստալինը կանխատեսել էր ամեն բան: Խորհրդային բանակը համարյա Ստալինի վաղորոք նախագծած ստրատեգիական պլանի համաձայն կիրառում էր, այսպես կոչված, «ակտիվ պաշտպանության» տակտիկա, այսինքն այն տակտիկան, որը, ինչպես հայտնի է, գերմանացիներին թողեց մինչև Մոսկվա և Ստալինգրադ: Կիրառելով նման տակտիկա, խորհրդային բանակը իբր միայն Ստալինի հանճարի շնորհիվ անցավ հակահարձակման և ջախջախեց թշնամուն: Խորհրդային երկրի զինված ուժերի, մեր հերոսական ժողովրդի տարած համաշխարհային պատմական հաղթանակը նման կարգի վեպերում, կինոնկարներում և «ուսումնասիրություններում» ամբողջովին վերագրվում է Ստալինի զորավարական հանճարին:

Հարկավոր է ուշադրությամբ պարզաբանում մտցնել այդ հարցում, որովհետև այն ունի հսկայական, ոչ միայն պատմական, այլև ամենից առաջ քաղաքական, դաստիարակչական, գործնական նշանակություն:

Ինչպիսի՞ք են փաստերն այս հարցում:

Մինչև պատերազմը մեր մամուլում և ամբողջ դաստիարակչական աշխատանքում գերակշռում էր պարծենկոտ տոնը, եթե թշնամին հարձակվի սրբազան խորհրդային հողի վրա, ապա մենք թշնամու հարվածին կպատասխանենք եռակի հարվածով, պատերազմը կվարենք հակառակորդի տարածքում և այն կշահենք քիչ արյան գնով: Սակայն այդ ամպագորգոռ հայտարարությունները ամենևին էլ ոչ բոլոր դեպքերում էին ամրապնդվում պրակտիկ գործերով, որպեսզի ապահովվեր մեր սահմանների իրոք անառիկությունը:

Պատերազմի ընթացքում և նրանից հետո Ստալինն առաջադրեց այնպիսի դրույթ, թե ողբերգությունը, որ ապրեց մեր ժողովուրդը պատերազմի սկզբնական փուլում, իբր Խորհրդային Միության վրա գերմանացիների հարձակման «հանկարծակիության» արդյունք էր: Բայց չէ՞ որ դա, ընկերնե՛ր, բոլորովին չի համապատասխանում իրականությանը: Հենց որ Հիտլերը իշխանության գլուխ անցավ Գերմանիայում, նա անմիջապես իր առջև խնդիր դրեց ջախջախել կոմունիզմը: Այդ մասին ֆաշիստները խոսում էին ուղղակիորեն՝ չթաքցնելով իրենց պլանները: Այդ ագրեսիվ պլանների իրագործման համար կնքվում էին ամեն կարգի պակտեր, բլոկներ, առանցքներ, ինչպես տխրահռչակ Բեռլին—Հռոմ—Տոկիո առանցքն էր[38]: Նախապատերազմյան ժամանակաշրջանի բազմաթիվ փաստեր պերճախոս կերպով ապացուցում էին, որ Հիտլերն իր բոլոր ջանքերն ուղղում է այն բանին, որպեսզի պատերազմ սանձազերծի խորհրդային պետության դեմ, և կենտրոնացնում էր մե-

---

* *Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» 1989 թ., № 9:*

ծաթիվ զինվորական, այդ թվում՝ տանկային միավորումներ խորհրդային սահմանների մոտ:

Այժմ հրապարակված փաստաթղթերից երևում է, որ դեռևս 1941 թվականի ապրիլի 3-ին Չերչիլը ԽՍՀՄ-ում անգլիական դեսպան Կրիպսի միջոցով անձնական նախազգուշացում արեց Ստալինին այն մասին, որ գերմանական զորքերն սկսել են վերատեղաբաշխում կատարել՝ նախապատրաստելով հարձակում Խորհրդային Միության վրա: Ինքնին հասկանալի է, որ Չերչիլը դա անում էր ամենևին էլ ոչ բարի զգացմունքներից մղված հանդեպ խորհրդային ժողովուրդը: Նա հետապնդում էր այստեղ իր իմպերիալիստական շահերը՝ իրար դեմ հանել Գերմանիան և ԽՍՀՄ-ը արյունահեղ պատերազմում և ամրապնդել Բրիտանական կայսրության դիրքերը: Այնուամենայնիվ Չերչիլը նշում էր իր ուղերձում, որ նա խնդրում է «զգուշացնել Ստալինին, որպեսզի նրա ուշադրությունը հրավիրվի իրեն սպառնացող վտանգի վրա»: Չերչիլը համառորեն շեշտում էր դա նաև ապրիլի 18-ի և հետագա օրերի հեռագրերում: Սակայն այդ նախազգուշացումներին Ստալինը ուշադրություն չդարձրեց: Ավելին, Ստալինը ցուցումներ էր տալիս չհավատալ նման բնույթի ինֆորմացիային իբր այն նպատակով, որպեսզի չհրահրվեր ռազմական գործողությունների սկսվելը:

Պետք է ասել, որ նման բնույթի ինֆորմացիա Խորհրդային Միության տարածք գերմանական զորքերի ներխուժման վերահաս վտանգի մասին ստացվում էր նաև մեր զինվորական և դիվանագիտական աղբյուրներից, բայց նման բնույթի ինֆորմացիայի նկատմամբ ղեկավարությունում ստեղծված կանխակալ վերաբերմունքի հետևանքով այն ամեն անգամ ուղարկվում էր մտավախությամբ և համեմվում էր վերապահումներով:

Այսպես, օրինակ, Բեռլինից ուղարկած 1941 թ. մայիսի 6-ի թվակիր զեկույցում Բեռլինում ռազմածովային կցորդ 1-ին կարգի կապիտան Վորոնցովը տեղեկացնում էր. «Խորհրդային հպատակ Բոզերը... հաղորդել է մեր ծովային կցորդի օգնականին, որ, Հիտլերի զորակայանի գերմանական մի սպայի ասելով, գերմանացիները մայիսի 14-ին պատրաստում են ներխուժում ԽՍՀՄ՝ Ֆինլանդիայի, Մերձբալթիկայի և Լատվիայի վրայով: Միաժամանակ նախատեսված են ավիացիայի հզոր հարձակումներ Մոսկվայի ու Լենինգրադի վրա և պարաշյուտային դեսանտների իջեցում սահմանամերձ կենտրոններում...»:

Իր 1941 թ. մայիսի 22-ի թվակիր զեկույցում Բեռլինում զինվորական կցորդի օգնական Խլոպովը հայտնում էր, որ «... գերմանական զորքերի հարձակումը նշանակված է իբր 15. VI, իսկ հնարավոր է, նաև, որ սկսվի հունիսի առաջին օրերին...»:

Լոնդոնից մեր դեսպանատան 1941 թվականի հունիսի 18-ի թվակիր հեռագրում զեկուցվում էր. «Ինչ վերաբերում է ընթացիկ պահին, ապա Կրիպսը հաստատ համոզված է Գերմանիայի ու ԽՍՀՄ-ի ռազմական ընդհարման անխուսափելիության մեջ և ընդ որում ոչ ուշ հունիսի կեսերից: Կրիպսի ասելով, այսօրվա վիճակով գերմանացիները խորհրդային սահմաններին կենտրոնացրել են (ներառյալ օդային ուժերն ու զորամասերի օժանդակ ուժերը) 147 դիվիզիա...»:

Չնայած այդ բոլոր չափազանց կարևոր ահազանգումներին, չձեռնարկվեցին բավարար միջոցներ, որպեսզի երկիրը լավ նախապատրաստվեր պաշտպանությանը և բացառվեր հարձակման անակնկալության պարագան:

Նման նախապատրաստման համար ժամանակ և հնարավորություններ ունեի՞նք արդյոք: Այո՛, և՛ ժամանակ, և՛ հնարավորություններ կային: Մեր արդյունաբերությունը գտնվում էր զարգացման այնպիսի մակարդակում, որ այն ի վիճակի էր ապահովելու խորհրդային բանակն ամեն մի անհրաժեշտ բանով: Դա հաստատվում է թեկուզև նրանով, որ, երբ պատերազմի ընթացքում թշնամու կողմից Ուկրաինան, Հյուսիսային Կովկասը, երկրի արևմտյան շրջանները, կարևոր արդյունաբերական և հաց ապահովող շրջանները, նվաճելու հետևանքով մենք կորցրինք մեր արդյունաբերության գրեթե կեսը, խորհրդային ժողովուրդը կարողացավ կազմակերպել ռազմամթերքի արտադրությունը երկրի արևելյան շրջաններում, գործարկել այնտեղ արևմտյան արդյունաբերական շրջաններից դուրս բերված սարքավորումը և մեր զինված ուժերն ապահովել թշնամու ջախջախման համար անհրաժեշտ ամեն ինչով:

Եթե մեր արդյունաբերությունը ժամանակին և ինչպես հարկն է մոբիլիզացվեր՝ բանակը զենքով և անհրաժեշտ հանդերձանքով ապահովելու համար, ապա մենք անհամեմատ ավելի քիչ զոհեր կունենայինք այդ ծանր պատերազմում: Սակայն նման մոբիլիզացիա ժամանակին չանցկացվեց: Եվ պատերազմի առաջին իսկ օրերից ի հայտ եկավ, որ մեր բանակը վատ է զինված, որ թշնամուն հակահարված տալու համար մենք չունեինք բավարար քանակությամբ հրետանի, տանկեր և ինքնաթիռներ:



Խորհրդային գիտությունն ու տեխնիկան պատերազմից առաջ տվեցին տանկերի և հրետանու հոյակապ նմուշներ: Բայց այդ ամենի զանգվածային արտադրությունը չէր կազմակերպված, և մենք սկսեցինք բանակի վերազինումն ըստ էության պատերազմի հենց սկզբին: Դրա հետևանքով խորհրդային երկրի վրա թշնամու հարձակման պահին մենք չունեինք անհրաժեշտ քանակությամբ ո՛չ հին տեխնիկա, որը մենք հանում էինք սպառազինությունից, ո՛չ նոր տեխնիկա, որը պատրաստվում էինք մտցնել: Շատ վատ էր զենիթային հրետանու վիճակը, չէր կազմակերպված զրահահար արկերի արտադրությունը՝ տանկերի դեմ պայքարելու համար: Շատ ամրացված շրջաններ հարձակման պահին հայտնվեցին անօգնական վիճակում, որովհետև այնտեղից հին սպառազինությունը հանված էր, իսկ նորը դեռ չէր մտցված:

Ասենք բանը, դժբախտաբար, միայն տանկերի, հրետանու և սավառնակների մեջ չէր: Պատերազմն սկսվելու պահին մենք նույնիսկ չունեինք բավարար քանակությամբ հրացաններ՝ գործող բանակ զորակոչվող մարդկանց զինելու համար: Հիշում եմ, ինչպես այն օրերին ես զանգահարեցի Կիևից ընկ. Մալենկովին[39] և ասացի նրան.

— Ժողովուրդը եկել է բանակ և զենք է պահանջում: Ուղարկեցեք մեզ զենք:

Դրան Մալենկովը պատասխանեց.

— Զենք ուղարկել չենք կարող: Բոլոր հրացաններն ուղարկում ենք Լենինգրադ, իսկ դուք զինվեք ինքներդ: (Շարժում դահլիճում):

Այդպիսին էր սպառազինության վիճակը:

Չի կարելի չհիշել այդ կապակցությամբ և, օրինակ, այսպիսի փաստ: Խորհրդային Միության վրա հիտլերյան բանակների հարձակումից քիչ առաջ Կիրպոնոսը, լինելով Կիևի հատուկ ռազմական օկրուգի հրամանատարը (նա հետագայում զոհվեց ռազմաճակատում), գրել է Ստալինին, որ գերմանական բանակները մոտեցել են Բուգին, ուժեղ թափով ամեն ինչ նախապատրաստում են հարձակման համար և մոտակա ժամանակում, հավանորեն, կանցնեն հարձակման: Հաշվի առնելով այդ ամենը Կիրպոնոսն առաջարկում էր ստեղծել հուսալի պաշտպանություն, 300 հազար մարդ դուրս բերել սահմանամերձ շրջանից և այնտեղ ստեղծել մի քանի հզոր պաշտպանական շերտեր. փորել հակատանկային փոսեր, ստեղծել թաքստոցներ մարտիկների համար և այլն:

Այդ առաջարկներին Մոսկվայից տրվեց այն պատասխանը, թե դա պրովոկացիա է, որ ոչ մի նախապատրաստական աշխատանք սահմանի վրա կատարել հարկավոր չէ, որ պետք չէ մեր դեմ ռազմական գործողություններ սկսելու առիթ տալ գերմանացիներին: Եվ մեր սահմանները լրջորեն չնախապատրաստվեցին թշնամուն հակահարված տալու համար:

Երբ ֆաշիստական զորքերն արդեն ներխուժեցին խորհրդային հողը և սկսեցին ռազմական գործողությունները, Մոսկվայից հետևեց հրաման՝ կրակոցներին չպատասխանել: Ինչու՞: Որովհետև Ստալինը, ակնհայտ փաստերին հակառակ, կարծում էր, որ դա դեռևս պատերազմ չէր, այլ գերմանական բանակի առանձին անկարգապահ զորամասերի պրովոկացիան և եթե մենք պատասխանենք գերմանացիներին, ապա դա առիթ կծառայի պատերազմի սկսվելու համար:

Հայտնի է նաև այսպիսի մի փաստ: Խորհրդային Միության տարածք հիտլերյան բանակների ներխուժումից առաջ մեր սահմանն անցավ մի գերմանացի և հայտնեց, որ գերմանական զորքերը հրաման են ստացել՝ հունիսի 22-ին, գիշերվա ժամը 3-ին հարձակում սկսել Խորհրդային Միության դեմ: Այդ մասին անհապաղ հաղորդվեց Ստալինին, բայց այդ ազդանշանը ևս մնաց առանց ուշադրության:

Ինչպես տեսնում եք, անտեսվում էր ամեն բան. և՛ առանձին զորահրամանատարների նախազգուշացումը, և՛ մեր կողմն անցածների ցուցմունքները, և՛ նույնիսկ թշնամու բացահայտ գործողությունները: Պատմության նման պատասխանատու պահին կուսակցության և երկրի ղեկավարի այդ ի՞նչ հեռատեսություն էր:

Իսկ ինչի՞ հանգեցրեց նման անհոգությունը, ակնհայտ փաստերի նման անտեսումը: Դա հանգեցրեց այն բանին, որ առաջին իսկ ժամերին և օրերին հակառակորդը ոչնչացրեց մեր սահմանամերձ շրջաններում հսկայական քանակությամբ ավիացիա, հրետանի, այլ ռազմական տեխնիկա, ոչնչացրեց մեծ քանակությամբ մեր ռազմական կադրերին, կազմալուծեց զորքերի կառավարումը, և մենք ի վիճակի չեղանք փակել նրա ճանապարհը դեպի երկրի խորքը:

Միանգամայն ծանր հետևանքներ, հատկապես պատերազմի սկզբնական շրջանի համար, ունեցավ նաև այն հանգամանքը, որ 1937—1941 թվականների ընթացքում, Ստալինի կասկածամտության հետևանքով, զրպարտչական մեղադրանքների հիման վրա ոչնչացվեցին բանակային հրամանատարների և քաղաշխատողների բազմաթիվ կադրեր: Այդ տարիների ընթացքում ճնշամիջոցների էին ենթարկվել հրամանատարական կադրերի մի քանի շերտեր, սկսած տասնացիորեն վաշտից ու գումարտակից և մինչև բարձրագույն բանակային կենտրոնները, այդ թվում նաև լիովին ոչնչացվեցին այն հրամանատարական կադրերը, որոնք պատերազմ վարելու ինչ-որ փորձ էին ստացել Իսպանիայում ու Հեռավոր արևելքում:

Բանակային կադրերի դեմ լայն ճնշամիջոցների քաղաքականությունն ունեցավ նաև այն ծանր հետևանքները, որ այն խարխլում էր զինվորական կարգապահության հիմքերը, որովհետև մի քանի տարիների ընթացքում բոլոր աստիճանների հրամանատարներին և նույնիսկ զինվորներին կուսակցական և կոմերիտական բջիջներում վարժեցնում էին այն բանին, որպեսզի «մերկացնեին» իրենց ավագ հրամանատարներին՝ որպես ծպտված թշնամիների: (Շարժում դահլիճում): Բնական է, որ դա բացասաբար անդրադարձավ զինվորական կարգապահության վրա պատերազմի առաջին շրջանում:

Իսկ չէ՞ որ մինչև պատերազմը մենք ունեինք հիանալի զինվորական կադրեր՝ անսահմանորեն նվիրված կուսակցությանն ու հայրենիքին: Բավական է ասել, որ դրանցից նրանք, ովքեր պահպանվել էին, ես ի նկատի ունեմ այնպիսի ընկերների, ինչպիսիք են Ռոկոսովսկին[40] (իսկ նա նստած է եղել), Գորբատովը[41], Մերեցկովը[42] (նա ներկա է համագումարում), Պոդլասը[43] (իսկ սա հիանալի հրամանատար էր, նա զոհվեց ռազմաճակատում) և շատ-շատ ուրիշները, չնայած ծանր տառապանքներին, որ նրանք կրել էին բանտերում, պատերազմի առաջին իսկ օրերից իրենց դրսևորեցին որպես իսկական հայրենասերներ և անձնվիրաբար կռվում էին ի փառս Հայրենիքի: Բայց չէ՞ որ նման հրամանատարներից շատերը զոհվեցին ճամբարներում ու բանտերում, և բանակը նրանց չտեսավ:

Այդ ամենը և, միասին վերցված, հանգեցրեց այն վիճակին, որն ստեղծվեց պատերազմի սկզբում մեր երկրի համար և որն սպառնում էր մեծագույն վտանգով մեր Հայրենիքի ճակատագրին:

Ճիշտ չի լինի չասել այն մասին, որ ռազմաճակատներում առաջին ծանր անհաջողություններից ու պարտություններից հետո Ստալինը կարծում էր, թե վերջը եկել է: Զրույցներից մեկի ժամանակ այդ օրերին նա հայտարարեց.

— Այն, ինչ ստեղծել էր Լենինը, այդ ամենը մենք անդառնալիորեն կորցրինք:

Դրանից հետո նա երկար ժամանակ փաստորեն չէր ղեկավարում ռազմական օպերացիաները և առհասարակ գործերին ձեռնամուխ չէր լինում ու ղեկավարմանը վերադարձավ միայն այն ժամանակ, երբ նրա մոտ եկան քաղբյուրոյի որոշ անդամներ և ասացին, որ անհրաժեշտ է անհետաձգելի կերպով այս ու այն միջոցները ձեռնարկել, որպեսզի շտկվի գործերի վիճակը ռազմաճակատում:

Այսպիսով, ահեղ վտանգը, որ կախվել էր մեր Հայրենիքի վրա պատերազմի առաջին շրջանում, շատ բանով արդյունք էր հենց Ստալինի կողմից երկիրն ու կուսակցությունը ղեկավարելու արատավոր մեթոդների:

Բայց բանը միայն պատերազմի բուն սկիզբը չէր, որը լրջորեն կազմալուծեց մեր բանակը և մեզ ծանր կորուստ պատճառեց: Արդեն պատերազմն սկսվելուց հետո այն նյարդայնությունն ու հիստերիկությունը, որ ցուցաբերում էր Ստալինը ռազմական օպերացիաներին իր միջամտությունների ժամանակ, մեր բանակին լուրջ վնաս հասցրին:

Ստալինը շատ հեռու էր հասկանալուց այն ռեալ իրավիճակը, որ ստեղծվել էր ռազմաճակատներում: Եվ դա բնական է, քանի որ ամբողջ Հայրենական պատերազմի ընթացքում նա չի եղել ռազմաճակատի ոչ մի հատվածում, ազատագրված քաղաքներից ոչ մեկում, եթե չհաշվենք կայծակնային մեկնումը Մոժայսկի խճուղի՝ ռազմաճակատի կայուն դրության պայմաններում, որի մասին ամեն կարգի հորինվածքներով ստեղծվել են այնքա՜ն գրական ստեղծագործություններ և գունագեղ կտավներ: Դրա հետ մեկտեղ Ստալինը անմիջականորեն խառնվում էր օպերացիաների ընթացքին և հրամաններ էր տալիս, որոնք հաճախ հաշվի չէին առնում ռազմաճակատի տվյալ հատվածի ռեալ իրավիճակը և որոնք չէին կարող չհանգեցնել մարդկային կյանքերի հսկայական կորուստների:

Ես ինձ թույլ կտամ բերելու այդ կապակցությամբ մի բնորոշ փաստ, որը ցույց է տալիս, թե ինչպես էր Ստալինը ղեկավարում ռազմաճակատները: Այստեղ համագումարում ներկա է մարշալ Բաղրամյանը[44], որն իր ժամանակին Հարավ-Արևմըտյան ռազմաճակատի շտաբի օպերատիվ բաժնի պետն էր և որը կարող է հավաստել այն, ինչ ես այժմ կպատմեմ ձեզ:



Երբ 1943 թվականին Խարկովի շրջանում մեր զորքերի համար ստեղծվել էին ծայրահեղ աննպաստ պայմաններ, մենք ճիշտ որոշում կայացրինք Խարկովը շրջապատելու օպերացիան դադարեցնելու վերաբերյալ, որովհետև այն ժամանակվա ռեալ իրադրությունում նման բնույթի օպերացիայի հետագա իրականացումը հղի էր մեր զորքերի համար ճակատագրական հետևանքներով:

Մենք զեկուցեցինք այդ մասին Ստալինին, հայտարարելով, որ իրադրությունը պահանջում է փոփոխել գործողությունների պլանը, որպեսզի թշնամուն թույլ չտանք ոչնչացնել մեր զորքերի խոշոր խմբավորումները:

Հակառակ առողջ բանականությանը, Ստալինը մերժեց մեր առաջարկը և հրամայեց շարունակել կատարել Խարկովի շրջապատման օպերացիան, չնայած այդ ժամանակ մեր բազմաթիվ ռազմական խմբավորումների գլխին արդեն կախվել էր շրջապատման ու ոչնչացման ռեալ սպառնալիքը:

Ես զանգահարում եմ Վասիլևսկուն[45] և թախանձում եմ նրան.

— Վերցրեք,— ասում եմ,— քարտեզը, Ալեքսանդր Վասիլևի՛չ (ընկեր Վասիլևսկին այստեղ ներկա է), ցույց տվեք ընկեր Ստալինին, թե ինչպիսի իրադրություն է ստեղծվել: Իսկ պետք է ասել, որ Ստալինը օպերացիաները պլանավորում էր գլոբուսով: (Աշխուժություն դահլիճում): Այո՛, ընկերնե՛ր, կվերցներ գլոբուսը, և ցույց կտար ռազմաճակատի գիծը: Այսպես, ուրեմն, ես ասում եմ ընկ. Վասիլևսկուն, ցույց տվեք քարտեզի վրա իրադրությունը, չէ որ չի կարելի այս պայմաններով հանդերձ շարունակել նախկինում նախատեսված օպերացիան: Գործի շահի համար պետք է փոխել նախկին որոշումը:

Վասիլևսկին ինձ պատասխանեց, որ Ստալինն արդեն դիտարկել է այդ հարցը և որ ինքը, Վասիլևսկին, այլևս չի գնա Ստալինին զեկուցելու, որովհետև նա չի ուզում լսել իր ոչ մի փաստարկն այդ օպերացիայի վերաբերյալ:

Վասիլևսկու հետ խոսելուց հետո ես զանգահարեցի Ստալինի ամառանոց: Բայց Ստալինը չմոտեցավ հեռախոսին, այլ Մալենկովը վերցրեց լսափողը: Ես ասում եմ ընկ. Մալենկովին, որ զանգահարում եմ ռազմաճակատից և ցանկանում եմ անձամբ խոսակցել ընկ. Ստալինի հետ: Ստալինը փոխանցում է Մալենկովի միջոցով, որ ես խոսեմ Մալենկովի հետ: Ես երկրորդ անգամ եմ հայտնում, որ ցանկանում եմ անձամբ զեկուցել Ստալինին այն ծար վիճակի մասին, որ ստեղծվել է մեր ռազմաճակատում: Բայց Ստալինը հարկ չհամարեց վերցնել լսափողը, իսկ մի անգամ ևս պնդեց, որպեսզի ես նրա հետ խոսեմ Մալենկովի միջոցով, թեպետև մինչև հեռախոսը մի քանի քայլ էր:

«Լսելով» այդ եղանակով մեր խնդրանքը, Ստալինն ասաց.

— Թողնե՛լ ամեն ինչ առաջվա նման:

Իսկ ի՞նչ ստացվեց դրանից: Ստացվեց վատթարագույնն այն ամենից, ինչ մենք ենթադրում էինք: Գերմանացիներին հաջողվեց շրջապատել մեր զինվորական խըմբավորումները, որի հետևանքով մենք կորցրինք հարյուր հազարավոր զինվորներ: Ահա ձեզ Ստալինի ռազմական «հանճարը», ահա թե ինչ նստեց այն մեզ վրա: (Շարժում դահլիճում):

Մի անգամ պատերազմից հետո քաղբյուրոյի անդամների հետ Ստալինի հանդիպման ժամանակ Անաստաս Իվանովիչ Միկոյանն[46] ասաց, թե ահա, ուրեմն, Խրուշչովն այն ժամանակ իրավացի էր, երբ զանգահարեց Խարկովի օպերացիայի կապակցությամբ, որ իզուր նրա ասածին այն ժամանակ հավանություն չտվեցինք:

Պետք էր տեսնել, թե ինչպե՞ս ջղայնացավ Ստալինը: Ինչպե՞ս կարելի է խոստովանել, որ ինքը՝ Ստալինը, այն ժամանակ իրավացի չէր: Չէ՞ որ նա «հանճար» է, իսկ հանճարը չի կարող իրավացի չլինել: Բոլորը, ով ասես, կարող են սխալվել, իսկ Ստալինը կարծում էր, որ ինքը երբեք չի սխալվում, որ նա միշտ իրավացի է: Եվ նա երբեք և ոչ ոքի չի խոստովանել իր ոչ մի խոշոր կամ մանր սխալը, թեպետև նա կատարել է ոչ քիչ սխալներ, թե՛ տեսական հարցերում, թե՛ իր պրակտիկ գործունեությունում: Կուսակցության համագումարից հետո մեզ, հավանաբար, հարկ կլինի վերանայել շատ ռազմական օպերացիաների գնահատականը և դրանց տալ ճիշտ բացատրություն:

Մեզ վրա շատ արյուն նստեց և այն տակտիկան, որը, չիմանալով մարտական օպերացիաներ վարելու էությունը, Ստալինը պնդում էր այն բանից հետո, երբ հաջողվեց կանգնեցնել հակառակորդին և անցնել հարձակման:

նիստներին ու կոմիտեականներին և նրանց ենթարկել զանգվածային ճնշամիջոցների, զրկանքների ու տառապանքների:

Հայրենական պատերազմի ավարտից հետո խորհրդային ժողովուրդը հպարտությամբ էր նշում մեծ զոհերի ու աներևակայելի ջանքերի գնով ձեռք բերված փառապանծ հաղթանակները: Երկիրը քաղաքական վերելք էր ապրում: Կուսակցությունը պատերազմից դուրս եկավ առավել համախմբված, պատերազմի բոցերում թրծվեցին կուսակցության կադրերը: Այդ պայմաններում ոչ ոքի գլխում միտք անգամ չէր կարող ծագել կուսակցությունում որևէ դավադրության մասին:

Եվ ահա այդ շրջանում հանկարծ ծագում է այսպես կոչված «լենինգրադյան գործը»[49]: Ինչպես այժմ արդեն ապացուցված է, այդ գործը մոգոնված է: Անմեղ տեղը զոհվեցին ընկ. ընկ. Վոզնեսենսկին, Կուզնեցովը, Ռոդիոնովը, Պոպկովը և ուրիշներ:

Հայտնի է, որ Վոզնեսենսկին և Կուզնեցովը աչքի ընկնող և ընդունակ աշխատողներ էին: Իր ժամանակին նրանք մոտ էին Ստալինին: Բավական է ասել, որ Ստալինը Վոզնեսենսկուն առաջ քաշեց Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալի պաշտոնում, իսկ Կուզնեցովն ընտրվեց Կենտրոնական կոմիտեի քարտուղար: Միայն այն, որ Ստալինը Կուզնեցովին հանձնարարեց պետանվտանգության մարմիններին հսկելը, խոսում է այն մասին, թե ինչպիսի վստահություն էր նա վայելում:

Իսկ ինչպե՞ս պատահեց, որ այդ մարդիկ հայտարարվեցին ժողովրդի թշնամիներ ու ոչնչացվեցին:

Փաստերը ցույց են տալիս, որ «լենինգրադյան գործը» ևս արդյունք էր կամայականության, որ Ստալինը թույլ էր տալիս կուսակցության կադրերի նկատմամբ:

Եթե կուսակցության Կենտրոնական կոմիտեում, քաղբյուրոյում գոյություն ունենար նորմալ իրավիճակ, որի պայմաններում նման հարցերը քննարկվելիս լինեին, ինչպես դա ընդունված է կուսակցությունում, և ծանր ու թեթև արվեին բոլոր փաստերը, ապա այդ գործը չէր ծագի, ինչպես և չէին ծագի այլ նման գործեր:

Պետք է ասել, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում դրությունն էլ ավելի բարդացավ: Ստալինը դարձավ ավելի կամակոր, դյուրագրգիռ, կոպիտ, հատկապես խորացավ նրա կասկածամտությունը: Անհավանական չափերի հասավ հետապնդման մոլագարությունը: Շատ աշխատողներ նրա աչքերում դառնում էին թշնամիներ: Պատերազմից հետո Ստալինն ավելի անջրպետվեց կոլեկտիվից, գործում էր բացառապես միանձնյա, հաշվի չառնելով ոչ ոքի և ոչինչ:

Ստալինի անհավանական կասկածամտությունից ճարպկորեն օգտվում էր զազրելի պրովոկատոր, ստոր թշնամի Բերիան, որը կոտորեց հազարավոր կոմունիստների, ազնիվ խորհրդային մարդկանց: Վոզնեսենսկու և Կուզնեցովի առաջքաշումը վախեցրեց Բերիային: Ինչպես այժմ բացահայտվել է, հենց Բերիան էր Ստալինին «մատակարարում» իր և իր ենթակաների սարքած նյութերը դիմումների, անանուն նամակների տեսքով, զանազան լուրերի և խոսակցությունների տեսքով:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն ստուգեց այսպես կոչված «լենինգրադյան գործը», անմեղորեն տուժած մարդիկ այժմ արդարացվել են, վերականգնվել է փառապանծ Լենինգրադի կուսակցական կազմակերպության պատիվը: Այդ գործի կեղծարարները՝ Աբակումովը[50] և մյուսները, դատի տրվեցին, նրանց դատեցին Լենինգրադում և նրանք ստացան ըստ արժանվույն:

Հարց է ծագում. իսկ ինչու՞ մենք այժմ կարողացանք պարզաբանել այդ գործը, իսկ այդ բանը չարեցինք ավելի վաղ, Ստալինի կենդանության օրոք, որպեսզի թույլ չտայինք անմեղ մարդկանց կործանումը: Որովհետև Ստալինն ինքն էր ուղղություն տալիս «լենինգրադյան գործին», և այն ժամանակվա քաղբյուրոյի անդամների մեծամասնությունը չգիտեր գործի բոլոր հանգամանքները և, իհարկե, չէր կարող միջամտել:

Հենց որ Ստալինը Բերիայից և Աբակումովից ստացավ որոշ նյութեր, նա չպարզաբանելով այդ կեղծիքների էությունը ցուցում տվեց հետաքննել Վոզնեսենսկու և Կուզնեցովի «գործը»: Եվ դրանով արդեն կանխորոշված էր նրանց ճակատագիրը:

Այս առումով ուսանելի է նաև իբր թե Վրաստանում գոյություն ունեցած մեգրելական ազգայնական կազմակերպության գործը: Այս հարցի կապակցությամբ, ինչպես հայտնի է, 1951 թվականի նոյեմբերին և 1952 թվականի մարտին ընդունվեցին ԽՄԿԿ Կենտկոմի որոշումները[51]: Այդ որոշումներն ընդունվել են առանց քաղբյուրոյում քննարկելու, Ստալինն ինքն է թելադրել այդ որոշումները: Նրանցում



ծանր մեղադրանքներ էին բարդվում շատ ազնիվ կոմունիստների վրա: Շինծու նյութերի հիման վրա հաստատվում էր, թե Վրաստանում իբրև թե գոյություն ունի ազգայնական կազմակերպություն, որը նպատակ է դրել վերացնել խորհրդային իշխանությունն այդ հանրապետությունում իմպերիալիստական պետությունների օգնությամբ:

Այդ կապակցությամբ ձերբակալվեցին Վրաստանի մի շարք կուսակցական և խորհրդային աշխատողներ: Ինչպես հետագայում է պարզվել դա զրպարտություն էր Վրաստանի կուսակցական կազմակերպության հասցեին:

Մենք գիտենք, որ Վրաստանում, ինչպես և որոշ այլ հանրապետություններում, իր ժամանակին եղել են տեղական բուրժուական ազգայնականության դրսևորումներ: Հարց է ծագում, գուցեև իրոք, այն ժամանակաշրջանում, երբ ընդունվում էին վերոհիշյալ որոշումները, ազգայնական միտումներն աճել էին այն չափերով, որ առկա էր Խորհրդային Միության կազմից Վրաստանի դուրս գալու և թուրքական պետության կազմի մեջ նրա անցնելու վտանգը: (Աշխուժություն դահլիճում, ծիծաղ):

Դա, իհարկե, անհեթեթություն է: Դժվար է նույնիսկ պատկերացնել, թե ինչպես կարող էին ոմանց գլխում նման ենթադրություններ ծագել: Բոլորին է հայտնի, թե ինչպես է բարձրացել Վրաստանը իր տնտեսական և մշակութային զարգացմամբ խորհրդային իշխանության տարիներին:

Վրացական հանրապետության արդյունաբերական արտադրանքը 27 անգամ գերազանցում է նախահեղափոխական Վրաստանի արտադրանքին: Հանրապետությունում ստեղծվել են արդյունաբերական միանգամայն նոր շատ ճյուղեր, որոնք այնտեղ չկային մինչ հեղափոխությունը. սև մետաղաձուլություն, նավթարդյունաբերություն, մեքենաշինություն և այլն: Արդեն վաղուց վերացված է բնակչության անգրագիտությունը, այն դեպքում, երբ նախահեղափոխական Վրաստանում անգրագետները կազմում էին 78 տոկոս:

Համեմատելով դրությունն իրենց հանրապետությունում աշխատավորների ծանր դրության հետ Թուրքիայում, կարո՞ղ էին արդյոք վրացիները ձգտել միանալու Թուրքիային: Թուրքիայում 1955 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով 18 անգամ պակաս է պողպատ ձուլվել, քան Վրաստանում: Վրաստանում մեկ շնչի հաշվով 9 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան Թուրքիայում: 1950 թվականի մարդահամարի տվյալներով Թուրքիայի բնակչության 65 տոկոսն անգրագետ էր, իսկ կանանց շրջանում՝ մոտ 80 տոկոսը: Վրաստանում կա 19 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնցում սովորում են շուրջ 39 հազար ուսանողներ, որը 8 անգամ ավելի է, քան Թուրքիայում (բնակչության հազար հոգու հաշվով): Վրաստանում խորհրդային իշխանության տարիներին անհամեմատ բարձրացել է աշխատավորների նյութական բարեկեցությունը:

Պարզ է, որ Վրաստանում տնտեսության և մշակույթի զարգացման, աշխատավորների սոցիալիստական գիտակցականության աճի համեմատ ավելի ու ավելի է վերանում այն հողը, որ բուրժուական ազգայնականություն է սնում:

Եվ ինչպես պարզվեց իրականում, ոչ մի ազգայնական կազմակերպություն էլ Վրաստանում չի եղել: Հազարավոր ոչ մի մեղք չունեցող խորհրդային մարդիկ դարձան կամայականության և անօրինականության զոհեր: Եվ այդ ամենը կատարվում էր Ստալինի՝ «վրաց ժողովրդի մեծ զավակի», ինչպես սիրում էին վրացիներն անվանել իրենց համերկրացուն, «հանճարեղ» ղեկավարությամբ: (Շարժում դահլիճում):

Ստալինի կամայականությունն իրեն զգացնել էր տալիս ոչ միայն երկրի ներքին կյանքի հարցերը լուծելիս, այլև Խորհրդային Միության միջազգային հարաբերությունների մարզում:

Կենտկոմի հուլիսյան պլենումում[52] մանրամասնորեն քննարկվեցին Հարավսլավիայի հետ կոնֆլիկտի առաջացման պատճառները: Ընդսմին նշվեց Ստալինի միանգամայն դատապարտելի դերը: Չէ՞ որ «հարավսլավական գործում» չկային այնպիսի հարցեր, որոնք հնարավոր չլինեին լուծել ընկերական կուսակցական քննարկման միջոցով: Այդ «գործի» առաջացման համար լուրջ հիմքեր չկային, լիովին հնարավոր էր թույլ չտալ խզում այդ երկրի հետ: Դա չի նշանակում, սակայն, թե հարավսլավական ղեկավարները սխալներ կամ թերություններ չունեին: Բայց այդ սխալներն ու թերությունները Ստալինը հրեշավոր չափերով չափազանցրեց, որը հանգեցրեց մեզ բարեկամ երկրի հետ կապերի խզմանը:

Ես հիշում եմ առաջին օրերը, երբ արհեստականորեն սկսեց ուռճացվել կոնֆլիկտը Խորհրդային Միության և Հարավսլավիայի միջև:

Մի անգամ, երբ ես Կիևից եկա Մոսկվա, ինձ իր մոտ կանչեց Ստալինը և, մատնացույց անելով դրանից քիչ առաջ Տիտոյին[53] ուղարկած նամակի պատճենը, հարցրեց.

— Կարդացե՞լ ես:

Եվ չսպասելով պատասխանին, ասաց.

— Ա՛յ, կշարժեմ ճկույթս, և Տիտոն չի լինի: Նա կթռչի:

Մեզ վրա թանկ նստեց այդ «ճկույթ շարժելը»: Նման հայտարարությունն արտացոլում էր Ստալինի վեհության մոլուցքը, չէ՞ որ նա այդպես էլ գործում էր. կշարժեմ ճկույթս՝ և Կոսիորը չկա, մեկ անգամ ևս կշարժեմ ճկույթս՝ և չկան արդեն Պոստիշևը, Չուբարը, կշարժեմ նորից ճկույթս՝ և անհետանում են Վոզնեսենսկին, Կուզնեցովը և շատ ուրիշներ:

Բայց Տիտոյի դեպքում այդպես չստացվեց: Ինչքան էլ որ Ստալինը շարժում էր ոչ միայն ճկույթը, այլև այն ամենը, ինչ կարող էր, Տիտոն չթռավ: Ինչու՞: Դե այն պատճառով, որ հարավսլավական ընկերների հետ վեճում Տիտոյի թիկունքին կանգնած էր պետությունը, կանգնած էր ժողովուրդը, որն իր ազատության ու անկախության համար պայքարի դաժան դպրոց էր անցել, մի ժողովուրդ, որն իր ղեկավարներին աջակցություն էր ցույց տալիս:

Ահա թե ինչի էր հանգեցնում Ստալինի վեհության մոլուցքը: Նա լիովին կորցնում էր իրականության զգացումը, ցուցաբերում էր կասկածամտություն, մեծամտություն ոչ միայն առանձին անձանց նկատմամբ երկրի ներսում, այլև ամբողջ կուսակցությունների ու երկրների նկատմամբ:

Այժմ մենք ուշադրությամբ պարզաբանեցինք Հարավսլավիայի հետ կապված հարցը և գտանք ճիշտ լուծում, որը հավանության է արժանանում թե՛ Խորհրդային Միության, թե Հարավսլավիայի ժողովուրդների կողմից, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների բոլոր աշխատավորների, բոլոր առաջադեմ մարդկության կողմից: Հարավսլավիայի հետ աննորմալ հարաբերությունների վերացումն իրականացված է հանուն սոցիալիզմի ողջ լագերի շահերի, հանուն ամբողջ աշխարհում խաղաղության շահերի:

Հարկ է նաև հիշեցնել «բժիշկ-վնասարարների գործի»[54] մասին: (Ծարժում դահլիճում): Իսկն ասած, ոչ մի «գործ» էլ չի եղել, բացի բժիշկ Տիմաշուկի հայտարարությունից, որը, կարող է պատահի որևէ մեկի ազդեցության տակ կամ ցուցումով (չէ՞ որ նա անվտանգության մարմինների գաղտնի աշխատակիցն է եղել), Ստալինին նամակ է գրել, որում հայտարարել է, որ բժիշկներն իբր թե բուժման ոչ ճիշտ եղանակներ են կիրառում:

Բավական էր Ստալինին հասցեագրված նման մի նամակ, որ նա անմիջապես հետևություններ աներ, թե Խորհրդային Միությունում կան բժիշկներ-վնասարարներ, և ցուցում տվեց՝ ձերբակալել խորհրդային բժշկագիտության մի խումբ խոշոր մասնագետների: Նա ինքն էր ցուցումներ տալիս, թե ինչպես վարել քննությունը, ինչպես հարցաքննել ձերբակալվածներին: Նա ասել է. ակադեմիկոս Վինոգրադովին շղթաներ դնել, այինչին ծեծել: Այստեղ ներկա է համագումարի պատգամավոր, պետանվտանգության նախկին մինիստր ընկ. Իգնատևը[55]: Ստալինը նրան ուղղակի հայտարարել է.

— Եթե բժիշկների խոստովանությունը ձեռք չբերեք, ապա ձեր գլուխը կթռչի: (Զայրույթի աղմուկ դահլիճում):

Ստալինն անձամբ կանչում էր քննիչին, հրահանգավորում նրան, նշում հետաքննության մեթոդները, իսկ մեթոդները մեկն էին՝ ծեծել, ծեծել և ծեծել:

Բժիշկների ձերբակալությունից որոշ ժամանակ անց մենք՝ քաղբյուրոյի անդամներս, ստացանք բժիշկների խոստովանությունների արձանագրությունները: Այդ արձանագրություններն առաքելուց հետո Ստալինը մեզ ասում էր.

— Դուք կույր եք, կատվի ձագեր, ինչ կլինի առանց ինձ, կկործանվի երկիրը, որովհետև դուք չեք կարող ճանաչել թշնամիներին:

Գործի դրվածքն այնպիսին էր, որ ոչ ոք հնարավորություն չուներ ստուգելու այն փաստերը, որոնց հիման վրա հետաքննություն էր կատարվում: Հնարավորություն չկար փաստերն ստուգելու այդ խոստովանությունները տված մարդկանց հետ շփման մեջ մտնելու միջոցով:

Բայց մենք զգում էինք, որ բժիշկների ձերբակալման հետ կապված գործը մաքուր գործ չէ: Այդ մարդկանցից շատերին մենք անձամբ գիտեինք, նրանք մեզ բուժել են: Եվ երբ Ստալինի մահից հետո մենք նայեցինք, թե ինչպես էր ստեղծվել այդ «գործը», ապա տեսանք, որ այն սկզբից մինչև վերջ կեղծ էր:



Այդ խայտառակ «գործը» ստեղծված էր Ստալինի կողմից, բայց նա չհասցրեց այն մինչև վերջ հասցնել (իր ըմբռնմամբ), և այդ պատճառով էլ բժիշկները կենդանի մնացին: Այժմ նրանք բոլորն էլ ռեաբիլիտացվել են, աշխատում են նույն պաշտոններում, ինչպես նախկինում, բուժում են ղեկավար աշխատողների, ներառյալ նաև կառավարության անդամներին: Մենք նրանց լիովին վստահում ենք, և նրանք բարեխղճորեն կատարում են, ինչպես նախկինում, իրենց ծառայողական պարտականությունը:

Զանազան կեղտոտ և խայտառակ գործերի կազմակերպման հարցում զազրելի դեր էր խաղում մեր երկրի թունդ թշնամի, օտարերկրյա հետախուզության գործակալ Բերիան, որը նվաճել էր Ստալինի վստահությունը: Ինչպե՞ս այդ պրովոկատորը կարողացավ հասնել նման դիրքի կուսակցությունում և պետությունում, որ դարձավ Խորհրդային Միության Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալը և Կենտկոմի քաղբյուրոյի անդամ: Այժմ պարզված է, որ այդ սրիկան պետական սանդղակով վեր էր բարձրանում յուրաքանչյուր աստիճանի վրա բազմաթիվ դիակներ ոտնատակ տալով:

Եղե՞լ են արդյոք ահազանգեր այն մասին, որ Բերիան կուսակցության թշնամի մարդ է: Այո՛, եղել են: Դեռևս 1937 թվականին Կենտկոմի պլենումում առողջապահության նախկին ժողկոմ Կամինսկին ասաց, որ Բերիան աշխատել է մուսավաթական հետախուզությունում[57]: Կենտկոմի պլենումը դեռ չէր հասցրել վերջանալ, երբ Կամինսկին ձերբակալվեց և ապա գնդակահարվեց: Ստուգե՞ց արդյոք Ստալինը Կամինսկու հայտարարությունը: Ո՛չ, որովհետև Ստալինը հավատում էր Բերիային և դա նրա համար բավական էր: Իսկ եթե Ստալինը հավատում էր, ապա ոչ ոք այլևս չէր կարող նրա կարծիքին հակառակ որևէ բան ասել. իսկ եթե որևէ մեկի մտքին փչեր հակաճառել, ապա նա կարժանանար միևնույն բախտին, ինչ Կամինսկին:

Եղել են նաև այլ ահազանգեր: Հետաքրքրություն է ներկայացնում ընկ. Սնեգովի[58] դիմումը կուսակցության Կենտրոնական կոմիտեին (ի դեպ ասած, նա վերջերս ռեաբիլիտացված է՝ ճամբարներում 17 տարի անցկացնելուց հետո): Իր դիմումում նա գրում է.

«Կենտկոմի նախկին անդամ Քարթվելիշվիլի-Լավրենտևի[59] ռեաբիլիտացման հարցադրման կապակցությամբ ԱՊԿ-ի ներկայացուցչին իմ կողմից տրված են մանրամասն ցուցմունքներ: Բերիայի դերի մասին Քարթվելիշվիլու հետ հաշվեհարդարի գործում և այն հանցագործ դրդապատճառների մասին, որոնցով ղեկավարվել է Բերիան: Անհրաժեշտ եմ համարում վերականգնել մի կարևոր փաստ այդ հարցում և դրա մասին հայտնել Կենտկոմին, քանի որ ես անհարմար եմ համարել այն զետեղել քննչական փաստաթղթերում:

30. 10. 1931 թ. ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոյի նիստում կայացավ Անդրերկրկոմի քարտուղար Քարթվելիշվիլու զեկուցումը: Ներկա էին երկրկոմի բյուրոյի բոլոր անդամները, որոնցից միայն ես եմ կենդանի: Այդ նիստում Ի. Վ. Ստալինն իր ելույթի վերջում առաջարկ մտցրեց կազմել Անդրերկրկոմի քարտուղարություն հետևյալ կազմով. 1-ին քարտուղար Քարթվելիշվիլի, 2-րդ՝ Բերիա (դա կուսակցության պատմության մեջ առաջին անգամ էր Բերիայի ազգանունը տրվում որպես կուսակցական պաշտոնի թեկնածու), անմիջապես Քարթվելիշվիլին ռեպլիկով հայտարարեց, որ Բերիային լավ է ճանաչում և այդ պատճառով վճռականապես հրաժարվում է նրա հետ աշխատել: Այդ ժամանակ Ի. Վ. Ստալինն առաջարկեց հարցը թողնել բաց և այն լուծել աշխատանքային կարգով: Երկու օր հետո որոշվեց Բերիային կուսակցական աշխատանքի առաջ քաշելու մասին և Անդրկովկասից Քարթվելիշվիլու գնալու մասին:

Դա հաստատել կարող են ընկերներ Ա. Ի. Միկոյանը, Լ. Մ. Կագանովիչը, որոնք ներկա էին այդ նիստին:

Բազմամյա թշնամական հարաբերությունները Քարթվելիշվիլու և Բերիայի միջև լայնորեն հայտնի էին. դրանց ակունքները սկսվում էին Անդրկովկասում ընկ. Սերգոյի[60] աշխատելու ժամանակվանից, քանի որ Քարթվելիշվիլին Սերգոյի մերձավորագույն օգնականն էր: Դրանք էլ Բերիայի համար հիմք ծառայեցին Քարթվելիշվիլու դեմ «գործ» թխելու համար:

Բնութագրական է, որ ըստ այդ «գործի» Քարթվելիշվիլին մեղադրվում է Բերիայի դեմ տեռորիստական ակտում»:

Բերիայի գործով մեղադրական եզրակացության մեջ մանրամասնորեն շարադրված են նրա հանցագործությունները: Բայց ինչ-որ բան արժե հիշեցնել, առավել

պատերազմում տանկերի ու ավիացիայի մեծ զանգվածների դերի, հրետանու՝ որպես զորքի ամենահզոր տեսակի, վերաբերյալ։ Պատերազմի տարբեր փուլերում ստալինյան հանճարը գտնում էր ճիշտ որոշումներ, որոնք լիովին հաշվի էին առնում իրադրության առանձնահատկությունները»։ (Ծարժում դահլիճում)։

Այնուհետև Ստալինն ինքն էլ գրում է.

«Ստալինյան ռազմական արվեստը դրսևորվեց ինչպես պաշտպանության, այնպես էլ հարձակման ժամանակ։ Հանճարեղ խորաթափանցությամբ կռահում էր ընկեր Ստալինը թշնամու պլանները և խափանում դրանք։ Այն ճակատամարտերում, որոնցում ընկեր Ստալինը ղեկավարում էր խորհրդային զորքերը, մարմնավորված էին ռազմական օպերատիվ արվեստի աչքի ընկնող նմուշները»։

Այսպես էր փառաբանվում Ստալինը որպես զորավար։ Բայց ու՞մ կողմից։ Իրեն իսկ՝ Ստալինի կողմից, որը, սակայն, հանդես էր գալիս արդեն ոչ թե զորավարի, այլ հեղինակ-խմբագրի, իր փառաբանական կենսագրության գլխավոր կազմողներից մեկի դերում։

Այսպիսին են, ընկերնե՛ր, փաստերը։ Պետք է ուղղակի ասել, որ դրանք խայտառակ փաստեր են։

Եվս մեկ փաստ Ստալինի այդ նույն «Համառոտ կենսագրությունից»։ Հայտնի է, որ «Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության համառոտ դասընթացի» ստեղծման վրա աշխատել է կուսակցության Կենտրոնական կոմիտեի հանձնաժողովը։ Այդ, ի դեպ ասած, նույնպես անհատի պաշտամունքով խիստ ներծծված աշխատությունը կազմվել է հեղինակների որոշակի կոլեկտիվի կողմից։ Եվ այդ հանգամանքը արտացոլված էր Ստալինի «Համառոտ կենսագրության» մեջ հետևյալ ձևակերպումով.

«ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հանձնաժողովն ընկեր Ստալինի ղեկավարությամբ, նրա անձնական ամենագործուն մասնակցությամբ ստեղծում է «Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմության համառոտ դասընթացը»։

Սակայն այս ձևակերպումն այլևս չէր կարող գոհացնել Ստալինին, և հրատարակված «Համառոտ կենսագրությունում» այդ տեղը փոխարինված է հետևյալ դրույթով.

«1938 թվականին լույս տեսավ «ՀամԿ(բ)Կ պատմություն։ Համառոտ դասընթաց» գիրքը, որը գրել էր ընկեր Ստալինը և հավանության արժանացել ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հանձնաժողովի կողմից»։ Սրանից ավելի էլ ի՞նչ կարելի է ասել։ (Աշխուժություն դահլիճում)։

Ինչպես տեսնում եք, տեղի է ունեցել կոլեկտիվի կողմից ստեղծված աշխատության ապշեցուցիչ փոխարկում Ստալինի կողմից գրված գրքի։ Կարիք չկա ասելու, թե ինչպես և ինչու է տեղի ունեցել նման փոխարկումը։

Օրինական հարց է ծագում. եթե Ստալինն այդ գրքի հեղինակն է, ապա ինչու՞ էր նրան պետք այդպես փառաբանել Ստալինի անձը և, ըստ էության, մեր փառապանծ կոմունիստական կուսակցության պատմության ամբողջ հետհոկտեմբերյան ժամանակաշրջանը դարձնել միայն «ստալինյան հանճարի» արարքների ֆոն։

Մի՞թե այդ գրքում արժանավայել կերպով արտացոլված են կուսակցության ջանքերը՝ երկրի սոցիալիստական վերափոխման, սոցիալիստական հասարակարգի կառուցման, երկրի ինդուստրացման և կոլեկտիվացման նպատակով և այլ միջոցառումները, որ իրականացրել է Լենինի նախագծած ուղիով հաստատակամորեն ընթացող կուսակցությունը։ Այնտեղ գլխավորապես խոսվում է Ստալինի, նրա ելույթների, նրա զեկուցումների մասին։ Ամեն ինչ, առանց որևէ բացառության, կապված է նրա անվան հետ։

Եվ երբ Ստալինն ինքն է անձամբ հայտարարում, թե հենց ինքն է գրել «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը», ապա դա չի կարող ամենաքիչը զարմանք ու տարակուսանք չառաջացնել։ Մի՞թե կարող է մարքսիստ-լենինյանն այդպես գրել ինքն իր մասին, մինչև երկինք բարձրացնելով իր անձի պաշտամունքը։

Կամ էլ վերցնենք ստալինյան մրցանակների[64] հարցը։ (Ծարժում դահլիճում)։ Նույնիսկ ցարերը այնպիսի մրցանակներ չեն սահմանել, որ կոչեին իրենց անունով։

Ստալինն ինքը լավագույնը համարեց Խորհրդային Միության պետական հիմնի այն տեքստը, որում ոչ մի խոսք չկա կոմունիստական կուսակցության մասին, բայց կա Ստալինի հետևյալ անօրինակ փառաբանությունը.

Մեզ Ստալինն ուսույց, որ լինենք անձնվեր մենք՝
Դեպի ժողովուրդն, աշխատանք, քաջություն։



Հիմնի այս տողերում լենինյան մեծ կուսակցության ամբողջ հսկայական դաստիարակչական, ղեկավարող և ոգեշնչող գործունեությունը վերագրված է միմիայն Ստալինին։ Դա, իհարկե, բացահայտ նահանջ է մարքսիզմ-լենինիզմից, կուսակցության դերի բացահայտ նվազեցում և նսեմացում։ Ձեզ ի գիտություն պետք է ասել, որ Կենտկոմի նախագահությունն արդեն որոշում է ընդունել հիմնի նոր տեքստ ստեղծելու վերաբերյալ, որն արտացոլեր ժողովրդի դերը, կուսակցության դերը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Իսկ մի՞թե առանց Ստալինի գիտության էր նրա անունը շնորհվում բազմաթիվ խոշորագույն ձեռնարկությունների ու քաղաքների, մի՞թե առանց նրա գիտության էին ամբողջ երկրով մեկ տեղադրվում Ստալինի մոնումենտները՝ այդ «կենդանության օրոք հուշարձանները»։ Չէ՞ որ փաստ է, որ Ստալինն ինքը 1951 թվականի հուլիսի 2-ին ստորագրեց ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, որում նախատեսվում էր Վոլգա-Դոնի ջրանցքում Ստալինի մոնումենտալ արձանի կառուցումը, իսկ նույն տարվա սեպտեմբերի 4-ին կարգադրություն իջեցրեց այդ մոնումենտի կառուցման համար 33 տոննա պղինձ բաց թողնելու վերաբերյալ։ Ով եղել է Ստալինգրադի մոտերքում, նա տեսել է, թե ինչպիսի արձան է այնտեղ վեր հառնում, ընդ որում մի այնպիսի տեղում, որտեղ քիչ մարդ է լինում։ Իսկ նրա կառուցման վրա շատ միջոցներ են ծախսվել, և դա այն ժամանակ, երբ մեր մարդիկ այդ շրջաններում պատերազմից հետո դեռևս ապրում էին գետնահյուղերում։ Ինքներդ դատեցեք, արդյո՞ք ճիշտ էր գրում Ստալինն իր կենսագրությունում, թե նա «իր գործունեությունում թույլ չէր տալիս ինքնահավանության, մեծամտության, ինքնահիացման նշույլ անգամ»։

Դրա հետ միասին Ստալինը դրսևորում էր հարգանքի բացակայություն Լենինի հիշատակի հանդեպ։ Պատահական չէ, որ Խորհուրդների պալատը, որպես հուշարձան Վլադիմիր Իլյիչին, որի կառուցման վերաբերյալ որոշումն ընդունվել էր ավելի քան 30 տարի առաջ, չկառուցվեց, և նրա կառուցման հարցը մշտապես հետաձգվում էր ու մոռացության տրվում։ Պետք է շտկել այս վիճակը և կառուցել Վլադիմիր Իլյիչ Լենինի հուշարձանը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Չի կարելի չհիշել խորհրդային կառավարության 1925 թվականի օգոստոսի 14-ի որոշումը «Գիտական աշխատանքների համար Վ. Ի. Լենինի մրցանակներ սահմանելու մասին»։ Այդ որոշումը հրապարակվեց մամուլում, բայց մինչև օրս լենինյան մրցանակներ չկան։ Սա նույնպես պետք է շտկել։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ստալինի կենդանության օրոք, շնորհիվ այն հայտնի մեթոդների, որոնց մասին ես արդեն ասացի, փաստեր բերելով, թե ինչպես է գրվել թեկուզ «Ստալինի համառոտ կենսագրությունը», բոլոր իրադարձությունները լուսաբանվել են այնպես, որ Լենինը կարծես թե երկրորդական դեր է խաղացել նույնիսկ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն իրականացնելիս։ Բազմաթիվ կինոնկարներում, գեղարվեստական գրականության երկերում Լենինի կերպարը սխալ է լուսաբանվում, անթույլատրելիորեն նսեմացվում է։

Ստալինը շատ էր սիրում նայել «Անմոռանալի 1919 թվականը» կինոնկարը, որտեղ նա պատկերված է ընթացող զրահագնացքի ոտնակին և համարյա թրով ոչնչացնում է թշնամիներին։ Թող Կլիմենտ Եֆրեմովիչը, մեր թանկագին բարեկամը, իր մեջ քաջություն գտնի և գրի ճշմարտությունը Ստալինի մասին, չէ՞ որ նա գիտե, թե ինչպես է Ստալինը կռվել։ Ընկեր Վորոշիլովի[66] համար, իհարկե, ծանր է այդ գործն սկսելը, բայց լավ կլինի, որ նա այդ բանն անի։ Դա կարժանանա բոլորի՝ թե՛ ժողովրդի, թե՛ կուսակցության հավանությանը։ Եվ մեր թոռներն այդ բանի համար շնորհակալ կլինեն։ (Երկարատև ծափահարություններ)։

Հոկտեմբերյան հեղափոխության և քաղաքացիական պատերազմի հետ կապված դեպքերը լուսաբանելիս, մի շարք դեպքերում բանն այնպես էր ներկայացվում, թե ամենուրեք գլխավոր դերը կարծես Ստալինին էր պատկանում, որ ամենուրեք և ամեն տեղ նա է հուշում Լենինին, թե ինչպես և ինչ պետք է անել։ Բայց չէ՞ որ դա զրպարտություն է Լենինի հասցեին։ (Երկարատև ծափահարություններ)։

Ես, հավանաբար ճշմարտության դեմ չեմ մեղանչի, եթե ասեմ, որ այստեղ ներկա գտնվողներից 99 տոկոսը քիչ բան էին լսել և գիտեին Ստալինի մասին մինչև 1924 թվականը, իսկ Լենինին երկրում բոլորը գիտեին.. ամբողջ կուսակցությունը գիտեր, ողջ ժողովուրդը գիտեր՝ փոքրից մինչև մեծը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Այս ամենը պետք է վճռականորեն վերանայել, որպեսզի պատմության, գրակա-

նության մեջ, արվեստի երկերում ճշմարտացիորեն արտացոլվեն Վ. Ի. Լենինի դերը, մեր կոմունիստական կուսակցության և խորհրդային ժողովրդի՝ ժողովուրդ-ստեղծագործողի, ժողովուրդ-արարչի մեծագործությունները: (Ծափահարություններ):

***

Ընկերնե՛ր: Անհատի պաշտամունքը կուսակցական շինարարությունում և տնտեսական աշխատանքում նպաստեց արատավոր մեթոդների տարածմանը, ծնեց ներկուսակցական և խորհրդային դեմոկրատիայի կոպիտ խախտումներ, մերկ վարչարարություն, զանազան բնույթի աղավաղումներ, թերությունների սվաղում, իրականության գունազարդում: Մեզանում լայնորեն բազմացան ոչ քիչ թվով ստորաքարշներ, փառաբանողներ, աչքակապություն անողներ:

Չի կարելի չտեսնել նաև այն, որ կուսակցական, խորհրդային և տնտեսական աշխատողների բազմաթիվ ձերբակալությունների հետևանքով մեր կադրերն սկսեցին աշխատել անվստահորեն, քաշվելով, վախենալ նորից զգուշանալ նույնիսկ սեփական ստվերից, սկսեցին քիչ նախաձեռնություն ցուցաբերել աշխատանքում:

Իսկ վերցրեք կուսակցական ու խորհրդային մարմինների որոշումները: Դրանք սկսեցին կազմվել ըստ շաբլոնի, հաճախ առանց հաշվի առնելու կոնկրետ իրավիճակը: Բանն այնտեղ էր հասել, որ ցանկացած հարցերի վերաբերյալ կուսակցական և այլ աշխատողների ելույթները նույնիսկ ամենափոքր նիստերում, խորհրդակցություններում տեղի էին ունենում հուշաթերթիկով: Այդ ամենը կուսակցական ու խորհրդային աշխատանքի ձևականացման, ապարատի բյուրոկրատացման վտանգ էր ծնում:

Ստալինի կտրվածությունը կյանքից, տեղերում գործերի իսկական վիճակին նրա անտեղյակությունը կարելի է ակներևորեն ցույց տալ գյուղատնտեսության ղեկավարման օրինակով:

Բոլոր նրանք, ովքեր քիչ թե շատ հետաքրքրվել են երկրի վիճակով, տեսել են գյուղատնտեսության ծանր վիճակը, իսկ Ստալինը դա չէր նկատում: Մենք ասու՞մ էինք արդյոք այդ մասին Ստալինին: Այո՛, ասում էինք, բայց նա մեզ չէր պաշտպանում: Իսկ ինչու՞ էր այդպես ստացվում: Որովհետև Ստալինը ոչ մի տեղ չէր մեկնում, բանվորների և կոլտնտեսականների հետ չէր հանդիպում և չգիտեր իրական վիճակը տեղերում:

Նա երկիրն ու գյուղատնտեսությունն ուսումնասիրում էր միայն կինոնկարներով: Իսկ կինոնկարները գունազարդում, լաքապատում էին գործերի վիճակը գյուղատնտեսությունում: Կոլտնտեսային կյանքը շատ կինոնկարներում ներկայացվում էր այնպես, որ սեղանները տրաքվում էին հնդուհավերի ու սագերի առատությունից: Երևի, Ստալինը մտածում էր, որ իրականում հենց այդպես է, որ կա:

Վլադիմիր Իլյիչ Լենինն այլ կերպ էր նայում կյանքին, նա ամբողջ ժամանակ սերտորեն կապված էր ժողովրդի հետ. ընդունում էր գյուղացի-խնդրատարներին, հաճախ ելույթ էր ունենում ֆաբրիկաներում ու գործարաններում, մեկնում էր գյուղերը, զրուցում գյուղացիների հետ:

Ստալինն անջրպետվել էր ժողովրդից, նա ոչ մի տեղ չէր մեկնում: Եվ այդպես շարունակվում էր տասնյակ տարիներ: Նրա վերջին ուղևորությունը գյուղ տեղի էր ունեցել 1928 թվականի հունվարին, երբ նա մեկնել էր Սիբիր հացամթերումների հարցերով: Իսկ որտեղի՞ց նա կարող էր գիտենալ գյուղի դրությունը:

Եվ երբ Ստալինին զրույցներից մեկի ժամանակ ասվեց, որ մեզանում գյուղատնտեսության դրությունը ծանր է, երկրում հատկապես վատ է մսի և անասնապահական մյուս մթերքների արտադրության վիճակը, հանձնաժողով ստեղծվեց, որին հանձնարարվեց նախապատրաստել «Կոլեկտիվ և պետական տնտեսություններում անասնապահության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշման նախագիծը: Մենք մշակեցինք նման նախագիծ:

Իհարկե, մեր այն ժամանակվա առաջարկությունները բոլոր հնարավորությունները չէին ընդգրկում, բայց ուրվագծված էին հասարակական անասնապահության վերելքի ուղիները: Այն ժամանակ առաջարկվում էր բարձրացնել անասնապահության մթերքների գները, որպեսզի բարձրացվեր կոլտնտեսականների, ՄՏԿ-ների և պետտնտեսությունների աշխատողների նյութական շահագրգռությունը անասնապահության զարգացման գործում: Բայց մեր կողմից մշակված նախագիծը չընդունվեց, 1953 թվականի փետրվարին այն հետաձգվեց:



Ավելին, այդ նախագիծը քննարկելիս Ստալինն առաջարկ մտցրեց կոլտնտեսությունների և կոլտնտեսականների հարկը բարձրացնել ևս 40 միլիարդ ռուբլով, որովհետև, նրա կարծիքով, գյուղացիները հարուստ են ապրում և, վաճառելով ընդամենը մեկ հավ, կոլտնտեսականը կարող է լիովին մարել պետական հարկը:

Ապա մի մտածեցեք, թե դա ինչ էր նշանակում: Չէ՞ որ 40 միլիարդ ռուբլին մի այնպիսի գումար էր, որը գյուղացիները չէին ստանում իրենց բոլոր հանձնած մթերքների դիմաց: 1945 թվականին, օրինակ, կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները պետությանը հանձնած և վաճառած արտադրանքի դիմաց ստացել են 26 միլիարդ 280 միլիոն ռուբլի:

Արդյո՞ք Ստալինի նման առաջարկը հիմնվում էր ինչ-որ տվյալների վրա: Իհարկե, ո՛չ: Փաստերն ու թվերը նման դեպքերում նրան չէին հետաքրքրում: Եթե Ստալինը մի բան ասաց, նշանակում է դա այդպես է՝ չէ՞ որ նա «հանճար» է, իսկ հանճարին հաշվելը պետք չէ, նրան բավական է նայել, որպեսզի անմիջապես ամեն ինչ որոշի, թե ինչպես պետք է լինի: Նա իր խոսքն ասաց, իսկ այնուհետև բոլորը նրանից հետո պետք է կրկնեն ասվածը և հիանան նրա իմաստնությամբ:

Բայց ի՞նչ իմաստուն բան կար գյուղատնտեսական հարկը 40 միլիարդ ռուբլով մեծացնելու առաջարկում: Բոլորովին էլ ոչ մի, քանի որ այդ առաջարկը բխում էր ոչ թե իրականության ռեալ գնահատականից, այլ կյանքից կտրված մարդու ֆանտաստիկ հորինվածքներից:

Այժմ գյուղատնտեսությունում մենք սկսել ենք քիչ-քիչ դուրս պրծնել ծանր կացությունից: Կուսակցության XX համագումարի պատգամավորների ելույթներն ուրախացնում են մեզանից յուրաքանչյուրին, երբ պատգամավորներից շատերն ասում են, որ բոլոր պայմանները կան անասնապահության հիմնական մթերքների արտադրության գծով վեցերորդ հնգամյակի խնդիրները կատարելու համար ոչ թե հինգ տարում, այլ 2—3 տարում: Մենք վստահ ենք նոր հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու հարցում: (Երկարատև ծափահարություններ):

***

Ընկերնե՛ր:

Երբ մենք այժմ խիստ ելույթ ենք ունենում Ստալինի կենդանության օրոք լայնորեն տարածված անհատի պաշտամունքի դեմ և խոսում ենք մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ այդ պաշտամունքի ծնած շատ բացասական երևույթների մասին, ապա առանձին մարդկանց մոտ կարող է հարց առաջանալ. ինչպե՞ս թե, չէ՞ որ Ստալինը 30 տարի գլխավորել է կուսակցությունն ու երկիրը, նրա օրոք ձեռք են բերվել խոշոր հաղթանակներ, մի՞թե դա կարելի է ժխտել: Ես կարծում եմ, որ հարցն այդպես դնել կարող են միայն անհատի պաշտամունքով կուրացած և անհույս կերպով հիպնոսացված մարդիկ, որոնք չեն հասկանում հեղափոխության և խորհրդային պետության էությունը, լրջորեն, լենինաբար չեն հասկանում կուսակցության և ժողովրդի դերը խորհրդային հասարակության զարգացման գործում:

Սոցիալիստական հեղափոխությունը կատարել է բանվոր դասակարգը չքավոր գյուղացիության հետ դաշնակցած, միջակ գյուղացիության աջակցությամբ, կատարել է ժողովուրդը բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ: Լենինի ծառայությունը նրանում է, որ նա ստեղծեց բանվոր դասակարգի մարտական կուսակցությունը, զինեց նրան հասարակական զարգացման օրենքների մարքսիստական ըմբռնումով, կապիտալիզմի դեմ մղվող պայքարում պրոլետարիատի հաղթանակի վերաբերյալ ուսմունքով նա կուսակցությունը կոփեց ժողովրդական զանգվածների հեղափոխական կռիվների բոցերում: Այդ պայքարի ընթացքում կուսակցությունը հետևողականորեն պաշտպանել է ժողովրդի շահերը, դարձել նրա փորձված առաջնորդը, աշխատավորներին հասցրել իշխանության գլուխ, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծմանը:

Դուք լավ եք հիշում լենինյան իմաստուն խոսքերն այն մասին, որ խորհրդային պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, այն մասին, որ պատմությունն այժմ կերտում են միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդիկ:

Կուսակցության, նրա բազմաթիվ տեղական կազմակերպությունների կազմակերպչական աշխատանքին, մեր մեծ ժողովրդի անձնվեր աշխատանքին ենք մենք պարտական մեր պատմական հաղթանակների համար: Այդ հաղթանակներն ամբողջությամբ վերցրած ժողովրդի և կուսակցության հսկայական թափի գործունեության արդյունք են, դրանք ամենևին էլ միմիայն Ստալինի ղեկավարության պտուղը

չեն, ինչպես փորձում էին ներկայացնել անհատի պաշտամունքի ծաղկման ժամանակաշրջանում։

Եթե մարքսիստորեն, լենինաբար մոտենալու լինենք այդ հարցի էությանը, ապա պետք է ամենայն շիտակությամբ հայտարարել, որ Ստալինի կյանքի վերջին տարիներին ձևավորած ղեկավարման գործելակերպը լուրջ արգելակ էր դարձել խորհրդային հասարակության զարգացման ճանապարհին։

Ստալինը երկար ամիսներ շարունակ չէր զբաղվում կուսակցության և երկրի կյանքի բազմաթիվ կարևորագույն ու անհետաձգելի հարցերով։ Ստալինի ղեկավարության օրոք ուրիշ երկրների հետ մեր խաղաղ հարաբերությունները հաճախ դրվում էին սպառնալիքի տակ, որովհետև միանձնյա որոշումները կարող էին առաջացնել և երբեմն առաջացնում էին մեծ բարդություններ։

Վերջին տարիների ընթացքում, երբ մենք ազատագրվեցինք անհատի պաշտամունքի արատավոր գործելակերպից և մի շարք միջոցներ նշեցինք ներքին ու արտաքին քաղաքականության մարզում, ամենքն էլ տեսնում են, թե ինչպես տառացիորեն բոլորի աչքի առաջ անում է աշխատավորական լայն զանգվածների ակտիվությունը, ծավալվում է ստեղծագործական նախաձեռնությունը, թե ինչպես դա բարերար ազդեցություն է գործում մեր տնտեսական և կուլտուրական շինարարության արդյունքների վրա։ (Ծափահարություններ)։

Որոշ ընկերներ կարող են հարց տալ. իսկ ու՞ր էին նայում Կենտկոմի քաղբյուրոյի անդամները, ինչու՞ նրանք ժամանակին հանդես չեկան անհատի պաշտամունքի դեմ և դա անում են միայն վերջին ժամանակներս։

Ամենից առաջ պետք է նկատի ունենալ, որ քաղբյուրոյի անդամները այդ հարցերին տարբեր ժամանակաշրջաններում տարբեր կերպ էին նայում։ Առաջին շրջանում նրանցից շատերը ակտիվորեն պաշտպանում էին Ստալինին, որովհետև Ստալինը ամենաուժեղ մարքսիստներից մեկն է և նրա տրամաբանությունը, ուժն ու կամքը մեծ ազդեցություն էին գործում կադրերի, կուսակցության աշխատանքի վրա։

Հայտնի է, որ Ստալինը Վ. Ի. Լենինի մահից հետո, հատկապես առաջին տարիներին, ակտիվորեն պայքարում էր հանուն լենինիզմի, ընդդեմ լենինյան ուսմունքի նենգափոխողների ու թշնամիների։ Ելնելով լենինյան ուսմունքից, կուսակցությունն իր Կենտրոնական կոմիտեի գլխավորությամբ մեծ աշխատանք ծավալեց երկրի սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխություն իրականացնելու գործում։ Այդ ժամանակ Ստալինը նվաճեց ժողովրդականություն, համակրանք և աջակցություն։ Կուսակցությունն ստիպված էր պայքար մղել նրանց դեմ, ովքեր փորձում էին երկիրը շեղել միակ ճիշտ, լենինյան ուղուց՝ տրոցկիստների, զինովևականների և աջերի, բուրժուական ազգայնամոլների դեմ։ Այդ պայքարն անհրաժեշտ էր։ Բայց այնուհետև Ստալինը, ավելի ու ավելի չարաշահելով իշխանությունը, սկսեց հաշվեհարդար տեսնել կուսակցության ու պետությանականավոր գործիչների հետ, ազնիվ խորհրդային մարդկանց դեմ կիրառել տեռորիստական մեթոդներ։ Ինչպես արդեն ասվեց, հենց այդպես Ստալինը վարվեց մեր կուսակցության ու պետության ականավոր գործիչների՝ Կոսիորի, Ռուձուտակի, Էյխեի, Պոստիշևի և ուրիշ շատերի հետ։

Ընդդեմ անհիմն կասկածների և մեղադրանքների հանդես գալու փորձերը բերում էին այն բանին, որ բողոքողը ենթարկվում էր ճնշամիջոցների։ Այս առումով բնութագրական է ընկ. Պոստիշևի հետ տեղի ունեցած պատմությունը։

Զրույցներից մեկի ժամանակ, երբ Ստալինը դժգոհություն հայտնեց Պոստիշևի հասցեին և նրան հարցրեց.

— Դուք ո՞վ եք։

Պոստիշևը հաստատ տոնով հայտարարեց «օ» հնչյունն արտաբերելու իրեն հատուկ առոգանությամբ.

— Բոլշևիկ եմ ես, ընկեր Ստալի՛ն, բոլշևիկ։

Եվ այդ հայտարարությունն սկզբում գնահատվեց որպես հարգանքի բացակայություն Ստալինի նկատմամբ, իսկ այնուհետև՝ որպես վնասակար արարք և հետագայում հանգեցրեց Պոստիշևի ոչնչացմանը, որին առանց որևէ հիմքի հայտարարեցին «ժողովրդի թշնամի»։

Այն ժամանակ ստեղծված իրադրության մասին ես հաճախ զրուցում էի Նիկոլայ Ալեքսանդրովիչ Բուլգանինի հետ։ Մի անգամ, երբ մենք երկուսով գնում էինք ավտոմեքենայով, նա ինձ ասաց.

— Անհա երբեմն գնում ես Ստալինի մոտ, քեզ կանչում են նրա մոտ որպես



բարեկամի։ Իսկ նստում ես Ստալինի մոտ և չգիտես, թե նրա մոտից քեզ ուր կտանեն. կամ տուն, կամ բանտ։

Պարզ է, որ նման իրավիճակը քաղբյուրոյի անդամներից ցանկացածին դնում էր ծայրահեղ ծանր կացության մեջ։ Եթե բացի այս հաշվի առնենք, որ վերջին տարիների ընթացքում կուսակցության Կենտկոմի պլենումներ փաստորեն չէին հրավիրվում, իսկ քաղբյուրոյի նիստերն անցկացվում էին դեպքից դեպք, ապա հասկանալի կդառնա, թե ինչքան դժվար էր քաղբյուրոյի անդամներից որևէ մեկի համար արտահայտվել այս կամ այն անարդարացի կամ ոչ ճիշտ միջոցի դեմ, ղեկավարման գործելակերպում ակնհայտ սխալների ու թերությունների դեմ։

Ինչպես արդեն նշվեց, շատ որոշումներ ընդունվում էին միանձնյա կամ հարցման եղանակով, առանց կոլեկտիվ քննարկման։

Բոլորին հայտնի է քաղբյուրոյի անդամ ընկ. Վոզնեսենսկու տխուր ճակատագիրը, որը դարձավ Ստալինի ճնշամիջոցների զոհը։ Բնորոշ է նշել, որ քաղբյուրոյի կազմից նրան հանելու որոշումը ոչ մի տեղ չի քննարկվել, այլ անցկացվել է հարցումով։ Նույնպես հարցումով են անցկացվել իրենց զբաղեցրած պաշտոններից ընկ. ընկ. Կուզնեցովի և Ռոդիոնովի ազատման մասին որոշումները։

Զգալիորեն նսեմացվել էր Կենտկոմի քաղբյուրոյի դերը, նրա աշխատանքը կազմալուծվել էր քաղբյուրոյի ներսում զանազան հանձնաժողովներ ստեղծելով, կազմավորելով այսպես կոչված «հնգյակներ», «վեցյակներ», «յոթնյակներ», «իննյակներ»։ Ահա, օրինակ, քաղբյուրոյի 1946 թվականի հոկտեմբերի 3-ի որոշումը.

**«Ընկ. Ստալինի առաջարկը։**

1. Հանձնարարել քաղբյուրոյին կից արտաքին գործերի հանձնաժողովին (վեցյակին) առաջիկայում զբաղվել արտաքին քաղաքական բնույթի հարցերից բացի նաև ներքին շինարարության և ներքին քաղաքականության հարցերով։

2. Լրացնել վեցյակի կազմը ԽՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Վոզնեսենսկիով և այսուհետև վեցյակն անվանել յոթնյակ։

Կենտկոմի քարտուղար՝ Ի. Ստալին»։

Սա ի՞նչ թղթախաղացի տերմինաբանություն է։ (Ծիծաղ դահլիճում)։ Պարզ է, որ նման հանձնաժողովների՝ «հնգյակների», «վեցյակների», «յոթնյակների» և «իննյակների» ստեղծումը քաղբյուրոյի ներսում խարխլում էր կոլեկտիվ ղեկավարման սկզբունքը։ Ստացվում էր, որ քաղբյուրոյի որոշ անդամներ այդպիսով հեռացվում էին կարևորագույն հարցերի լուծումից։

Անտանելի պայմանների մեջ էր դրված մեր կուսակցության հնագույն անդամներից մեկը՝ Կլիմենտ Եփրեմովիչ Վորոշիլովը։ Մի շարք տարիների ընթացքում նա փաստորեն զրկված էր քաղբյուրոյի աշխատանքներին մասնակցելու իրավունքից։ Ստալինը նրան արգելել էր նույնիսկ քաղբյուրոյի նիստերին և իրեն փաստաթղթեր ուղարկել։ Երբ քաղբյուրոն նիստ էր անում, և ընկ. Վորոշիլովն այդ մասին իմանում էր, ապա ամեն անգամ նա զանգահարում էր և թույլտվություն հարցնում, թե կարելի՞ է արդյոք նրան գալ այդ նիստին։ Ստալինը թույլ էր տալիս, բայց միշտ դժգոհություն էր հայտնում։ Իր ծայրահեղ կասկածամտության հետևանքով Ստալինը հասավ այն աստիճան անհեթեթ և ծիծաղելի կասկածանքի, թե իբր Վորոշիլովը անգլիական գործակալ է։ (Ծիծաղ դահլիճում)։ Այո՛, անգլիական գործակալ։ Եվ նրա տանը տեղադրված էր հատուկ ապարատ՝ նրա խոսակցությունները լսելու համար։ (Զայրույթի աղմուկ դահլիճում)։

Ստալինը միանձնյա քաղբյուրոյի աշխատանքին մասնակցելուց հեռացրեց նաև քաղբյուրոյի մեկ այլ անդամի՝ Անդրեյ Անդրեևիչ Անդրեևին։

Դա ամենաասանձարձակ կամայականություն էր։

Իսկ վերցրեք Կենտկոմի առաջին պլենումը կուսակցության XIX համագումարից հետո, երբ ելույթ ունեցավ Ստալինը և պլենումում բնութագրեց Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին և Անաստաս Իվանովիչ Միկոյանին՝ մեր կուսակցության այդ հնագույն գործիչներին ներկայացնելով ոչնչով չհիմնավորված մեղադրանքներ։

Բացառված չէ, որ եթե Ստալինը ևս մի քանի ամիս գտնվեր ղեկավարությունում, ապա կուսակցության այս համագումարում ընկերներ Մոլոտովն ու Միկոյանը, հավանական է, ելույթ չէին ունենա։

Ստալինը, ըստ երևույթին, քաղբյուրոյի հին անդամների հետ հաշվեհարդար տեսնելու իր պլաններն ուներ։ Նա մեկ անգամ չէ, որ ասել է, թե պետք է փոխել քաղբյուրոյի անդամներին։ XIX համագումարից հետո Կենտրոնական կոմիտեի նախագահությունում 25 մարդ ընտրելու նրա առաջարկը նպատակ էր հետապնդում հեռացնել քաղբյուրոյի հին անդամներին, մտցնել նվազ փորձվածներին, որպեսզի

սրանք ամեն կերպ փառաբանեին նրան: Կարելի է նույնիսկ ենթադրել, որ դա մտա-
հղացված էր այն բանի համար, որպեսզի հետագայում ոչնչացվեին քաղբյուրոյի
հին անդամները և Ստալինի այն անբարեխեղ արարքների առնչությամբ, որոնց
վերաբերյալ մենք հիմա զեկուցում ենք, բոլոր հետքերը կորցվեին:

Ընկերնե՛ր: Որպեսզի անցյալի սխալները չկրկնվեն, Կենտրոնական կոմիտեն
վճռականորեն հանդես է գալիս անհատի պաշտամունքի դեմ: Մենք այն կարծիքին
ենք, որ Ստալինին չափից ավելի ենք մեծարել: Անվիճելի է, որ անցյալում Ստա-
լինը մեծ ծառայություններ է ունեցել կուսակցության, բանվոր դասակարգի և մի-
ջազգային բանվորական շարժման հանդեպ:

Հարցը բարդանում է նրանով, որ այն ամենը, ինչ վերն ասվեց, կատարվել է
Ստալինի օրոք, նրա ղեկավարությամբ, նրա համաձայնությամբ, ընդ որում նա
համոզված էր, որ դա անհրաժեշտ է թշնամիների մեքենայություններից և իմպե-
րիալիստական լագերի ոտնձգություններից աշխատավորների շահերը պաշտպանե-
լու համար: Այդ ամենը նա դիտարկում էր բանվոր դասակարգի շահերի, աշխա-
տավոր ժողովրդի շահերի, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի շահերի պաշտ-
պանության դիրքերից: Չի կարելի ասել, որ դրանք քմահաճ մարդու գործողու-
թյուններ են: Նա կարծում էր, որ այդպես պետք է անել կուսակցության, աշխատա-
վորների շահերից, հեղափոխության նվաճումները պաշտպանելու շահերից ելնե-
լով: Դրանու՞մ է իսկական ողբերգությունը:

Ընկերնե՛ր: Լենինը բազմիցս շեշտել է, որ համեստությունը իսկական բոլշևիկի
անքակտելի հատկանիշն է: Եվ Լենինն ինքը մեծագույն համեստության կենդանի
մարմնավորում էր: Չի կարելի ասել, որ այս բանում մենք ամեն ինչով հետևում ենք
Լենինի օրինակին: Բավական է թեկուզև ասել, որ մեզանում բազմաթիվ քաղաք-
ների, ֆաբրիկաների ու գործարանների, կոլեկտիվ և պետական տնտեսությունների,
խորհրդային, մշակութային հիմնարկությունների, եթե կարելի է այդպես արտա-
հայտվել, մասնավոր սեփականության իրավունքով բաշխված են դեռևս ապրող և
փթթող այս կամ այն պետական ու կուսակցական գործիչների անունները: Սեփական
անուններով տարբեր քաղաքներ, շրջաններ, ձեռնարկություններ, կոլտնտեսություն-
ներ կոչելու գործում մեզանից շատերը մասնակիցներ են: Դա պետք է շտկել: (Ծա-
փահարություններ):

Բայց դա պետք է անել խելքով, առանց շտապողականության: Կենտրոնական
կոմիտեն կքննարկի այդ հարցը և մի լավ պատկերացում կկազմի, որպեսզի այստեղ
որևէ սխալ և ծայրահեղություն թույլ չտա: Ես հիշում եմ, թե ինչպես Ուկրաինայում
իմացան Կոսիորի ձերբակալման մասին: Կիևի ռադիոկայանը սովորաբար իր ռա-
դիոհաղորդումներն սկսում էր այսպես. «Խոսում է Կոսիորի անվան ռադիոկայանը»:
Օրերից մի օր ռադիոհաղորդումներն սկսվեցին առանց Կոսիորի անվան հիշատակ-
ման: Եվ բոլորը կռահեցին, որ Կոսիորին ինչ-որ բան է պատահել, որ նա, հավա-
նաբար, ձերբակալված է:

Այնպես որ, եթե մենք ամենուրեք սկսենք հանել ցուցանակներն ու անվանա-
փոխումներ անցկացնենք, ապա մարդիկ կարող են մտածել, որ այն ընկերներին,
որոնց անուններն են կրում ձեռնարկությունները, կոլտնտեսությունները կամ քա-
ղաքները, ինչ-որ բան է պատահել, որ, հավանաբար, նրանք ձերբակալված են:
(Աշխուժություն դահլիճում):

Ինչո՞վ է մեզ մոտ երբեմն չափվում այս կամ այն ղեկավարի հեղինակությունն
ու նշանակությունը: Դեռ այն բանով, որ նրա անունով են կոչված այսքան քաղաք-
ներ, գործարաններ ու ֆաբրիկաներ, այսքան կոլեկտիվ ու պետական տնտեսու-
թյուններ: Ժամանակը չէ՞ արդյոք վերջ տալու այդ «մասնավոր սեփականությանը»
և անցկացնել ֆաբրիկաների ու գործարանների, կոլեկտիվ ու պետական տնտե-
սությունների «ազգայնացում»: (Ծիծաղ, ծափահարություններ: Բացականչություն-
ներ: «Ճիշտ է»): Դա կլինի մեր գործի օգտին: Չէ՞ որ անհատի պաշտամունքն ար-
տահայտվում է նաև նման բնույթի փաստերում:

Մենք պետք է ամենայն լրջությամբ վերաբերվենք անհատի պաշտամունքի
հարցին: Այդ հարցը մենք չենք կարող դուրս հանել կուսակցության սահմաննե-
րից, իսկ առավել ևս մամուլի էջերից: Հենց այդ պատճառով էլ մենք այն զեկուցում
ենք համագումարի դռնփակ նիստում: Պետք է չափը գիտենալ, թշնամիներին սնունդ
չտալ, նրանց առջև մեր խոցերը չբանալ: Ես կարծում եմ, որ համագումարի պատ-
գամավորները ճիշտ կհասկանան ու կգնահատեն այս բոլոր միջոցառումները: (Բուռն
ծափահարություններ):



***

Ընկերնե՛ր: Մեզ հարկավոր է վճռականորեն, մեկընդմիշտ պսակազերծել ան-
հատի պաշտամունքը, անհրաժեշտ հետևություններ անել ինչպես գաղափարական-
տեսական մարզում, այնպես էլ գործնական աշխատանքի մարզում:

Դրա համար անհրաժեշտ է.

Առաջին. բոլշևիկորեն դատապարտել ու արմատախիլ անել անհատի պաշտա-
մունքը՝ որպես մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ ու կուսակցական ղեկավարման
սկզբունքների և կուսակցական կյանքի նորմերի հետ անհամատեղելի, անողոք պայ-
քար մղել ընդդեմ այս կամ այն ձևով այն վերականգնելու բոլոր և ամեն կարգի
փորձերի դեմ:

Վերականգնել և մեր ամբողջ գաղափարախոսական աշխատանքում հետևո-
ղականորեն անցկացնել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի կարևորագույն դրույթները
ժողովրդի՝ որպես պատմության կերտողի, մարդկության բոլոր նյութական և հո-
գևոր արժեքների ստեղծողի մասին, հասարակության վերափոխման, կոմունիզմի
հաղթանակի համար մղվող հեղափոխական պայքարում մարքսիստական կուսակ-
ցության վճռական դերի մասին:

Այդ կապակցությամբ մենք պետք է առաջիկայում մեծ աշխատանք կատա-
րենք, որպեսզի մարքսիզմ-լենինիզմի դիրքերից քննադատաբար դիտարկենք և
ուղղենք լայնորեն տարածված սխալ հայացքները՝ կապված անհատի պաշտամուն-
քի հետ, պատմական, փիլիսոփայական, տնտեսագիտական և այլ գիտությունների
ասպարեզում, ինչպես նաև գրականության և արվեստի բնագավառում: Մասնավո-
րապես անհրաժեշտ է ամենամոտ ժամանակում աշխատանք կատարել լիարժեք,
գիտական օբյեկտիվությամբ կազմված մեր կուսակցության պատմության մարքսի-
տական դասագրքի, խորհրդային հասարակության պատմության դասագրքերի, քա-
ղաքացիական կռիվների և Հայրենական մեծ պատերազմի պատմության գրքերի
ստեղծման նպատակով:

Երկրորդ, հետևողականորեն և համառորեն շարունակել կուսակցության Կենտ-
րոնական կոմիտեի կողմից վերջին տարիներս տարվող աշխատանքը՝ բոլոր կու-
սակցական կազմակերպություններում, վերից վար, կուսակցական ղեկավարման
լենինյան սկզբունքները և ամենից առաջ բարձրագույն սկզբունքի՝ ղեկավարության
կոլեկտիվության սկզբունքը խստորեն պահպանելու ասպարեզում, մեր կուսակցու-
թյան կանոնադրությամբ ամրագրված կուսակցական կյանքի նորմերի պահպանման,
քննադատություն ու ինքնաքննադատությունը ծավալելու ասպարեզում:

Երրորդ, լիովին վերականգնել Խորհրդային Միության սահմանադրությունում
արտահայտված խորհրդային սոցիալիստական դեմոկրատիզմի լենինյան սկզբ-
բունքները, պայքար մղել իշխանությունը չարաշահող անձանց կամայականության
դեմ: Անհրաժեշտ է մինչև վերջ վերացնել հեղափոխական սոցիալիստական օրինա-
կանության խախտումները, որոնք կուտակվել են երկարատև ժամանակաշրջանի
ընթացքում՝ անհատի պաշտամունքի բացասական հետևանքների պատճառով:

Ընկերնե՛ր:

Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XX համագումարը նոր
ուժով ցուցադրեց մեր կուսակցության անխախտ միասնությունը, նրա համախմբ-
վածությունն իր Կենտրոնական կոմիտեի շուրջը, կոմունիստական շինարարության
մեծ խնդիրները կատարելու նրա վճռականությունը: (Բուռն ծափահարություններ):
Եվ այն փաստը, որ մենք այժմ իրենց ողջ լայնությամբ դնում ենք մարքսիզմ-լենի-
նիզմին խորթ անհատի պաշտամունքի հաղթահարման և նրա պատճառած ծանր
հետևանքները վերացնելու սկզբունքային հարցերը, խոսում է մեր կուսակցության
բարոյական և քաղաքական մեծ ուժի մասին: (Երկարատև ծափահարություններ):

Մենք լիովին վստահ ենք այն բանում, որ մեր կուսակցությունը, զինված իր
XX համագումարի պատմական որոշումներով, խորհրդային ժողովրդին կառաջ-
նորդի լենինյան ուղիով դեպի նոր հաջողություններ, դեպի նոր հաղթանակներ:
(Բուռն, երկարատև ծափահարություններ):

Կեցցե՛ մեր կուսակցության հաղթական դրոշը՝ լենինիզմը: (Բուռն, երկարատև
ծափահարություններ, որոնք վերածվում են օվացիայի: Բոլորը ոտքի են կանգնում):

կայն առաջավոր տնտեսությունների երկրագործները հացահատիկի լավ բերք էին ստանում, կերի առատ պաշար կուտակում, ապահովում անասունների բարձր մթերատվությունը: «Մարալիկ» ագրոֆիրմայի գոյությամբ ոչ միայն պարենային հարցեր լուծվեցին, այլև նախնական պայմանավորվածությամբ որոշ ճյուղերի զարգացման միջոցով շրջանը դուրս էր գալու միութենական ու համաշխարհային շուկա: Առաջընթաց կար նաև արդյունաբերական ձեռնարկություններում ու մասնաճյուղերում: Գյուղերում առկա էին սոցիալ-կուլտուրական ակնառու փոփոխություններ:

...Աղետի առաջին իսկ պահերից կուսակցության Անիի շրջկոմը վերածվեց յուրահատուկ շտաբի, ուր առավոտից մինչև գիշեր հազար ու մեկ հարցով դիմում էին աշխատավորները:

— Երկրաշարժը փոխեց մարդկանց հոգեբանությունը,— ասաց կուսշրջկոմի երկրորդ քարտուղար Ջեմմա Զաքոյանը,— դյուրագրգիռ ու կասկածամիտ մարդիկ քիչ չէին այդ օրերին, պահանջում էին պարզաբանում, և թեև մեզնից յուրաքանչյուրն իր ցավն ու պրոբլեմներն ուներ, այնուհանդերձ, պետք էր նրանց հասկանալ, մարդիկ կորցրել էին ամեն ինչ, մնացել անօթևան, իսկ կուսշրջկոմը տվյալ դեպքում հույսի այն դուռն էր, որտեղից կարող էին ստանալ իրենց հարցերի պատասխանները:

Եվ հիմա, երբ ավարտվել է երկրաշարժի հետևանքների վերացման առաջին փուլը, հետադարձ հայացք գցելով այդ օրերին կատարված հսկայածավալ աշխատանքների վրա, մարդիկ հիշում են, որ կուսշրջկոմին հաջողվեց ուշադրության կենտրոնում պահել սոցիալ-տնտեսական պոտենցիալի վերականգնման հարցերը: Դա տվյալ դեպքում քաղաքական ու բարոյահոգեբանական նշանակություն ուներ:

— Առաջին գործը եղավ մոբիլիզացնել սպասարկման ոլորտի ծառայությունները, արագորեն վերականգնել էլեկտրամատակարարումը, ջերմամատակարարումը,— շարունակում է իր զրույցը Ջեմմա Զաքոյանը,— Արևիկի պոմպակայանի միջոցով չորս-հինգ օրում կարգավորվեց ջրամատակարարումը, իսկ մինչ այդ շրջկենտրոնին ջուր տրվեց «Զլկաների» համակարգից: Կարճ ժամանակամիջոցում բնականոն հունի մեջ ընկավ արդյունաբերությունը: Առաջինը սկսեց արտադրանք տալ Մարալիկի բամբակագործվածքային ֆաբրիկան, աշխատանքային ռիթմը վերականգնվեց նաև մնացած ձեռնարկություններում ու շինարարությունում:

Ստեղծված արտակարգ իրավիճակում կուսակցական կազմակերպություններից պահանջվում էր ճկուն ու լարված աշխատանք: Հարցերի լուծման առաջին պայմանը դարձավ այն, որ ղեկավարները պետք է ավելի մոտ կանգնեն աշխատավորական կոլեկտիվներին, ճանաչեն մարդկանց, հաշվի առնեն նրանց կարծիքն ու առաջարկությունները, վերացնեն աշխատավորի ու ղեկավարի միջև լճացման ժամանակներից գոյացած պատնեշը, վերջ տան աշխատասենյակից գործերը վարելու սխալ պրակտիկային: Գործի շահերը պահանջում էին հաճախ ոչ թե դիրեկտորին հրավիրել շրջկոմ, այլ անձամբ գնալ նրա մոտ, տեղում ծանոթանալ մարդկանց հոգսերին: Գործնական հանդիպումները արտադրական կոլեկտիվների հետ վերացրին բոլոր անջրպետները: Իսկական երկխոսություն սկսվեց աշխատավորների հետ, բավարարվեցին նրանց արդարացի պահանջները:

Կյանքը դուրս էր եկել իր բնականոն հունից, բոլորն էլ օգնության խիստ կարիք ունեին և, սակայն, սեփական վիշտը շատ փոքր թվաց, երբ անեցիներն իմացան Լենինականի ավերածության չափերը: Հենց առաջին պահերից հարյուրավոր մարդիկ հասան Լենինական, Ախուրյան ու Սպիտակ: Այստեղ արդեն ուրիշի վիշտ չկար, կար համընդհանուր ցավ, որ բոլորինն էր ու յուրաքանչյուրինը: Եվ ավտոմեքենաները տեղ հասցրին առաջին վիրավորներին, ավերակույտերի տակից փրկեցին աղետյալներին, պարենամթերք հասցրին այնտեղ: Մարդիկ կային, որ օրվա ընթացքում մինչև տասն անգամ անցան Մարալիկ—Լենինական ճանապարհը, վարորդներ կային, որ վիրավորներին տեղ հասցնելուց հետո իրենք էին բժշկական միջամտության կարիք զգում, և, սակայն, նորից վերադառնում էին, քանզի օրհասական պահ էր: Եվ մարդասիրության ու գթասրտության օրենքով այս շրջանի մարդիկ իրենց հարկի տակ պատսպարեցին ավելի քան քսան հազար մարդու:

Վիշտը միավորել էր աշխարհի մարդկությանը, դոնորական արյուն, սննդամթերք, դրամական օգնություն, տաք հագուստ, դեղորայք, առաջին անհրաժեշտության առարկաներ, վրաններ, յուրտեր, տնակներ... ահա այն ինքնաթիռների պարունակությունը, որ մեկ ժամվա մեջ քանի՜-քանի՜ անգամ վայրէջք էին կատարում Երևանի ու Լենինականի օդանավակայաններում: Աշխարհը ցնցված էր մարդկությանը հասած անհավոր աղետից և դա համարում էր իրենը: Գթասրտությունը ափեափ էր լցվել և, լինելով աղետի գոտում, հենց իրենք, անեցիները հանգանակություն կազմակերպեցին ու մեծ քանակությամբ դրամ փոխանցեցին աղետյալների ֆոնդին:

Մարդ իրեն մխիթարված է զգում, երբ նեղության պահին տեսնում է օգնության մեկնած ձեռքը: Այստեղ հանգրվանած աղետյալներին, ինչպես նաև շրջանի ազգաբնակչությանը, ավելի քան տասնմեկ հազար մարդու նյութական օգնություն ցույց տվեցին Վ. Ի. Լենինի անվան մանկական ֆոնդը, Կարմիր խաչի ընկերությունը, Ուզբեկստանի կոմերիտմիության Կենտկոմը, մյուս հանրապետությունները, Սփյուռքը:

Այո՛, երկրաշարժը, մեծ դասեր տվեց, և վայրկյանների ընթացքում առաջին ու անփոխարինելի գանձը մնաց մարդկային կյանքը: Այստեղ իրենց հերոսական աշխատանքով փայլեցին բժիշկները: Շրջկոմի քարտուղար Ջեմմա Զաքոյանը մի առանձնակի գոհունակությամբ խոսեց բուժանձնակազմի և հատկապես միավորման գլխավոր բժշկի՝ Արմեն Հակոբյանի մասին: Շրջանում շատերից լսեցի նման երախտագիտությամբ ու գորովանքով լեցուն խոսքեր ու ցանկացա անձամբ հանդիպել այն մարդկանց, որոնցից շատերը չեն էլ հասցրել իրենց ընտանիքին բաժին ընկած վշտին մասնակցել... Բոթն ստանալու հենց առաջին պահից շրջանի բժիշկների մի մեծ խումբ մեկնեց Լենինական, իսկ գլխավոր բժիշկը մնաց, որպեսզի նախապատրաստեր հիվանդանոցն ու քիչ թե շատ պիտանի այն շենքերը, որտեղ կարելի էր մահճակալներ դնել: Այդ նպատակի համար մարդիկ տվեցին իրենց մահճակալներն ու անկողինները, սպիտակեղենը, այն ամենը, ինչ հնարավոր էր և անհրաժեշտ: Մեկ ժամ անց բերեցին առաջին հիվանդներին, և սկսվեց կյանքի ու մահու դաժան մենամարտը, որի համար, բժիշկների հմտությունից ու գիտելիքներից բացի, անհրաժեշտ էր ուժ և համառություն: Արտակարգ իրավիճակի համար պահված ամբողջ դեղորայքը, վիրաբուժական գործիքներն ու սարքավորումները սպառվելու վրա էին, երբ օգնության հասան Մոսկվայի Սկլիֆոսովսկու անվան ինստիտուտի բժիշկների ջոկատը, Եղեգնաձորի ու Վարդենիսի բուժաշխատողների խմբերը՝ բոլոր անհրաժեշտ պարագաներով ու դեղորայքով: Երկու-երեք օրում 212 վիրահատություն կատարվեց, որից 28-ը՝ անդամահատություն: Ընդհանուր առմամբ օգնություն է ցույց տրվել 1.800 տուժածի: Օպերատիվ խումբ էր գործում նաև Լենինական—Երևան ավտոմայրուղու Մարալիկի հատվածում: Այս պարագայում Անիի բուժմիավորման անձնակազմը ապացուցեց, որ հավատարիմ է բժշկի մարդասիրական վեհ կոչմանը: Արմեն Հակոբյանը, պատմելով այդ օրերին կատարած հերոսական աշխատանքի մասին, ասաց.

— Ուսումնառության տարիներին մենք անդրադարձել ենք պատերազմական իրավիճակում բժշկի անելիքների, վայրկյանների ընթացքում նրա կողմնորոշվելու և գործելու հանգամանքին: Այդ ամենը շատ հստակ վերականգնվեց իմ հիշողության մեջ: Բուհում ստացած գիտելիքները խիստ պետք եկան ինձ ու ընկերներիս՝ Գրիգոր Խաչատրյանին, Նունե Ապիկյանին, Մարիետա Բալասանյանին, Անահիտ Պողոսյանին, Գայանե Համբարձումյանին: Հերոսական գործ կատարեցին բոլորը՝ բժիշկները, բուժքույրերը, սանիտարները, խոհարարները, շտապ օգնության վարորդները: Նրանց համար վերացել էին ցերեկվա ու գիշերվա սահմանները:

Հենց առաջին օրերից Անիում գործում է երկրաշարժի հետևանքների վերացման շտաբը, որը կոորդինացնում, ուղղություն է տալիս և օպերատիվ կերպով լուծում բոլոր պրոբլեմները: Տուժածներին ուղարկված օգնության բաշխումը կատարվեց շրջկոմին առընթեր և տեղերում ստեղծված հանձնաժողովների հսկողությամբ ու ղեկավարությամբ: Հանրապետության ագրոարդի օգնությամբ միայն առաջին ամիսներին ստացվել և բաշխվել են 650 վրան, 630 քմ բնակելի մակերեսով հավաքովի տնակներ, 46 յուրտ, 230 վագոն-տնակ: Հետագայում այդ թվերն ավելացան, բայց շատերը դեռ օթևանի կարիք ունեն: Կազմակերպվեց սննդամթերքի, վառելիքի և անհրաժեշտ այլ պարագաների մատակարարումը Հայկոոպի միջոցով:

Կուսշրջկոմի և շրջխորհրդի գործկոմի գլխավոր խնդիրներից մեկը դարձավ դպրոցական գործի կազմակերպումը, հոգ տարվեց աշակերտության կյանքը հունի մեջ դնելու մասին: Քառասուն վագոն-տնակներ հատկացվեցին դպրոցներին ու նախադպրոցական հիմնարկներին: Շրջժողկրթբաժնի վարիչ Հովհաննես Տոնոյանը, շրջանի մանկավարժական կոլեկտիվներն ամեն ինչ արեցին, որպեսզի ուսուցումն անցնի ծրագրի սահմաններում: Անսովոր պայմաններում հնչեց դպրոցական վերջին զանգը: Եվ հայոց լեզվի ավարտական քննությունների ժամանակ տասներորդցիներից շատերն ընտրել էին ազատ թեման՝

«Ուրիշի ցավ չկա»: Այո՛, ուրիշի ցավ չկա, այդ նրանք զգացել էին իրենց հոգու բոլոր ծալքերով, ականատես էին եղել ամենօրյա ուշադրությանն ու կարեկցանքին:

Ավարտվել է երկրաշարժի վերացման առաջին փուլը: Այժմ վերականգնման նոր փուլի՝ շինարարական աշխատանքների կոմպլեքսային ծրագրի իրականացման ժամանակն է: Այդ գործը իրենց միջոցներով և հիմնականում իրենց շինանյութերով կատարում են Լատվիայի, Ղազախստանի շինարարական կազմակերպությունները: Հարյուր միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն պետք է իրականացնեն նրանք, վերականգնեն ու ամրացնեն վթարային շենքերը: Իսկ ընդհանուր առմամբ, երկու տարվա ընթացքում պետք է վերականգնըվեն ու կառուցվեն ավելի քան 100 հազար քմ բնակելի տներ, 3.376 աշակերտական տեղով դպրոցներ, 1.130 տեղով նախադպրոցական հիմնարկներ, 260 մահճակալով հիվանդանոց, օրական 150 այցելությամբ պոլիկլինիկա և բուժական ամբուլատորիաներ:

Հսկայածավալ աշխատանքներ պետք է կատարվեն գյուղատնտեսության բնագավառում: Շրջանի ագրոարդյունաբերական համալիրին հասած վնասի ընդհանուր ծավալը կազմում է ավելի քան տասնմեկ միլիոն ռուբլի: Այս ամենն ավելի է բարդացրել առանց այն էլ այդ ոլորտում ըստեղծված ծանր իրավիճակը. հետ մնացող անասնապահության ճյուղը այժմ անմխիթար վիճակում է. մի կողմից անասունների կորուստներն ու անասնաշենքերի բացակայությունը, մյուս կողմից՝ աշխատուժի պակասը: Հարցի լուծման առաջին նախապայմանը պետք է դառնա ճյուղի համալրումը երիտասարդ, աշխատանքին նըվիրված և տեխնիկայի լեզուն հասկացող մարդկանցով:

Այսօր դատարկ խոսքերով մարդկանց չես կերակրի և օրավուր ավելի է սրվում այն իրողությունը, թե ի՞նչ է արտադրում և ինչպե՞ս է արտադրում գյուղաբնակը: Հին, իրենց դարն ապրած և իրենց սպառած գյուղգործիքներն ու մեքենաները, ռանարտադրողական տեխնոլոգիաներն ու մեթոդները պետք է փոխարինվեն նորով: Նորից ծնունդ կառնեն Լուսաղբյուր, Աղին, Սարակապ գյուղերը՝ բոլոր տեսակի կուլտուր-կենցաղային օբյեկտներով: Նույն ձևով կհառնի նաև Հայկաձորը:

Իհարկե, ամեն ինչ չէ, որ հեշտությամբ է առաջ ընթանում: Դժվարություններ կային հենց սկզբից: Դանդաղ են ծավալվում ինժեներային հետազոտումների, նախագծա-նախահաշվային փաստաթղթերի մըշակման աշխատանքները, անբավարար են օգտագործվում նախագծային կազմակերպությունների ուժերը:

Պակաս կարևոր չէ Անի—Աղին—Մարալիկ երկաթուղային կայարանների աշխատանքների ժամանակին ու արդյունավետ կազմակերպումը: Այժմ, երբ յուրաքանչյուր օր պետք է նոր գործերի ու նախաձեռնությունների հանրագումար լինի, պատահում է՝ օրերով չեն բեռնաթափվում հատկապես № 6 ՇՄԳ-ի, ՇԱԱՄ-ի, նյութատեխնիկական մատակարարման բաժնի, շրջկոոպի և այլ կազմակերպությունների հասցեով ստացված վագոնները: Դեռևս փետրվար ամսին տեղի ունեցած Անիի շրջկոմի պլենումում, որը քննարկեց «Երկրաշարժի հետևանքով տուժածներին օգնություն կազմակերպելու, աղետի հետևանքները վերացնելու գործում շրջանային կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը, կուսշրջկոմի առաջին քարտուղար Վ. Հարությունյանը, խոսելով այն օրերին կատարված դրական գործերի մասին, անդրադարձավ նաև վերականգնողական աշխատանքների դանդաղ ընթացքին: Բացահայտվեցին շատ թերություններ ու վրիպումներ: «Անսովոր պայմանները նոր պահանջներ են ներկայացնում կուսակցական աշխատանքին: Կուսակցության շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները նոր մոտեցում պետք է ցուցաբերեն՝ քաղաքական ղեկավարության դերը բարձրացնելու համար»,— նշեց կուսշրջկոմի առաջին քարտուղարը:

Այո՛, երկրաշարժի հետևանքների վերացման երկրորդ փուլում բացառիկ կարևոր տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծումը պահանջում է փոխել մոտեցումը ներկուսակցական ու կադրային աշխատանքի նկատմամբ: Շրջկոմում պարբերաբար գումարվող խորհրդակցություններում բոլոր պատասխանատու աշխատողները, որոնցից յուրաքանչյուրն ունի սպասարկման իր ոլորտն ու կազմակերպությունները, կոնկրետ հաշվետվություն է ներկայացնում անցած օրերի ընթացքում թե՛ շինարարական ու վերականգնողական գործերում և թե գյուղատնտեսության ու արդյունաբերության ասպարեզներում ձեռք բերած արդյունքների, առկա հոգսերի ու չլուծված հարցերի մասին: Գարնան գալով արագացավ շինարարության թափը, բայց և դրանց գումարվեցին գյուղատնտեսական աշխատանքները: Հույսերի գարունը պետք է աշխատանքային սխրանքների ամռան և հաղթանակների աշնան սկիզբը դներ: Եվ, թեև մեծ դժվարություններին, մարդիկ արարման լծվեցին:

Անիի շրջանն այսօր հսկայական շինհրապարակ է հիշեցնում: Կոնկրետ խնդիրներ են դրված Լատվիայի, Ղազախստանի շինարարների առջև: Լատիշները Մարալիկ ավանում հանձնել են առաջին յոթ տնակները: Գցվել են երկու-երեք հարկանի միաձույլ բնակելի շենքերի հիմքերը, գյուղական բնակավայրերում լայն թափով շարունակվում է անհատական տների կառուցումը: Բացի այդ, Ղազախստանից եկած շինարարները Իսահակյանում, Լուսաղբյուրում, Սառնաղբյուրում կառուցում են դպրոցական շենքեր: Այս պայմաններում, հասկանալի է, թե ինչպիսի անհրաժեշտություն է ձեռք բերում Իսահակյանում կառուցվող երկաթբետոնյա կառուցվածքների գործարանը, որի արտադրական հզորությունը պետք է բավարարի ողջ շրջանի կարիքները: Սակայն շինանյութի մեծ մասը, որ շինարարները ստանում են Ղազախստանից, միշտ չի ժամանակին տեղ հասնում: Առաջանում է պարապուրդ, իսկ այդ պայմաններում յուրաքանչյուր րոպեի կորուստը հետո դժվարությամբ է փոխհատուցվելու: Մյուս կողմից էլ շինարարության համար լուրջ խոչընդոտ է Ադրբեջանի կողմից իրականացվող Հայաստանի շրջափակումը. մեր շրջանի համար նախատեսված շինանյութերը, տնակները, մըթերքները, վառելանյութերը մնում են կես ճանապարհին ու փչացվում: Մինչ այդ անմարդկային գործողությունը մնում է անպատիժ, քաղաքական գնահատական չի ստանում:

Հայտնի է, որ կառույցների համար որպես հիմնական շինանյութ պետք է օգտագործվի հայկական քարը: Շրջանի համար նախատեսված է Սառնաղբյուրի սև տուֆը: Սակայն այս գործում պրոբլեմները քիչ չեն, մշտապես քարի պահանջ է զգացվում: Քարը չի բավականացնում այն պարզ պատճառով, որ քարհանքի արդեն բարոյապես մաշված տեխնիկան չի համապատասխանում շինարարության նման թափին: Ունեցած հանքերով ու տեխնիկայով հնարավոր չէ երկու տարում կատարել այդ առռելի աշխատանքը: Այժմ ծառանում է նոր հանքեր բացելու խնդիրը: Լատիշ և ղազախ շինարարների կողքին այս կառույցներում աշխատում են մեր հայ շինարարները: Ներկայումս այդ գործում ծանրակշիռ ավանդ է ներդնում Տաշիր-Կուրգանի մարզի հետ աշխատող Լուսաղբյուրցի երիտասարդների բրիգադը, որը գլխավորում է ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Գևորգ Հովսեփյանը: Նրանց հաջողվեց կատարել առաջին եռամսյակի շինմոնտաժային աշխատանքների պլանը:

Այսօր արդեն օրակարգի հարց է դարձել ջրի պրոբլեմի լուծումը, որը շրջանում գոյություն ուներ դեռ երկրաշարժից առաջ: Այժմ երկրորդ՝ Արևիկի ջրագծի անցկացումով Անիում ջրապահովվածություն կլինի: Հարց է հարուցվել, որպեսզի Մանթաշի հրաշալի ջուրը, որը, ցավոք, օգտագործվում էր ոռոգման նպատակով, Կապսի ջրամբարի գործարկումից հետո օգտագործվի խմելու համար: Երկրաշարժի հետևանքների վերացման հետ կենցաղային շատ հարցեր կլուծվեն:

Եվ մեկ կարևոր խնդրի մասին: Անիի շրջանից ամեն տարի հարյուրավոր աշխատավոր ձեռք էր մեկնում արտագնա աշխատանքի՝ ցավ, ափսոսանք ու զայրույթ պատճառելով շատերին: Չուզենալով ապառնց պատճառ-հանգամանքները պարզելու մեղադրել նրանց՝ ուրախություն արտահայտենք այն բանի համար, որ այդ մարդկանցից շատերը մնացել են կառուցելու հայրենի տունը: Յուրաքանչյուր օր նոր ակտիվներ են ընդգրկվում այդ գործում: Ասենք նաև, որ այս տարի մեր հանրապետության ուսանողական շինարարական ջոկատները աշխատելու են աղետի վայրերում, այդ թվում և Անիի շրջանում: ՀԼԿԵՄ շրջկոմն էլ իր հերթին շրջանի կոմերիտականներից ու երիտասարդներից բրիգադներ է ստեղծել՝ շինարարության ոլորտում ընդգրկելու համար:

— Արդեն շուրջ 280 երիտասարդներից բաղկացած քսան ջոկատներ ենք կոմպլեկտավորել, ցանկացողները շատ են,— ասաց ՀԼԿԵՄ շրջկոմի առաջին քարտուղար Ա. Պետրոսյանը:— Ամենակարևորը շինմոնտաժային աշխատանքների արագացումն է, որը մեծ ներգործություն կունենա շրջանի բնակչության վրա:

Այսօրվա բարդ իրադրության մեջ, երբ ամբողջ աշխարհն է ձեռք մեկնում Հայաստանին, յուրաքանչյուրն ուզում է իր ներդրումով կրճատել աղետի գոտում ապրող մարդկանց հոգսերն ու տառապանքը: Եվ հավատում ես, որ տաք սրտերն ու աշխատող ձեռքերը մի նպատակ ունեն. չոր տեսնել հայ մայրերի ու մանուկների աչքերը, վերածնված մեր հինավուրց, մեր սրտի աչք Հայաստանը: Այդպես են մտածում նաև Անիի շրջանում...

# ՄՇԱԿՈՒՅԹԻ ՏՈՒՆ. ԳՈՐԾԵՐ, ՀՈԳՍԵՐ, ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

Մեր ամսագրի խմբագրությունում հուլիսին տեղի ունեցավ հանրապետության կուլտուրայի բնագավառի մի խումբ աշխատողների հանդիպում «կլոր սեղանի» շուրջը, որտեղ քննարկվեցին մշակույթի տների և ակումբային հիմնարկների գործունեության ներկա վիճակը, դրանց վերակառուցման հետ կապված որոշ հրատապ խնդիրներ:

Զրույցին մասնակցեցին ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության ակումբային գործի գլխավոր մասնագետ Գևորգ Մինասյանը, Երքաղխորհրդի գործկոմի կուլտուրայի վարչության պետի տեղակալ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու Կարեն Ղազարյանը, Նաիրիի շրջխորհրդի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչ Ռոլանդ Ավետիսյանը, Իջևանի քաղխորհրդի կուլտուրայի բաժնի վարիչ Ալվարդ Եգանյանը, Արարատի շրջանի Փոքր Վեդու մշակույթի տան դիրեկտոր Սահակ Գալստյանը, Մասիսի շրջանային մշակույթի տան դիրեկտոր Ալեքսան Բաղդասարյանը, Նաիրիի շրջանի Պռոշյանի անվան պետական տնտեսության մշակույթի տան դիրեկտոր Վարդգես Պետոյանը:

Քննարկումը վարում էր խմբագրության գիտության և կուլտուրայի բաժնի վարիչ Սամվել Կարապետյանը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Այսօր հավաքվել ենք քննարկելու մեր մշակույթի տների և ակումբային հիմնարկների գործունեության՝ մի քանի էական հարցեր, այն օրախնդիր պրոբլեմները, որոնց լուծումով է պայմանավորված աշխատավորության հոգևոր կյանքի հարստացման այս կարևոր օջախների վերակառուցումը:

Կուլտուրական քաղաքականության խնդիրը մարդկանց ընդունակությունների դրսևորման համար ամենալայն ասպարեզ բացելն է, նրանց կյանքը հոգեպես հարուստ, բազմազան դարձնելը: Կարևոր է կուլտուր-դաստիարակչական աշխատանքն այնպես կազմակերպել, որ այն առավել լրիվ բավարարի մարդկանց պահանջմունքները, ընդառաջ գնա նրանց հետաքրքրություններին:

Սոցիոլոգիական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության շրջանների ակումբների աշխատանքն այսօրվա դրությամբ չի գոհացնում բնակչությանը: Ստացված տվյալներով մի քանի շրջաններում ակումբ է հաճախում բնակչության ընդամենը 6 տոկոսը, այն դեպքում, երբ աշխատավորությունն ունի 75 տոկոս ազատ ժամանակի ավելցուկ: Մինչդեռ նա ազատ ժամանցի վայր է փնտրում: Կարծում եմ, որ մեր զրույցը, մտքերի փոխանակությունը կնպաստեն այս ոլորտում տիրող վիճակի բարելավմանը, աշխատանքի վերակառուցման գործուն ուղիների որոնմանը:

Գ. ՄԻՆԱՍՅԱՆ— Ակումբների աշխատանքի շուրջ մամուլում շատ է խոսվել: Նկարագրվել են դրանց շենքային անմխիթար պայմանները, աղքատ նյութատեխնիկական բազան, գրվել է կադրերի, նրանց աշխատանքի, տնտեսությունների, իշխանության տեղական մարմինների հետ հարաբերությունների մասին: Գրվել է, սակայն ակումբը նույնը, կամ համարյա նույնն է մնացել:

Ո՞րն է պատճառը...

Շուրջ 70 տարի ակումբները համարվել են երկրորդական, հաճախ նաև՝ ավելորդ հիմնարկներ: Ընդունվել են տասնյակ որոշումներ, արձակվել հրամաններ, հանձնարարականներ տրվել, սակայն վիճակը, իսկ սա ակներև է, գնալով վատթարացել է: Ակումբների գործունեության ծավալման առաջին տարիներին (20—30-ական թվականներ) ամեն ինչ արվում էր դրանք, ինչպես Կրուպսկայան էր ասում, «երկրորդ տուն» դարձնելու համար: Գյուղի ամենակիրթ, զարգացած, գրագետ մարդը, դառնում էր խրճիթվար, իսկ խրճիթը, ակումբը, բնակիչների հաղորդակցման, նրանց հոգևոր սնունդ տալու, արվեստին մոտեցնելու համար ջանքեր չէին խնայում: Այս տարիներին ակումբները լավ թե վատ կատարեցին իրենց առաքելությունը, մասնակցեցին համընդհանուր անգրագիտության վերացման հսկայածավալ աշխատանքներին:

Ցենդյան օրից ցայսօր խորհրդային ակումբն ունի մեկ աշխատող: Սոցիալական ոլորտի աշխատողների մեջ ամենացածր աշխատավարձ տրվում է ակումբավարներին: Ուսուցիչների, գրադարանավարների համար նախատեսված է երկարամյա աշխատանքի լրավճար, ակումբավարներին՝ ոչ:

Ակումբավարը զուրկ է այն արտոնություններից, ինչ տրվում են կոլտնտեսականներին և խորհտնտեսությունների բանվորներին, թեպետ ակումբային աշխատողները մասնակցում են գյուղատնտեսական աշխատանքներին: Ակումբավարից պահանջում են բոլորը, իսկ օգնողներ չկան: Շենքային անբարվոք պայմանները, նյութատեխնիկական բազայի անմխիթար վիճակը, ղեկավարման բյուրոկրատական-հրահանգչական մեթոդները, ակումբային որոշ աշխատողների անճարակությունն ու գործի չիմացությունը հասցրել են այն բանին, որ բնակիչը այսօր երես է թեքել ակումբից: Ակումբային աշխատանքի ոնը հնաբույր է, նաև՝ ճաշակից զուրկ:

Այդուհանդերձ վիճակի շտկման պայմաններ, թերևս կան: Ոմանք պնդում են վերացնել ակումբները, ոմանք՝ դրանք փոխարինել այլ հիմնարկներով, մյուսները՝ ակումբները պահպանել, սակայն կտրուկ փոխելով դրանց աշխատանքի բովանդակությունը, ղեկավարման ձևերն ու ֆինանսատնտեսական կարգավիճակը: Ինչպե՞ս վերակառուցել բնագավառը:

Կ. ՂԱԶԱՐՅԱՆ— Իմ կարծիքով, խնդրի լուծման համար անհրաժեշտ է առաջին հերթին հաշվի առնել կուլտուր-լուսավորական աշխատանքի մեթոդների կատարելագործման հարցը: Վերջին հաշվով, դրանով միայն կարելի է հասնել անձի ներդաշնակ, բազմակողմանի զարգացման գործում մշակույթի օջախի դերի բարձրացմանը: Այս հանգամանքը պարտադրում է լրջորեն վերանայել ակումբային աշխատանքի ոնը: Ակումբային հիմնարկների վիճակագրական հաշվետվությունները, որոնք հիմնականում լոկ թվական տվյալներ են պարունակում, մարդկանց ստիպում են հաշվի նստել բացառապես քանակական ցուցանիշների հետ, առաջնորդվել՝ «կարևորը հաշվետվությունն է» սկզբունքով: Պետք է սկսել ակումբային հիմնարկների գործունեության գնահատման չափանիշների փոփոխումից, հասնել այն բանին, որ ակումբային աշխատողի աշխատանքը գնահատվի ըստ վերջնական, կոնկրետ արդյունքի: Այդպիսով արմատախիլ կարվեն տոկոսամոլությունը, աշխատանքի շաբլոն ձևերն ու մեթոդները: Միաժամանակ կբարձրանան մշակույթի աշխատողների պատասխանատվությունը, ստեղծագործական ակտիվությունը:

Մի կարևոր հանգամանք ևս. ակումբների գործունեությունը պետք է ըստ ամենայնի կողմնորոշել դեպի կոնկրետ մարդը: Բնակչության, հատկապես երիտասարդության սոցիալ պահանջմունքների ու հետաքրքրությունների ուսումնասիրումը հնարավորություն կտա ազատ ժամանակը կազմակերպելիս զարգացնել ստեղծագործական միտքը, լավագույնս կդրսևորվեն մարդու նախաձեռնությունը կարողությունները: Ինքնագործունեության բազմաժանր կոլեկտիվները, սիրողական միավորումներն ու ըստ հետաքրքրությունների ակումբներն այլ բան չեն, քան մարդկանց սոցիալական ակտիվության, մարդկային գործոնի ակտիվացման արդյունավետ միջոցներ: Հենց դրանով է պայմանավորված ամենատարբեր միավորումների ու ըստ հետաքրքրությունների ակումբների ներկայիս անող մասսայականությունը:

Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Այսօր կուլտուր-լուսավորական հիմնարկ ասելիս անհնարին է պատկերացնել 20—30-ական թվականների խրճիթընթերցարաններն ու կիրակնօրյա դպրոցները: Վաղուց արդեն դրանք իրենց տեղը զիջել են մշակույթի տներին ու ակումբներին:

Ասում ենք՝ մշակույթի տուն, հասկանում ենք՝ երգ-երաժշտություն, թատրոն, պար, ասմունք և այլն: Բայց ինչպիսին է վիճակն այսօր:

Մասիսի շրջանային մշակույթի տունն ունեցել է և ունի իր ավանդույթները: 60-ական թվականներին այստեղ գործել է թատրոն, 70-ականներից՝ ժողգործիքների խումբ, որը հետագայում արժանացել է ժողովրդականի կոչման: Այդ տարիներին է ստեղծվել նաև վոկալ-գործիքային համույթը: 80-ականներին գործում են քառաձայն երգչախումբը, պարային համույթը, մանկական թատրոնը, կիրառական-դեկորատիվ արվեստի, մաքրամեգործության և մի շարք այլ ուսուցողական խմբեր: Դրանցում ընդգրկված շուրջ 120 երիտասարդները շաբաթական երկու օր աշխատանքից հետո մասնակցում են ինքնագործունեության պարապմունքներին: Տարիներ շարունակ նրանք պատրաստում են ծրագրեր, սակայն լավագույն դեպքում տարեկան մի քանի ելույթ են ունենում շրջանում: Այլ վայրեր հյուրախաղերի մեկնելը կապված է դժվարությունների հետ: Չկա փոխադրամիջոց: Համապատասխան հանդերձանք ձեռք բերելու համար խոշոր գումարներ են պետք: Երկար ժամանակ մարդը փորձում էր իր համարը, սամանակ մարդը փորձում էր իր համարը, սակայն համերգների քիչ է մասնակցում և չի ստանում որևէ խրախուսանք: Սկսվում է հուսահատություն, և այնուհետև մեծ ջանքեր են հարկավոր համույթի մակարդակը վերականգնելու համար:

Չկա նյութական խրախուսման որևէ ձև, ինչ, ի դեպ, եղել է մինչև 70-ական թվականները: Իմ կարծիքով, տնտհաշվարկը կամ պայմանագրով աշխատանքը բավականաչափ կնպաստեն ինքնագործունեության հետագա զարգացմանը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Արդյոք մասնակի կամ լրիվ տնտհաշվարկի անցնելը շտկումներ կմտցնի՞ համակարգում: Դժվար չէ եզրակացնել, որ մշակույթի տների և ակումբային հիմնարկների գործունեությանը մեծապես խոչընդոտում է այն հանգամանքը, որ դրանք չունեն անհրաժեշտ նյութատեխնիկական բազա:

Վ. ՊԵՏՈՅԱՆ— Տնտեսությունների ինքնաֆինանսավորման անցնելու կապակցությամբ շատ

Ս. ԳԱԼՍՏՅԱՆ— Արարատի շրջանում կա 20-ից ավելի հարմարավետ մշակույթի տուն, որոնք վերջին տարիներին լրիվին ազատվեցին այլ կազմակերպությունների տնօրինությունից: Դյուրին չեն աշխատանքային հարաբերությունները տնտեսության ղեկավարների հետ: Մշակույթի տներում գործող ինքնագործ խմբերն ապահովված են ղեկավար աշխատողներով: Ունենք բարձր կատարողական վարպետությամբ աչքի ընկնող ինքնագործ խմբեր, բայց չունենք փոխադրամիջոց: Այդ առիթով հաճախ ենք բախվում գյուղական ղեկավարության անուշադրությանը: Օրինակ, մշակույթի տան ժողգործիքների համույթը շրջանային կուլտուրայի բաժնի պահանջով մեկնեց Ստեփանակերտ, գումարը փոխանցեց մեր կոլտնտեսությունը, սակայն հետո, իմանալով, որ մշակույթի տունը իր հաշվում ունի որոշ գումար, տնտեսության ղեկավարը զղջաց իր փոխանցած 154 ռուբլու համար, ասելով, որ լավ կլիներ, եթե մենք մեր միջոցներով գնայինք:

Մի հարց ևս. մշակույթի տան հրապարակում կամ այգում չկան կարուսելներ, նստարաններ, ատրակցիոն խաղեր, չկան սպորտհրապարակներ: Մինչդեռ դրանք խիստ անհրաժեշտ են: Բայց ահա միջոցները չեն բավականացնում: Եվ այն մարդիկ, որոնք պատասխանատու են նշված խնդիրները լուծելու, չգիտես ինչու, անտարբեր են: Եզրակացությունը մեկն է՝ կադրերն իրենց տեղերում չեն, որի պատճառով տուժում է գործը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Ինչ խոսք, այսօր անչափ կարևորվում է կադրերի հարցը: Վատ է, որ այս մարզում կադրերի հոսունությունը չի կրճատվում, աշխատող կադրերն էլ անհրաժեշտ մակարդակը չեն ապահովում: Ո՞րն է պատճառը: Արդյո՞ք կուլտուրայի ոլորտը կորցնում է իր գրավչությունը, թե՞ լճացման տարիների իներցիայով շարունակվում է կադրային սխալ քաղաքականությունը:

Կ. ՂԱՋԱՐՅԱՆ— Իմ կարծիքով մեր հանրապետությունում կուլտուր-լուսավորական աշխատանքի արմատական վերակառուցումը մեծապես պայմանավորված է այն բանով, թե մենք որքան արագ ու նպատակասլաց կլուծենք այս ոլորտը բարձրորակ կադրերով ապահովելու հարցը: Այն, իր հերթին, կախված է մի շարք սկզբունքային ուսումնական-գործնական խնդիրների արդյունավետ լուծումից: Շատ կարևոր է, որ Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտի կուլտուրայի ֆակուլտետի ուսումնական պրոցեսում օպտիմալ կերպով համատեղվեն կուլտուր-լուսավորական և պրոֆեսիոնալ-գեղարվեստական մասնագիտությունները: Ցավոք, ուսումնական պրակտիկայում ավելի հաճախ տարվում է գեղարվեստական մասնագիտացմանը նախապատվություն տալու քաղաքականություն՝ ի վնաս կուլտուր-լուսավորականի: Դրանով իսկ հետին պլան է մղվում ուսանողին՝ մշակույթի ապագա աշխատողին, խոր մասնագիտական գիտելիքներ տալու առաջնահերթ խնդիրը: Ակումբային աշխատանքի մասնագետների պատրաստման գոյություն ունեցող կարգը կատարելագործման կարիք ունի: Իսկ այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ է տվյալ ֆակուլտետում գեղարվեստական ամբիոններին զուգահեռ ստեղծել հիմնական կուլտլուսամբիոն, որը, ցավոք, ներկայումս կցված է կինո-ֆոտո վարպետության ամբիոնին:

Խոսելով ակումբային հիմնարկների վերակառուցման մասին, պետք է ուշադրություն դարձնել կուլտլուսաշխատողի հեղինակության հարցին: Հարկավոր է ոչ միայն ակումբային գործի նոր ձևեր որոնել, այլև բարելավել հենց կուլտլուսաշխատողի վիճակը, գործուն միջոցներով կայունացնել, բարձրացնել նրա հեղինակությունը: Այստեղ գործընկերների բերած փաստերը խոսում են այն մասին, որ աշխատավարձը նույնպես մասնագիտության հեղինակության բարձրացման բաղկացուցիչներից է: Եվ որքան արագ լուծվի այդ խնդիրը, այնքան լավ, որովհետև ակումբային հիմնարկները շարունակում են կորցնել երիտասարդ մասնագետներին: Առօրյա տաղտկալի աշխատանքը, հաճախ մի գույքի, մի հագուստի համար անհարկի վազվզոցը զցում է նրա հեղինակությունը, դարձնում միջոցներ մուրող: Մի՞թե նման պայմաններում նա հոգեպես չի հակադրվի իր իսկ մասնագիտությանը: Անտարակույս: Պետք է ընդհանուր գործի մեջ յուրաքանչյուր կուլտլուսաշխատողի ներդրմանը տարբերակված վերաբերվել: Ասենք ակումբային աշխատողների աշխատավարձը հաշվարկել ոչ թե միայն հաստիքացուցակի հնացած տարիֆներով, այլ ըստ ակումբի կյանքին նրանցից յուրաքանչյուրի մասնակցության չափով, այսինքն հաշվի առնել աշխատանքային մասնակցության գործակիցը: Անհրաժեշտ է մի չափանիշ, որը կարելի լինի դիտարկել որպես ակումբի աշխատողի ճիշտ ընտրության, բնակչության մեջ նրա ունեցած հեղինակության ցուցանիշ: Նման չափանիշն, ըստ իս, կարելի է համարել հատուկ հաշիվը: Չէ որ միայն այն ճշգրիտ ցույց կտա, թե ճիշտ են արդյոք ընտրված ուղղությունները: Բացի այդ, հատուկ հաշիվը կարելի է օգտագործել որպես աշխատավարձի բարձրացման ճանապարհ՝ սեփական միջոցների հաշվին:

Գ. ՄԻՆԱՍՅԱՆ— Կուլտուրայի մինիստրության համակարգի ակումբային 2800 աշխատողներից միայն 175-ը ունի բարձրագույն մասնագիտական կրթություն, 643-ը՝ միջնակարգ-մասնագիտական: Ստեղծված իրավիճակից դուրս գալու համար (որովհետև մասնագիտական ինստիտուտ չկա, իսկ մանկավարժական ինստիտուտի կուլտուրայի ֆակուլտետի և էջմիածնի ակումբագրադարանային տեխնիկումի շրջանավարտները այդպես էլ կտրուկ չեն համալրում ակումբները), մեր նախաձեռնությամբ Սիսիանում գիտափորձի կարգով ստեղծվել է կուլտլուսաշխատողների երկամյա դպրոց: Վերջինիս պարապմունքները անցկացվում են միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատության ծրագրերով՝ միայն մասնագիտական առարկաների գծով:

Ճիշտ կլինի դպրոցի շրջանավարտներին միջնակարգ-մասնագիտական կրթություն ստանալու իրավունք տալ: Փորձը հետագայում կարելի է կիրառել ուրիշ շրջաններում, իհարկե, էջմիածնի ակումբագրադարանային տեխնիկումի հետ համագործակցելով: Մյուս կողմից, ժամանակն է հանրապետությունում ստեղծել մշակութային աշխատողների ասոցիացիա կամ ընկերություն, որը կկոորդինացնի այս բնագավառի բոլոր հարցերը (անկախ գերատեսչական պատկանելությունից), ունենա մշակույթի զարգացման հեռանկարային, գիտականորեն հիմնավորված ծրագիր, դրամական միջոցներ և այլն:

Ըստ իս, անհրաժեշտ է փոխել ակումբների վերաբերյալ ստեղծված կարծիքը, վերաբերմունքը: Դրանք պետք է հանել եռիշխանությունից (տնտեսություն, գյուղխորհուրդ, կուլտուրայի բաժին) և ստեղծել ինքնակառավարման համակարգ: Ակումբավարին պետք է ընտրի աշխատավորական կոլեկտիվը կամ բնակչությունը, իսկ ակումբը պետք է ունենա գերբով կնիք, դրոշմակնիք, իր անվամբ բլանկ և, որ ավելի կարևոր է, բանկում ընթացիկ, հաշվարկային հաշիվ:

Կարևորագույն հարցերից է աշխատանքի բովանդակության փոփոխումը: Ակումբը պետք է դառնա բնակչության ակտիվ հանգստի կազմակերպման կենտրոն: Ի դեպ, ՀԽՍՀ կուլտուրայի մինիստրությունը մշակել և նյութի աշխատողների քննարկմանն է ներկայացրել ակումբային հիմնարկների նոր կանոնադրությունը: Համաձայն դրա, փոխվել են ակումբների կազմակերպական սկզբունքներն ու կառուցվածքը, տնտեսական մեխանիզմը, աշխատանքի կազմակերպման մեթոդոլոգիան, ղեկավարման համակարգը: Այստեղ տրվում են նորմատիվներ, ղեկավար մարմինների հետ հարաբերության ձևեր, աշխատանքի գնահատման չափանիշներ և այլն:

Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆ— Կադրային վերակառուցումը, իմ կարծիքով, կարելի է իրականացնել, հաշվի առնելով հետևյալ հանգամանքները: Այժմ, երբ կուսակցությունն ու կառավարությունը առաջին պլան են մղում լավագույն աշխատողների նյութական խրախուսման հարցը, մեր բնագավառը տեսադաշտից դուրս է մնացել: Մի գյուղում մշակույթի տունն աշխատում է ուժերի գերլարումով, մյուսում՝ մատը մատին չեն խփում: Բայց այս երկուսին իրարից տարբեր կերպ գնահատելու նյութական հնարավորություն գրեթե չկա (եթե կա էլ, ապա մեր մարմինների ձեռքում չէ): Հարկավոր է արմատապես վերանայել ակումբային աշխատանքի գնահատման-վարձատրման գործող բազային համակարգը, ուր ամեն ինչ հաշվի է առնվում դահլիճի նստելու տեղերի քանակով, գյուղի բնակչության թվով: Անհրաժեշտ է ակումբային հիմնարկները միավորել այնպես, ինչպես արվեց գրադարանների համակարգում: Նպատակահարմար է նաև ակումբային, գրադարանային բոլոր աշխատողների համար սահմանել աշխատավարձի մինիմում, իսկ ավելացումը թողնել բաժինների տնօրինությանը: Այս նպատակի համար պետք է իրավունք տրվի ամբողջապես օգտագործել նաև տնտեսած աշխատավարձը: Նման միջոցառումները էապես կկրճատեն կադրերի հոսունությունը, և մարդն ավելի կնվիրվի իր գործին:

Ա. ԵԳԱՆՅԱՆ— Իջևանի շրջանն ունի երկու կուլտուրայի բաժին՝ քաղաքային և շրջանային: Եվ հենց այս առումով էլ ցանկանում եմ խոսել նրանց կողմից կադրերի հետ տարվող աշխատանքի մասին:

Տարիներ առաջ եղել է մեկ կուլտուրայի բաժին՝ շրջանային: Հիմա, երբ առկա է նաև քաղաքային կուլտուրայի բաժինը, որը ինքնանպատակ չէ և ստեղծվել է շրջանի զարգացման հեռանկարներից ելնելով, ապա երկու բաժինների գործունեության կոորդինացման համար անհրաժեշտ է նախ հստակ սահմանազատում մտցնել նրանց աշխատանքներում: Սրանից հետո, նրանք, իմանալով իրենց գործունեության շրջանակները, պատասխանատվություն կզգան օբյեկտների աշխատանքների ճիշտ կողմնորոշման համար: Ստացվել է այնպես, որ շրջանային կուլտուրայի բաժնին են տրամադրված քաղաքի մշակութային բոլոր օջախները՝ գրադարանները, միակ մշակույթի տունը, թեպետ քաղաքի մշակութային կյանքի պատասխանատուն քաղաքային կուլտուրայի բաժինն է: Դա թուլացնում է շրջանային կուլտուրայի բաժնի աշխատանքները գյուղերում, որովհետև նրանք հիմնականում գործում են քաղաքում:

***

**Խմբագրությունը մշակույթի օջախների առկա անմխիթար վիճակի շուրջ սկըսված խոսակցությունը ավարտված չի համարում: Բարձրացված հարցերը կարոտ են խոր ու հանգամանալի վերլուծության և որ, ամենակարևորն է, կուլտուրայի մինիստրության գործնական, վճռորոշ քայլերի:**

# ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՀԵՐԹԱՓՈԽԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**Օ. ԱԴՈՒԼՅԱՆ**

ԲԱՐՁՐ ՈՐԱԿԱՎՈՐՈՒՄ ունեցող լայն պրոֆիլի բանվորների նկատմամբ աճող պահանջի բավարարումը այսօր հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն նախապայմաններից մեկն է:

Զգալի թվով բանվորներ են պատրաստվում ինչպես պրոֆտեխուսումնարաններում, այնպես էլ անմիջականորեն արտադրությունում: Այստեղ նրանք ստանում են անհրաժեշտ գիտելիքներ, ծանոթանում գիտության ու տեխնիկայի նվաճումներին, նախապատրաստվում պրակտիկ աշխատանքի՝ հաշվի առնելով տեխնիկայում և տեխնոլոգիայում տեղի ունեցող փոփոխությունները:

Վերջին տասնամյակներին հանրապետությունում բանվորների պատրաստման և նրանց որակավորման բարձրացման ասպարեզում քիչ գործ չի արվել: Այսպես, եթե 1970 թվականին նոր մասնագիտություններ է սովորել 57,5 հազար բանվոր, ապա 1987 թվականին նրանց թիվը հասել է 67,4 հազարի: Այդ նույն տարիներին իրենց որակավորումն են բարձրացրել համապատասխանաբար 46,5 հազար և 222,7 հազար բանվորներ: Բացի այդ, միայն 1988 թ. արդյունաբերական ձեռնարկություններին առընթեր գերատեսչական պրոֆեսիոնալ ուսումնարանները, ինչպես նաև այլ ձեռնարկություններին կից դպրոցները և ուսումնարանները պատրաստել են 265 որակյալ բանվոր:

Բանվորների պատրաստման գործում հանրապետության ձեռնարկությունների և աշխատանքային կոլեկտիվների կուտակած հարուստ փորձը կարող է օգտակար լինել տվյալ ոլորտի այսօրվա խնդիրների լուծմանը:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում երիտասարդ բանվորական կադրերի պատրաստման հարցը կենսական կարևորություն ուներ ինչպես ամբողջությամբ վերցրած ԽՍՀՄ-ում, այնպես էլ մեր հանրապետությունում: Բանվոր դասակարգի համալրման հիմնական ձևերն էին կազմակերպված հավաքագրումը և մոբիլիզացումը, ֆաբրիկագործարանային ուսուցման դպրոցների ու պետական աշխատանքային ռեզերվների համակարգի ուսումնարանների շրջանավարտների տեղաբաշխումը, հենց ձեռնարկությունների կողմից կադրերի պլանային հավաքագրումը և նրանց վերաբաշխումը հանրապետության ժողովրդատնտեսական համալիրի ճյուղերի միջև:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում երիտասարդ բանվորներ էին պատրաստվում հիմնականում անհատական, բրիգադային և դասընթացային ուսուցման միջոցով, այսինքն՝ առանց արտադրությունից կտրվելու և արտադրությունից կտրված: Ընդ որում, պետք է հաշվի առնել, որ արտադրություն էին եկել հիմնականում զորացրված զինվորները, և, ի տարբերություն պատերազմական ժամանակաշրջանի, արդյունաբերությունը համալրվեց տեխնիկապես գրագետ և փորձառու բանվորներով: Հարկ է նշել նաև այն հանգամանքը, որ 50-ական թվականներին, առանձնապես նրա երկրորդ կեսին, ձեռնարկություններն արդեն լիովին համալրվել էին երիտասարդ բանվորական կադրերով, որոնք արտադրություն էին գալիս՝ ավարտելով ֆաբրիկագործարանային դպրոցները և արհեստագործական ուսումնարանները:

Արտադրությունում բանվորների պատրաստման գործում սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը հիմնականում հանգում էր կազմակերպական ու ղեկավար ֆունկցիաների իրականացմանը: Դրա հետ մեկտեղ, սակայն, միշտ չէ, որ պատշաճ ուշադրություն էր նվիրվում բանվորների տեխնիկական գիտելիքների մակարդակի և որակավորման բարձրացման աշխատանքներին: Հարկ եղած պատասխանատվություն չէր դրսևորվում սոցիալիստական սեփականության պահպանության նկատմամբ, տեսադաշտից դուրս էին մնացել երիտասարդ հերթափոխի դաստիարակության գործում եղած թերությունները:

Լուրջ պրոբլեմ էր նաև այն, որ արհեստագործական ուսումնարանների սովորողները ինքնակամորեն հեռանում էին ինչպես հենց ուսումնական հաստատություններից, այնպես էլ այն բազային ձեռնարկություններից, որոնցում նրանք պրակտիկա էին անցկացնում կամ ամրացվել էին ուսումնարաններն ավարտելուց հետո: Այսպես, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի 1945 թվականի հունիսի 16-ի որոշման մեջ նշված էր. «Որոշ ձեռնարկությունների ղեկավարներ, այնպիսիք, ինչպիսիք են Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը, ժամացույցի գործարանը, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը, ինչպես նաև Կիրովականի քիմիական գործարանը և նրանց կուսակցական կոմիտեները, որոնց հիման վրա կազմակերպվել են արհեստագործական ուսումնարաններ և ֆաբրիկագործարանային դպրոցներ, չեն ապահովել պահանջված քանակի սարքավորումներով, չեն ստեղծել նորմալ բնակարանային-կենցաղային պայմաններ և պատշաճ ուշադրություն չեն դարձրել սովորողների դաստիարակության գործին, որը և հանգեցրել է սովորողների և երիտասարդ բանվորների մասսայական ինքնակամ հեռացմանը» (տե՛ս մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1, ց. 25, գ. 3, էջ 136):

Փաստորեն մեր խոշորագույն ձեռնարկություններից մեկում՝ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում, արտադրական պլանի թերակատարման պատճառը ադմինիստրացիայի և կուսակցական կոմիտեի պասիվությունն էր 1945-ի տարեվերջին որակյալ բանվորների և վարպետների օգնականների հավաքագրման ու պատրաստման նպատակով միջոցներ ձեռնարկելու գործում: Բացի այդ, ձեռնարկությունը ցնցվում էր աշխատանքային ու արտադրական բույլ կարգապահությունից, կազմակերպական-տեխնիկական խառնաշփոթություններից: Կոմբինատի առջև խնդիր դրվեց անցնել լրիվ երկհերթ աշխատանքի և 1946 թվականի պլանի կատարումն ապահովելու համար նոր առաջատար բանվորական մասնագիտությունների գծով հավաքագրել ու պատրաստել 700 մարդ (տե՛ս մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1, ց. 25, գ. 40, թ. 137): Անհրաժեշտ էր նաև բանվորների ուսուցման և նրանց տեխնիկական պատրաստության ու որակավորման բարձրացման համակարգը զինել համապատասխան սարքավորումներով:

Սակայն մինչև 1947 թվականն էլ կոմբինատում իրադրությունը չփոխվեց և ուշադրությունը չբևեռվեց երիտասարդ որակյալ կադրեր, հատկապես ջուլհակներ ու վարպետների օգնականներ պատրաստելու և կոմբինատում նրանց ամրացնելու վրա: Եվ պատահական չէ, որ 1947 թվականի չորս ամսվա արտադրական պլանը կոմբինատը կատարեց ընդամենը 75 տոկոսով:

Հանրապետության ձեռնարկությունների մեծամասնությունը հատուկ էին ցածր աշխատավարձը, վերջնական արդյունքի նկատմամբ երիտասարդ բանվորների անշահագրգիռ աշխատանքը, կենցաղային վատ հարմարությունները, ինչպես նաև կադրերի օգտագործումը ոչ իրենց մասնագիտությամբ: Գործի հանդեպ հենց անհոգի և անտարբեր վերաբերմունքով պետք է բացատրել այն փաստը, որ շատ արդյունաբերական ձեռնարկությունների ադմինիստրացիաներ և կուսկազմակերպություններ, ինչպես նաև խորհրդային ու տնտեսական մարմիններ, որոնք ունեին համապատասխան միջոցներ և հնարավորություններ, չկարողացան երիտասարդ բանվորներին ժամանակին ապահովել աշխատանքի, հանգստի ու կենցաղի համապատասխան պայմաններով:

Նման անպատասխանատու մոտեցման օրինակ է նաև Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կուսակցական կազմակերպության աշխատանքը: «1948 թվականին բանվորական կադրերի պատրաստման համար հատկացված միջոցները իրացվել են սոսկ 39,1 տոկոսով: Անհատական ուսուցման կարգով և տեխմինիմումի խմբակների միջոցով պատրաստվել է 78 բանվոր 110-ի փոխարեն: 200 բանվորների որակավորման բարձրացման համար ստանձնած պարտավորությունները չեն կատարվել» (նույն տեղը. ֆ. 1, ց. 9, գ. 32, թ. 56):

Նշված ժամանակաշրջանում երիտասարդ բանվորների արտադրատեխնիկական ուսուցման հիմնական ձևը, ըստ ընդգրկվածների թվաքանակի, անհատական-բրիգադային համակարգն էր: Դրա առավելությունն այն էր, որ հնարավորություն էր ստեղծվում կադրեր պատրաստել կարճ ժամկետներում, համեմատաբար քիչ ծախսումներով: Բայց կային նաև թերություններ, ինչպես նոր բանվորների պատրաստման գործում միակերպության բացակայությունը, որակավորման սահմանված պահանջների խախտումը, ձեռնհաս դասատուների և հրահանգիչների անբավարար քանակը, հատուկ սարքավորված կաբինետների, դասագրքերի, հաստոցների և այլ պիտույքների սուր պակասը («ԽՍՀՄ բանվոր դասակարգը», հ. 4, Մ., 1987 թ.):

Սակայն պետք է խոստովանել, որ հանրապետության ձեռնարկությունների շատ կուսակցական կազմակերպություններ, չնայած իրենց աշխատանքում առկա թերություններին, օպերատիվ միջոցներ էին ձեռնարկում դժվարությունները հաղթահարելու, բանվորների պատրաստման որակը բարձրացնելու համար:

1949 թվականի հունվարից հաստոցաշինական գործարանի կուսակցական կազմակերպու-

*ԱԴՈՒԼՅԱՆ ՕԼԵԳ ԼԱՎՐԵՆՏԻԻ— Երևանի պետական համալսարանի ԽՄԿԿ պատմության ամբիոնի հայցորդ։*

թյունն առաջարկեց կանոնավոր բնույթ հաղորդել երիտասարդ բանվորների, վարպետների և ինժեներատեխնիկական աշխատողների պատրաստման ու որակավորման բարձրացման տեխնիկական խմբակների, ստախանովյան դպրոցի և տեխմինիմումի խմբերի աշխատանքին: 1946—1950 թվականներին արդյունաբերական ձեռնարկություններում, երկաթուղային տրանսպորտում և շինարարությունում անհատական, բրիգադային և դասընթացային ուսուցման միջոցով ընդհանուր առմամբ հանրապետությունում պատրաստվել են հազարավոր բանվորական կադրեր: Ուսուցման այդ ձևերն առանձնակի տարածում էին գտել միութենական ենթակայության ձեռնարկություններում: Օրինակ, 1946—1949 թվականներին հանրապետության պղնձամոլիբդենային արդյունաբերությունում պատրաստվել էր ավելի քան 2100 բանվոր (տե՛ս ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 163, ց. 15. գ. 322, թ.թ. 85—86), իսկ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում մոտ 1890 խառատ, փականագործ, էլեկտրիկ (նույն տեղը, ֆ. 172, ց. 3, գ. 29, թ. 6):

Նույն այդ ժամանակաշրջանում երիտասարդ բանվորների նախաձեռնությամբ Կիրովականի արդյունաբերական ձեռնարկություններում, մասնավորապես քիմիական կոմբինատում, տրիկոտաժի ֆաբրիկայում մի քանի մասնագիտություն տիրապետելու շարժում ծավալվեց: Հենց միայն քիմկոմբինատում 1946 թվականին ավելի քան 100 երիտասարդ բանվոր յուրացրեց 2—3 մասնագիտություն:

Մյուս կարևոր պրոբլեմը մեխանիզատոր կադրերի պատրաստումն էր հանրապետության մեքենատրակտորային կայանների (ՄՏԿ) համար: Այդ աշխատանքն ընդհանուր առմամբ անբավարար էր կատարվում 4-րդ և 5-րդ հնգամյակներում: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն 1954 թվականի հունվարի 5-ի նիստում գյուղատնտեսության մինիստրությանը պարտավորեցրեց տասնօրյա ժամկետում հանրապետության ՄՏԿ-ներին առընթեր կազմակերպել 300 տրակտորիստի և 200 կոմբայնավարի պատրաստումը: Առաջադրանքի կատարման այդպիսի սեղմ ժամկետներ էր թելադրում ստեղծված բարդ իրադրությունը: Եվ այն փաստը, որ մինչև 1955 թվականը պատրաստվեց 1,4 հազար մեխանիզատոր, այդ թվում 800 տրակտորիստ, գյուղատնտեսության բնագավառում տեղի ունեցած ռեալ տեղաշարժերի վկայությունն է:

Առանձնակի ուշադրություն էր պահանջում նաև արտադրությունում բանվորների որակավորման բարձրացման խնդիրը: Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների այդ աշխատանքը պայմանավորված էր արտադրական կարողությունների ամենամյա մեծացմամբ, նոր տեխնոլոգիայի ներդրմամբ: Աշխատողների որակավորման բարձրացումը, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի աճը պետք է նպաստեին տեխնոլոգիական բարդ գործողությունները տիրապետելուն: Հետպատերազմյան տարիներին հարկ եղավ հսկայական աշխատանք կատարել բանվորների մասնագիտական մակարդակը նոր տեխնիկայի յուրացման խնդիրներին համապատասխանեցնելու համար: Չորրորդ հնգամյակում դեռևս շարունակում էր արտադրությունում գործել կադրերի տեխնիկական ուսուցման ավանդական ձևերից մեկը՝ տեխմինիմումը, որը հանրապետության ձեռնարկություններում ներդրվել էր առաջին հնգամյակի տարիներին: Պատերազմից հետո ուսուցման այդ ձևն արդեն չէր կարող ապահովել բանվորների որակավորման բարձրացումը, քանի որ նրա ծրագիրը բավարար չափով հագեցած չէր տեսական հարցերով և չէր ներառնում աշխատանքի առաջավոր մեթոդները: Արդյունաբերության զարգացման նոր պայմաններում տեխմինիմումը, որպես բանվորների որակավորման բարձրացման հիմնական ձևերից մեկը, փաստորեն կորցրեց իր նշանակությունը:

Արդյունաբերական ձեռնարկություններում առանձնակի տեղ էր տրվում արտադրատեխնիկական դասընթացների կազմակերպմանը: Դրանք լայն տարածում գտան 1951—1955 թվականներին, երբ հնացած սարքավորումների ինտենսիվ փոխարինման պրոցես էր տեղի ունենում: Դասընթացների ծրագիրը ներառնում էր ինչպես տվյալ մասնագիտության ընդհանուր տեսությունը, այնպես էլ արտադրության նորարարների փորձը: Գործնական պարապմունքները տեղի էին ունենում անմիջականորեն աշխատատեղերում, իսկ ուսուցման ընդհանուր ժամկետը 4—6 ամիս էր:

1951—1955 թվականներին հանրապետությունում վերաորակավորվեցին 219,4 հազար բանվորներ ու ծառայողներ: Կադրերի վերաորակավորման ծավալն անշեղորեն աճում էր: Այսպես, եթե 1946—1950 թվականներին վերաորակավորված բանվորների ու ծառայողների թիվը կազմում էր 14,7 հազար, ապա 1951—1958 թվականներին այն հասավ մոտավորապես 27,4 հազարի: Հետևաբար, այդ տարիներին արդյունաբերության գլխավոր խնդիրը ոչ այնքան կադրերի պատրաստումն էր, որքան նրանց որակական աճը: 1955 թվականին կուսակցությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը նոր տեխնիկայով վերահագեցնելու կուրս վերցրեց: Ստեղծվում էին մեքենաների ու մեխանիզմների առաջադիմական տեսակներ, սկսեցին ավտոմատացվել արտադրական պրոցեսները: Միաժամանակ լուծվում էր երկրին անհրաժեշտ արդյունաբերական արտադրանքի թողարկման հետագա ավելացման



խնդիրը: Այդ ամենը պահանջում էր արտադրությունում բանվորական կադրերի վերաորակավորման ծավալաչափերի զգալի ընդլայնում:

Այս ամենից կարելի է հանգել հետևյալ եզրակացության:

Նախ, արդյունաբերությունը, որպես ժողովրդատնտեսական համալիրի օղակներից մեկը, բանվորական կադրերի ուսուցման և պատրաստման, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հիմնական բազան է: Հետպատերազմյան ժամանակաշրջանում մասնագիտական պատրաստություն ստացած և վերաորակավորված բանվորների ու ծառայողների ավելի քան 70 տոկոսը բաժին է ընկնում արդյունաբերությանը, նրա բազային ձեռնարկություններին:

Երկրորդ, արտադրությունում բանվորական հերթափոխի պատրաստման ու վերապատրաստման խմբակների, դասընթացների և դպրոցների գործունեությունը սերտորեն առնչվում էր այն փոփոխություններին, որոնք տեղի էին ունենում երկրի ժողովրդական տնտեսությունում: Հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանին հատուկ էր բանվորական հերթափոխի նպատակամղված պատրաստումը՝ հանրապետության ժողովրդական տնտեսության առավել կարևոր ճյուղերի համար:

Այսօր, երբ յուրաքանչյուր ձեռնարկություն հազվագյուտ, անկրկնելի օրգանիզմ է, և գործը պետք է վարել խելամտորեն, հաշվի առնելով ռեալ իրավիճակը, դժվարությունները և հնարավորությունները, արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների առջև ծառացել են արտադրությունում երիտասարդ բանվորների պատրաստման ողջ համակարգը նորացնելու խնդիրները: Այդ գործին պետք է լծվեն թե՛ կուսակցական, թե՛ խորհրդային, թե՛ տնտեսական մարմինները և թե կոմերիտական կազմակերպությունները:

Արդի պայմաններում, ընդհանուր առմամբ բանվորական կադրերի մասնագիտական-որակական կառուցվածքի կատարելագործման համար զգալիորեն բարձրանում է անմիջականորեն արտադրությունում, ուսումնադասընթացային կոմբինատների, տեխնիկական դպրոցների և այլ հաստատությունների միջոցով բանվորների պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման համակարգի դերը: Դա կնպաստի աշխատանքի արտադրողականության աճին, թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանն ու ինքնարժեքի իջեցմանը, արտադրական կարողությունների յուրացման ժամկետների կրճատմանը, տնտեսական այլ ցուցանիշների բարելավմանը:

## Գրախոսություն և քննադատություն

# ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՇԱՐՔԵՐՈՒՄ

*ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՀԽՍՀ ԳԱ պատմության ինստիտուտում մեծ աշխատանք է տարվում Հայաստանի բանվոր դասակարգի պատմության ուսումնասիրման նպատակով: Լույս են տեսել խորհրդահայ բանվոր դասակարգի կյանքի առանձին ժամանակահատվածներին ու պրոբլեմներին նվիրված մի շարք ուշագրավ աշխատություններ: Պատմաբանները զգալի աշխատանք են կատարել նաև նախահեղափոխական հայ պրոլետարիատի պատմության հետազոտման գործում: Իրենց աշխատություններում նրանք անդրադառնում են հայ բանվոր դասակարգի ձևավորմանը, նրա սոցիալ-տնտեսական, իրավական-քաղաքական դրությանը, հեղափոխական ելույթներին և այլ հարցերի: Սակայն խորհրդահայ պատմագիտության մեջ մինչև օրս չկար նախահեղափոխական շրջանի արևելահայ պրոլետարիատի ամբողջական պատմությունն ընդգրկող մասնագիտական ուսումնասիրություն: Եվ ահա այդ բացը լրացնում է ՀԽՍՀ ԳԱ հրատարակած Ա. Համբարյանի, Դ. Մուրադյանի և Ա. Սիմոնյանի «Արևելյան Հայաստանի պրոլետարիատի պատմություն» աշխատությունը*:*

*Աշխատությունը խիստ հրատապ է. անվիճելի է նրա ճանաչողական արժեքը: Այն գրված է համառուսաստանյան պրոլետարիատի պատմության հետ սերտորեն շաղկապված, երկրի բանվոր դասակարգի ազգային ջոկատների կազմավորման և զարգացման պատմության վերհանման այսօրվա խնդիրների տեսանկյունից:*

*Ժամանակագրական առումով աշխատությունը ընդգրկում է XVIII դարի վերջին քառորդից մինչև 1917 թ. ընկած շրջանը: Մենք համակարծիք ենք հեղինակների այն տեսակետին, որ թեև պրոլետարիատի կազմավորման տարրերը*

** Ա. Ս. Համբարյան, Դ. Ա. Մուրադյան, Ա. Հ. Սիմոնյան «Արևելյան Հայաստանի պրոլետարիատի պատմություն», ՀԽՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան, 1988, 301 էջ:*

Արևելյան Հայաստանում առաջ են եկել XVIII դարի վերջին քառորդում և քիչ թե շատ աճել նրա՝ Ռուսաստանին միանալուց հետո, բայց իբրև դասակարգ նա ձևավորվել ու զարգացել է հետռեֆորմյան շրջանում։ XIX դարի վերջին և XX դարի սկզբին Արևելյան Հայաստանն ավելի ու ավելի մեծ չափով է ներգրավվում Ռուսաստանի սոցիալ-տնտեսական ու հասարակական կյանքի մեջ, և հայ պրոլետարիատն էլ դառնում է կայսրության բազմազգ բանվոր դասակարգի բաղկացուցիչ մասերից մեկը։

Խոսելով պրոլետարիատի ձևավորման սոցիալ-տնտեսական պայմանների մասին, հեղինակները նշում են, որ թեև Արևելյան Հայաստանը պատմական կոնկրետ պայմանների բերումով Ռուսաստանի թույլ զարգացած շրջաններից էր և համեմատաբար ուշ մտավ կապիտալիստական մեքենայացված արտադրության պրոցեսի մեջ, այնուամենայնիվ, ուներ արդյունաբերական մի շարք կարևոր կենտրոններ, որոնք XIX դարի վերջին և XX դարի սկզբին դարձան պրոլետարիատի կազմավորման օջախներ։ Կապիտալիստական հարաբերությունների զարգացման, գյուղացիության քայքայման և շերտավորման, արտագնացության, քաղաքային բնակչության աճի, երկաթուղային շինարարության պայմաններում Արևելյան Հայաստանում ձևավորվում էր պրոլետարիատը։

Անդրադառնալով գյուղական պրոլետարիատի ձևավորման ու զարգացման հարցին, փաստական տվյալներով ցույց է տրվում, որ 1880-ական թվականների կեսին պրոլետարական ու կիսապրոլետարական զանգվածներն արդեն կազմում էին Արևելյան Հայաստանի գյուղական բնակչության շուրջ 30 տոկոսը։ Հետագա տասնամյակներում նրանց քանակը գնալով ավելի է մեծանում։

Մենագրությունում զգալի տեղ է հատկացված պրոլետարիատի թվաքանակի դինամիկայի հարցերին, մասնավորապես արդյունահանող և վերամշակող արդյունաբերության մեջ և երկաթուղային տրանսպորտում, փորձ է արված որոշելու ֆաբրիկագործարանային բանվորների թվաքանակը։ Հեղինակները նշում են, որ առաջին աշխարհամարտի նախօրյակին Արևելյան Հայաստանի պրոլետարիատի քանակը մոտ 30 հազար էր։ Ազգային կազմով այն միատարր չէր։ Հայերից բացի նրա շարքերում կային ռուսներ, ադրբեջանցիններ, վրացիններ, ուկրաինացիններ, հույներ և այլք։

Գրքում հանգամանորեն լուսաբանվում է արևելահայ պրոլետարիատի դասակարգային պայքարը։ Հեղինակներն անդրադառնում են հայ իրականության մեջ առաջին անգամ տեղի ունեցած պրոլետարական ելույթներին, գնահատում դրանք, ընդգծում Արևելյան Հայաստանում պրոլետարական գործադուլների էվոլյուցիան տնտեսականից դեպի քաղաքականը։

Աշխատության վերջին մասը նվիրված է Անդրկովկասի, մասնավորապես, Արևելյան Հայաստանի սոցիալ-դեմոկրատական և հեղափոխական շարժումներին։ Ընդգծված է բոլշևիկյան մամուլի խոշոր դերը երկրամասի աշխատավորական մասսաների քաղաքական դաստիարակման, ինչպես նաև սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ստեղծման գործում։

Աշխատությունը զերծ չէ նաև թերություններից։ Նկատի ունենալով, որ բուրժուազիայի և արդյունաբերական պրոլետարիատի գերակշռող մասը ձևավորվեց և սկսեց գործել Արևելյան Հայաստանի սահմաններից դուրս, ցանկալի կլիներ նաև տալ հայ պրոլետարիատի թվաքանակի դինամիկան Անդրկովկասի պրոլետարիատի շարքերում XIX դարի վերջին և XX դարի սկզբին։

1890-ական թվականների արևելահայ բանվորական շարժումներին նվիրված է ընդամենը երկու էջ։ Մեր ժողովրդի պատմությունը այնքան էլ հարուստ չէ նման փաստերով, ուստի եղածը պետք է ներկայացվեր գոնե այնքանով, որքանով որ արձանագրվել է ժամանակի արխիվային փաստաթղթերում։

Հեղինակային կոլեկտիվը ճիշտ վարված կլիներ, եթե աշխատության համար, ժամանակագրական առումով, վերջնագիծ ընդուներ ոչ թե Փետրվարյան, այլ Հոկտեմբերյան հեղափոխությունը կամ էլ Հայաստանում խորհրդային կարգերի հաստատումը, որը կհամապատասխաներ մեր ժողովրդի պատմության պարբերացմանը։

**Վ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ**

Պատմական գիտությունների թեկնածու

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 10, 1989 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարելու 14.09.89 թ.։ Ստորագրվել է տպագրելու 25.10.89 թ.։ ՎՖ 06185։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 12 232։ Պատվեր № 1140։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.